ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԺԶ.

# ԻՍԼԱՄԸ ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Ա.

## ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

ԸՆԴԴԷՄ ՏԱՃԿԱՑ

Բ.

## Ի ՔԱՇՈՒ՛ՆԷ ՔԱՂԱՔՈՒ

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵՑ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԵՑ

ԲԱԲԳԷՆ ԵՊՍ. ԿԻՒԼԷՍԷՐԵԱՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1930

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԺԳ.

# ԻՍԼԱՄԸ
# ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1930

# ԻՍԼԱՄԸ
# ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

---

Ա.

## ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

ԸՆԴԴԷՄ ՏԱՃԿԱՑ

Բ.

## Ի ՔԱՇՈՒՆԻ ՔԱՂԱԾՈՒ

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵՑ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԵՑ

**ԲԱԲԳԷՆ ԵՊՍ. ԿԻՒԼԷՍԷՐԵԱՆ**



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1930

# ԻՍԼԱՄԸ
## ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

---

### ՅԱՌԱՋԱԲԱՆ

Այս ուսումնասիրութիւնը՝ արդիւնք է հետաքրքրական դէպքի մը։

Անկէ ճիշդ քանի տարի յառաջ, 1905—1906ին, ես Կ. Պոլսի մէջ կը հրատարակէի *Լոյս Եկեղեցագիտական Շաբաթաթերթը*:

Անգամ մը պէտք զգացի Գր. Տաթեւացւոյն *Հարցմանց Գիրքին* դիմել՝ ստուգելու համար կէտ մը։ Դժբախտաբար չեմ յիշեր այժմ թէ ինչ էր այդ կէտը, բայց շատ լաւ կը յիշեմ որ տպագրեալ *Հարցմանց Գիրքը* չկրցաւ գոհացնել զիս. որովհետեւ այն նախադասութիւնը, որուն մէջ էր իմ ստուգել ուզած կէտը, յստակ իմաստ մը չունէր, հետեւաբար որոշեցի դիմել *Ձեռագիր Հարցմանց Գրքի* մը։

Այն ատենները *Ազգային Մատենադարանը* իր առաջին եւ բուն տեղն էր — Ղալաթիոյ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ Խորհրդարանին մէջ, եւ Ձեռագիրներու բաժինը, Ժողովարանին հարաւային կողմը, փոքրիկ սե-

նեկին մէջ. նա թէ Քարոզիչն էր Ս. Լուսաւորչի եւ թէ Մատենագրաբանական՝ Կ. Պոլսի *Ազգային Մատենադարանին*, որու Ձեռագրաց բաժնին կարգաւորութեան նուիրած էի մասնաւոր հոգ եւ խնամք, եւ կազմած՝ անոնց *Մայր Ցուցակը*. ըստ Տաշեան դրութեան. Արդ՝ *Ազգային Մատենադարանէն* փոխ առի Ձեռագիր *Գիրք Հարցմանց* մը, գտայ այն նախադասութիւնը, որ յստակ չէր տպագրին մէջ, եւ տեսայ որ այդ նախադասութիւնը բոլորովին յստակ է Ձեռագրին մէջ. Վասն զի, ինչպէս որ ենթադրած էի, թերի մը կար տպագրին մէջ. իսկ Ձեռագրին մէջ լման էր նախադասութիւնը. — Որչափ կը յիշեմ այժմ, բառ մը մոռցուած էր տպագրին մէջ. Լարուեցաւ հետաքրքրութիւնս, սկսայ տպագրին ուրիշ երեսները դէմ-ընդդիմել Ձեռագրին հետ, եւ գիտեցի որ *Հարցմանց Գիրքին* լըջօրէն անխնամ հրատարակութեան մը առջեւ կը գտնուիմ. Հետաքրքրութիւնս իր գագաթնակէտն հասաւ, եւ ես ամբողջ տպագիրը բաղդատեցի Ձեռագրին հետ, եւ ահա՛ բանասիրական յայտնութիւն մը. — *Տպագրին մէջ պակաս էր ամբողջ "Գիրք,, մը կամ "Հատոր,, մը, այսինքն՝ Գրիգոր Տաթեւացւոյն Ընդդէմ Տաճկաց գրածը:*

Իրապէս որչափ գեղեցիկ եւ հետաքրքրական գիւտ մը՝ մեր միջնադարեան Հայ Մատենագրութեան տեսակէտէն.

Ձեռագրին մէջ ծայրէ ի ծայր կարդացի *Ընդդէմ Տաճկաց* գրուածը, եւ գիտեցի որ

արժէքաւոր աշխատութիւն մըն է ան, արժէքաւոր ամէն կերպով։ Այս գիւտը՝ եւ քողարկումով մը ծանուցի այն ատեն Լոյսի մէջ, Տաթեւացւոյն վրայ ուսանկան մը գրելու առթիւ.

— «Տաթեւացիի գործերէն Հարցմանց Գիրքին (գրուած 1397ին) տպագրութիւնը աւարտեցաւ 1730 Մայիս 1ին (Կ. Պոլիս, տպագրիչ Աստուածատուր) Կոլոտ Յովհաննէս պատրիարքի ջանքով եւ Սիւնեցի Շահնազարի ու Պոլսեցի Խոճա Դանիէլեան Մովսէսի ծախքով. Ամենէն յառաջ՝ Էջմիածնի Նուիրակ Աստապատցի Պետրոս Վարդապետ ձեռնարկեց տպագրելու Գիրք Հարցմանցը (1721ին), բայց իր մահով (1729) գործը խափանեցաւ եւ տպագրուած թերթերն ալ ցիրուցան եղան. — Ինչպէս գիտել տուինք վերագոյն, Հարցմանց Գիրքը ամբողջ չէ. հետաքրքրական մաս մը, լուեւս, Գիրք մը, որ Ձեռագիրներու մէջ կայ, կը պակսի տպագրածին մէջ»։ (Լոյս, Շաբաթաթերթ Եկեղեցագիտական, Նոր Շրջան. — Առաջին Տարի, 1905. Հատոր Ա, էջ 274).

Այդ քողարկումին պատճառն էր Սուլթան Համիտի ատեն մամլոյ ազատութեան դէմ հաստատուած ահարկու գրաքննութիւնը. այնպէս որ Կ. Պոլսի բազմալեզու մամուլը, առանց բացառութեան ցեղի, լեզուի եւ կրօնքի, պարտաւորուած էին ընել ամենէն նուրբ զգուշութիւնը, որպէս զի… Սուլթանը, թուրքը եւ իսլամը վիրաւորող բառ մը չարտադրէր հրատարակութեանց մէջ։ Հայ մամուլի վրայ աւելի խիստ եւ աւելի

լուրջ էր համիտեան գրաքննութիւնը, քանի որ ամբողջ հայութիւնը կասկածելի էր նկատուած «թարեխնամ» կառավարութեան կողմէն. Եւ ես, Լոյսի երկամեայ խմբագրութեան ընթացքին, մերթ եւ սրտի նահատակութիւն մը ապրած եմ, եւ այդ պատճառով ալ դադրեցուցած՝ թերթին հրատարակութիւնը։ Դարձեալ, այդ պատճառով էր որ ազգային-եկեղեցական պատմութեան վերաբերեալ հայոցի նիւթեր եւ ուսումնասիրութիւններ չեմ կրցած գրել կամ հրատարակել Լոյսի մէջ։ Իմ գրաքննիչս, որ այլապէս բարեկամ էր ինծի եւ շատ ալ հաճոյակատար, անողորմ էր իբրեւ գրաքննիչ, եւ շատ կը վախնար որ ուրիշ հայ գրաքննիչներ մատնեն զինքը՝ եթէ խստութեամբ չվարուէր Լոյսի հետ։ Երեւակայեցէք. — Օրմանեան Սրբազանի պէս Սուլթան Համիտէն բռնուած եւ ամէն վստահութեան արժանացած Պատրիարք մը, որ Քննասէր տարադրութեամբ զուտ կրօնական նիւթ մը (Համապատում) կը մշակէր Լոյսի մէջ, եւ գրաքննիչը գիտէր թէ Թուրքիոյ Հայոց Պատրիարքն էր Քննասէրը, անգամ մը ջնջեց անոր յօդուածին մէջէն Թագաւորացն... աւետարանական բառը, գիտել տալով ինծի, թէ ապիկա կրնար մեկնուիլ Գահաժառանգին (Եուսուֆ Իզզէտտին էֆ.) եւ կամ կայսերազուն իշխաններու վրայ... Այսչափ ծիծաղելի եւ այսչափ ըմբոստացուցիչ էր համիտեան գրաքննութիւնը Կ. Պոլսոյ մէջ՝ 1908էն յառաջ։ Եւ ես, այս պայմաններու մէջ, արդէն հրաշք մըն էր որ

կրնայի Հայերէն թերթ մը հրատարակել, բայց միթէ կարելի՞ էր այդ թերթին մէջ խօսիլ Ընդդէմ Տանկաց գրուած գիրքի մը գոյութեան մասին, կամ ուսումնասիրութեան նիւթ ընել զայն։ Ուստի՝ հրաժարեցայ Ընդդէմ Տանկացն հրատարակելու առաջադրութենէս, սպասելով լաւագոյն ժամանակներու ... որք սակայն չեկան։

Տաթեւացիին Ընդդէմ Տանկացը գտնել եւ ուսումնասիրել ետքը, ծրագրեցի ոչ միայն հրատարակել զայն, իբրեւ բնագիր, այլ նաեւ Հայ Մատենագրութեան մէջ, Տաթեւացիէն յառաջ եւ յետոյ, իսլամի եւ առնչութեան մասին բոլոր գրուածները պրպտել, հաւաքել, դասաւորել եւ հրատարակել քննական միթոդով։ Իմ ծանօթութեան սահմանին մէջ, այս ծրագրով, Հայերէն ո եւ է հրատարակութիւն եւ ուսումնասիրութիւն չէ եղած դեռ իսլամի մասին[1]։

Այն առեն՝ այսպիսի աշխատութիւն մը կարեւոր պէտք մը կը թուէր ինծի, որովհետեւ դիտած էի որ Հայ ժողովուրդը, նոյն իսկ տարրական կերպով, շիտակ գաղափար մը չունէր իսլամի մասին, որ կ'իշխէր իր վրայ՝ թուրք կառավարական կազմակերպութեամբ եւ օրէնսդրա-

---

1 Միայն Հ. Գ., Մխիթար Անեցւոյ Պատմութեան վերջը, իբրեւ Յաւելուած, բնագրական նմանութեամբ հրատարակեց (1879. Ս. Պետերբուրգ) Վարդանի, Սամուէլ Անեցւոյ — այն առեն դեռ գրչագիր —, Կիրակոսի, Մ. Կաղանկատուացւոյ եւ Թ. Արծրունիի գրուածները Մահմէտի ծագման մասին՝ վերաբերութեամբ նոյն ինքն Մ. Անեցւոյ վերջին գլուխներուն (իե. իզ. իէ եւ այլն), որոնք նուիրուած են Մահմէտի եւ իսլամի։

կան գրութեամբ (*Ճէրիաթ*)։ Ալ խորհէի թէ Օսմանեան *Մէշրութիյէթի* (Սահմանադրական կարգուսարքը) հռչակումէն ետքը՝ Թուրքեր եւ Հայեր այլեւս ազատ դրօշի մը ներքեւ, պէտք ունէին զիրար լաւ հասկնալու, եւ իմ համեստ աշխատութիւնս այդ տեսակէտէն ալ կրնար օգտակար ըլլալ Թուրքերոյ հայութեան։ Եւ սակայն կարելի չեղաւ ծրագրիս գործադրութիւնը. վասն զի նախ Դպրեվանքի Վերատեսչութեան եւ ապա Ընկիւրիոյ Առաջնորդութեան պաշտօններս արգելք եղան ծրագրուած աշխատութիւնը յառաջ տանելու։ Անոնց վրայ աւելցաւ առողջութեանս վատթարացումը, որուն դարման մը գտնելու համար անցայ Եւրոպա եւ Ամերիկա (1914), ուր մնացի աշխարհաւեր Մեծ Պատերազմի հետեւանքով, մինչեւ 1922, երբ առաջին անգամ եկայ Երուսաղէմ, եւ օգտուեցայ Ս. Յակոբայ Մատենադարանի ճոխութենէն՝ գործադրելու համար այս ուսումնասիրութեան ծրագիրը։

Բայց այս անգամ պէտք էր որ նորէն սկսէի գործի։ Վասն զի ամբողջ Մատենադարանս, հետեւաբար եւ ժողված ուսումնասիրութեան վերաբերեալ բոլոր գիրքերս եւ նօտերս, մնացած էին Ընկիւրիա, երբ մեկնեցայ անկէց 1913ին։ Այժմ ոչ եւս են թէ իմ անձնական Մատենադարանս եւ թէ Ընկիւրիոյ Կարմիր-Վանքին թանկագին Մատենադարանը (Ձեռագիրներունը մանաւանդ) եւ բոլոր հնարժէք հարստութիւնները...։ Բարեբախտաբար քովս էր *Լանդէմ Տաճկացը*, զոր ընդօրինակել

տուած էր Շահպազեան Յակոբ Վարդապետի, թէեւ այդ ընդօրինակութիւնը բանի չծառայեց. որովհետեւ Ս. Յակոբայ Մատենադարանին մէջ գտնուած *Գիրք Հարցմանցներ* մատենագրական եւ բանասիրական նոր երեւոյթներու առջեւ դրին զիս։

Նախ Ս. Յակոբայ Ձեռագիրներուն մէջ գտայ տասնեակ մը եւ աւելի *Հարցմանց Գիրքեր*, որոնց մէջ թիւ 1155, թիւ 1546 եւ թիւ 827 օրինակներ մասնաւորապէս հետաքրքրական էին։

Թիւ 1155ը, որ գրուած է 1413ին, այսինքն՝ Գր. Տաթեւացւոյ մահէն (1410 կամ 1411) 2—3 տարի ետքը՝ ընտիր օրինակ մըն է, լիակատար, այնպէս ինչպէս որ Տաթեւացին խմբագրած է զայն։

Թիւ 1546ը, գրիչ, տեղ, ժամանակ անծանօթ, բայց նոյնչափ հին, այսինքն ԺԴ—ԺԵ դարու գործ, տեղ տեղ համառօտ եւ կրճատ, շատ հետաքրքրական օրինակ մը, մասնաւորապէս *Ընդդէմ Տաճկաց* վերաբերութեամբ։

Թիւ 827ը, վերոյիշեալ երկու Ձեռագիրներու միջեւ կը բռնէ միջին տեղ մը, այսինքն՝ ոչ լիակատար է թիւ 1154ի պէս, ոչ ալ համառօտ կամ կրճատ՝ թիւ 1546ի նման։ Այս ալ՝ ԺԵ—ԺԶ դարէն։

Արդ՝ բոլորովին մէկդի նետեցի Շահպազեանի ընդօրինակել տուածս, որ պարզ ընդօրինակութիւն մըն էր արդէն, եւ ես առիթ չէի ունեցած նոյն իսկ զայն անգամ մը բաղդատելու

բնագրին հետ, ոչ ալ ձեռագրագիտական նմանէր տուած էի բնագրի մասին, եւ ձեռք առի այս երեք գլխաւոր Ձեռագիրները, որոնք իբրեւ թէ Հարցմանց Գիրքին երեք տարբեր խումբերը ներկայացնէին։

Թիւ 1546ը, որ Համառօտն է, հիմ բռնեցի այս Հրատարակութեան, եւ ներկայացուցի զայն Հ. գրով։

Թիւ 1155ը ներկայացուցի Ա. գրով, իբրեւ Առաջին Լիակատար օրինակ։

Իսկ Թիւ 827ը ներկայացուցի Մ. գրով, իբրեւ Միջին օրինակ մը։

Այս երեք օրինակներու վրայ զատ զատ գրչագրագիտական կատարեալ տեղեկութիւններ տուած եմ Հրատարակութեանս սկիզբը։

Այս Հրատարակութեան հիմ բռնեցի Հ. օրինակը՝ երկու պատճառաւ. նախ այնպէս ենթադրելով որ ի գործ դրուած կրճատումներ եղած ըլլան նոյն իսկ Ցաթեւացւոյն գիտութեամբ. եւ յետոյ՝ Հ-ին եւ Ա-ին տարբերութիւնները նշանակելու եւ ցոյց տալու համար աւելի դիւրին էր հիմ բռնել Հ. օրինակը եւ ստորին լուսանցքներու մէջ դնել Ա-ին տարբերութիւնները քան թէ Ա. օրինակը հիմ բռնել եւ Հ-ին տարբերութիւնները նշանակել բնագրին վրայ՝ կամ շղագրով եւ կամ փակագիծներով, ինչ որ յոգնեցուցիչ պիտի ըլլար թէ աչքի եւ թէ մտքի համար, եւ միանգամայն դժուար պիտի արտայայտէր Հ-ի վրայ գործադրուած կրճատումներուն նպատակն ու մեթոդը։

իսկ բոլորովին անհնար էր ինձ համար Ա. եւ Հ. օրինակները միասին հրատարակել դէմ դիմաց՝ այլեւայլ պատճառներով։

Բնագրական այս տարբերութիւնները նկատի առնելով՝ սա հետաքրքրական հարցումը միտք կու գայ, թէ ինչ պատճառաւ սեղմուած է Հ. օրինակը։ — Ըստ ամենայն հաւանութեան մեղմացնելու կամ չափաւորելու համար գրուածին քաղաքական խստութիւնները, որպէս զի երբ իսլամի ձեռք իյնայ այն, որ միշտ բռնապետ ու հարստահարիչ եղած է, պատրուակ չըլլայ գրգռելու եւ զայրացնելու իսլամ կառավարութիւնն ու ժողովուրդը ընդդէմ Հայոց[1]։ Այս տեսակէտէն դատել կու տայ թէ Հ. Տաճիկը փոխած է այլազգիի, այնպէս որ Տաճիկ բառին հազիւ քանի մը անգամ կը հանդիպինք այս օրինակին մէջ։

Կարծէ ի մտի ունենալ թէ Գր. Տաթեւացին՝ իր Ընդդէմ Տաճկաց գրած է այն ատեն, երբ արդի Թուրքութիւնը գոյութիւն չունէր[2]։

---

1 Ընդդէմ Տաճկաց գրուածին նկատմամբ է որ կ'ընենք այս ենթադրութիւնը։ Իսկ Հարցմանց Գիրքին մէջ մասերն ալ կրճատուած, ամփոփուած, համառօտուած են մանաւանդ մեթոդով եւ նպատակով։

2 Հարցմանց Գիրքը աւարտած է 1397ին. իսկ օսմանցի Թուրքերուն Հայոց հետ յարաբերութիւնը կը սկսի 1473ին, Գր. Տաթեւացւոյն վախճանումէն 68 տարի յետոյ, երբ Սուլթան Մահմէտ Բ., Փաթիհ, Բիւզանդական կայսրութեան Մայրաքաղաքը նուաճելէ ետքը, քալեց Ուզուն Հասանի վրայ, յաղթեց անոր եւ տիրեց Արեւմտեան Հայաստանի վրայ (1473)։ — Հայաստան՝ յաջորդաբար մնաց այլազան թուրք տիրապետութեանց ներքեւ։ Նախ Սէլճու-

Ցաթեւացին այդ գիրքը գրած է ուշքի առջեւ ունենալով Տաճիկները (արաբ, թերեւս պարսիկ եւ թաթար խուժաններն ալ), եւ պէտք է ուշադրութիւն ընել՝ գրած է զայն իբրեւ ջատագով, եւ իբրեւ կրօնական վիճաբանութեանց առաջնորդող գրուած մը, եւ ինչպէս կ'երեւի՝ մասնաւոր խնդրանքով մը։ Վասն զի այն ժամանակներ, իրարմէ տարբեր կրօնքի եւ հաւատքի մարդիկ, ինչ դասակարգի եւ դիրքի ալ պատկանէին, իւրաքանչիւրը իր Սուրբ-Գիրքին փաստերով ու ապացոյցներով զինուած, վիճաբանութիւններ կ'ընէին, եւ ճշմարտութեան յաղթանակին վրայ՝ գրաւներ կը դնէին, վերջապէս կամ կը յաղթէին կամ կը պարտուէին, գործադրելով իրենց գրաւի պայմանները։ Այս վերջին տեսակէտէն, զոր օրինակ, շատ նշանակելի է Գրիգոր Մագիստրոսի եւ իշխան Մանուչէի պայմանաւոր վիճաբանութիւնը, որուն հետեւանքով Մանուչէ կը մկրտուի եւ Քրիստոնեայ կ'ըլլայ։

Արդէն խնամոտ ընթերցումը եւ աննախապաշար ուսումնասիրութիւնը Ընդդէմ Տաճկաց գրուածին, ցոյց կու տայ թէ Ցաթեւացին կը գրէ ոչ թէ իսլամը անարգելու դիտումով, այլ կրօնական ճշմարտութիւնը ցայտեցնելու

---

քեան թուրքեր տիրեցին Հայաստան՝ 1021էն; Ցուղրիլ Բէկի առաջնորդութեամբ, մինչեւ 1226։ Հետզհետէ եկան տիրեցին Վիրք, Մոզոլ-Թաթարներ, Թիւրքմէն-Պարսիկ-Քիւրտեր, Լէզգեկ-Թաթարներ, Պարսիկներ, եւ վերջապէս Օսմանցի Թուրքեր։ Մանրամասնութեանց համար տես Հ. Աճառեանի կազմած ժամանակագրութիւնը, Բանասէր, Կ. Յ. Բասմաճեանի, Հատոր Դ., 1902, էջ 318–320։

եւ զայն ջատագովելու նպատակով. Ճիշդ այնպէս՝ ինչպէս որ գրած է Հարցմանց Գիրքին ուրիշ մասերը, Ընդդէմ Հրէից, եւ Ընդդէմ Քրիստոնէական Եկեղեցւոյ դաւանաբանական ներքին տարբերութեանց։

Անշուշտ շատ ցաւալի եւ միանգամայն շատ ալ ուշագրաւ է այսպիսի ջատագովականներուն խայթիչ ոճը։ Բայց ասիկա Տաթեւացւոյն գրչին յատուկ երեւոյթ մը չէ. — վիճաբանական գրուածներ, ո՛ր լեզուէ ալ եղած ըլլան, կը ցայտեցնեն երգիծող կամ խայթող ոգի մը, որ կը բղխի ո՛չ միայն ջատագովներու հմտութեան եւ գիտութեան յաւակնութիւններէն, այլ նաեւ իրենց ուղղափառութեան չափազանց ջերմեռանդութենէն։

Տաթեւացւոյն Հարցմանց Գիրքը ամէնէն շատ ընդօրինակուած եւ շրջաբերուած միջնադարեան գործ մըն է։ Հայ եկեղեցականն ու Հայ աշխարհականը հաւասարապէս՝ Հարցմանքը իրենց անթին տակ, ատոր ոճով ու ատոր ապացոյցներով բանակռիւներ ըրած են, ինչպէս Հրէից նոյնպէս Տաճկաց հետ, ինչպէս նաեւ հերձուածներու եւ դաւանաբանական խնդիրներու շուրջը։

Բայց Թուրք-իսլամի մոլեռանդութիւնը անողոքելի էր։ Իսլամի հիմնադրին եւ Փէյղամբէրին, ինչպէս նաեւ Հազրէթի Ալիին թոյլատու ոգին հանդէպ Քրիստոնէութեան, մոռցուած իրողութիւններ էին Թուրք-իսլամութեան համար, մանաւանդ Ենիչէրիներու ահաբեկիչ

շրջանին։ Անոնք Ղուրանը շիտակ հասկնալու կարողութենէն ալ զուրկ էին։ Մէկ կողմէն, ցեղային գերազանցութեան մը անորսալի յաւակնութիւններով փքացած, արհամարհանքով կը նայէին օտար-խուժաններուն վրայ. միւս կողմէն, կրօնական անզուսպ մոլեռանդութեամբ մը արբշիռ, Սեմականներ միայն կը տանէին քրիստոնեաներուն վրայ։ Հայոց վիճակը շատ փափուկ էր այս պայմաններուն մէջ՝ հանդէպ իսլամ թուրքութեան, եւ ճիշդ այս է պատճառը որ երբ Կ. Պոլսի գրաւէր պատրիարք՝ Յովհաննէս Կոլոտի հրամանաւ լոյս տեսաւ Տաթեւացւոյն Հարցմանց Գիրքը, 1730ին, մեծ հեռատեսութեամբ զանց առնուեցաւ *Ընդդէմ Տաճկաց* մասին պարագրութիւնը, որ այնքան անմեղ եւ ամէն կասկածէ վեր ու գաղտնամտութենէ զերծ, զուտ ջատագովական գրուած մըն էր քրիստոնէութեան տեսակէտէն[1]։

Եւ այսօր, երբ քանի տարի յառաջ, մանաւանդ հետաքրքրութեան մը հետեւանքով գտնուած այդ գրուածը կը վստահիմ *Հանդէս Ամսօրեայի* էջերուն, տեսակ մը հպարտութիւն կը համակէ զիս, մտածելով որ Միջին դարուն, Հայաստանեայց Եկեղեցւոյ Մեծ Վարդապետներէն մէկը կարող եղած է, իր հմտութեան եւ ծանօթութեան սահմաններուն մէջ, գիրք մը

[1] Արեւմտեան հետաքրքրութեամբ կրճատուած եւ զանց առնուած են, Հայ պատմութեանց հրատարակութիւններու մէջ։ Առաջին ծագման մասին գրուած տեղեկութիւններ. ըստ ի Վենետիկ. ըստ ի Կ. Պոլիս։

գրել *Իսլամի* վրայ, լուսաւորելու համար իր ժողովրդեան զաւակները կրօնական այն գրութեան մասին, որմէ շրջապատուած էին. գրութիւն մը, որ այնքան աղետալի ու արիւնոտ դեր մը պիտի խաղար աշխարհի պատմութեան մէջ, ընդունելով պետական մեքենականութեան մը (Օսմանեան կամ Թուրք), մանաւորապէս Հայոց վերաբերութեամբ. դեր մը, որուն ամենէն զարհուրելի մանրամասնութիւնները խաղցուեցան քսաններորդ դարու լոյսերուն տակ, եւ Եւրոպայի ու Ամերիկայի քրիստոնեայ մեծազօր եւ հզօր պետութեանց աչքերուն առջեւ։

*Իսլամը հայ Մատենագրութեան մէջ* ուսումնասիրութիւնն ուրեմն, իբրեւ *առաջին* եւ շատ համեստ ձեռնարկ, իրենին նորութիւն մըն է՝ Հայ Մատենագրութեան բոլորովին անկոխ մէկ մարզին վրայ. եւ ես վստահ եմ որ հայագիտական աշխարհի մէջ հետաքրքրութիւն պիտի արթնցնէ այս նիւթը, թելադրելով անդրադարձ հետազօտութիւններ։

Այս գործը բաժնուած է երեք մասերու, հետեւեալ կերպով։

*Առաջին Մասն* է այս, որ կը պարունակէ Տաթեւացւոյն *Ընդդէմ Տաճկացը*։

*Երկրորդ Մասը* պիտի բաղկանայ Տաթեւացիէն յառաջ եւ ետքը՝ *Իսլամի* մասին հայերէն գրուածներու քննական հաւաքածոյէ մը։

*Երրորդ Մասը* պիտի ըլլայ արդիական ուսումնասիրութեանց տուեալներուն վրայ նոր գրուած մը *Իսլամի* մասին՝ իմ կողմէ։

## Հայցմանց Գիրքին Տպագրութիւնը:

1720ին (ՌՃՀ) Ս. Էջմիածնի Նուիրակ Աստապատցի "գիտնական եւ բարեկրօն մեծ վարդապետն," Պետրոս Եպիսկոպոս՝ Կ. Պոլիս կու գայ, եւ "ըստ բարեաւէր բարուց իւրոց," կը ձեռնարկէ Հայցմանց Գիրքին տպագրութեան։ Այս ձեռնարկը սակայն կը խափանի՝ քանի մը տետրակներ ("քանի մի ինչ տետր") տպագրուելէ ետքը, Հաւանաբար Նուիրակին Էջմիածին վերադարձին պատճառաւ, ուր կը վախճանի 1729ին, այսինքն՝ Հայցմանց Գիրքին տպագրութեան ձեռնարկելէ ինը տարի ետքը։

Բայց սկսուած գործ մը կիսկատար չթողլու համար՝ "արեւելցի բարեպաշտօն մահտեսի պարոն Շահնազարն, եւ Բիւզանդեցի խոճա Դանիէլի որդի տիրացու Մովսէսն" կը փափաքին "տպել եւ ի կատար բերել զմնացեալն տետրն,"։ Դժբախտաբար թէ բարեբախտաբար՝ "տպուածն առաջին ցրիւ եւ պակաս մնալով, նորապէս սկսեալ եմք տպել զամենայն՝ կարողութեամբ ողորմութեանն Աստուծոյ,"։

Այսպէս, 1729ին (ամիսը չէ նշանակուած) կ՚սկսի Հայցմանց Գիրքին Նոր տպագրութիւնը եւ կը վերջանայ 1730 (ՌՃՀԹ), Մայիս 1ին, Կ. Պոլսեցի մ՚ին․ Աստուածատուրի Տպարանին մէջ։ Տպագրիչ մահտեսի Աստուածատուրի որդին՝ Տիրացու Յովհաննէսն եղած է գրաշարը, որ "անձանձիր եւ մշտաջան տքնութեամբ,", գիշեր ցորեկ, ժամանակ նուիրելով, մի մինակ,

ծայրէ ի ծայր ինքն շարած է գիրքը, իբրեւ որ-գինք եւ արտայայտութիւն իւր ջերմեռանդն սիրոյն "ի վերայ սրբոյ մատենոյս„։

Հրատարակութեանս ճակատը կը ձեւացնէ պատկերազարդ շրջանակ մը ուղղանկիւն, որու մէջտեղ գրուած է.

ԳԻՐՔ
ՀԱՐՑՄԱՆՑ

Երիցսերանեալ Սրբոյ Հօրն մերոյ
Գրիգորի Տաթեւացւոյն։

Յպագրեցեալ Օգնականութ̃բ Ս̃յն
Թադէոսի Առաքելոյն, եւ Ս̃յն
Գրիգորի մերոյ Լուսաւորչին։

Ի Հայրապետու̃ն Ս̃յն Էջմիածնի Լու-
սաւորոյց Աթոռոյն, Զէյթունցի
տն Կիրակոսի Երիցսերանեալ Սր̃զն
եւ Ընտրեալ Կթղ̃կսի ամ̃ Հայոց։
Եւ ի Պատրիարգութեան Ս̃յն Եղ̃էմի
Քանակոսի Տեղ̃էցն, տն Գրիգորի
Սր̃զն եւ Ընտրեալ Վրդ̃պտի։
Ի Կոստանդնուպոլիս Քաղաքի։

Հրամանաւ Նորին Սրբազան Պատ-
րիարգի, տն Յօհաննու Ընտրեալ
եւ Գրասէր եւ Ցօնասէր Վրդպ̃տի։
Ի Թուին Հայոց, ռճհը։

Գիրքիս սկիզբն ալ (էջ 7) զարդարուած է նկարով մը, որ կը խորհրդանշէ Գր. Տա-

թեւացւոյն ծննդեան զրոյցը։ Այս նկարին վերի աջ անկիւնը Ս. Գրիգոր Լուսաւորիչ, զգեստաւորեալ, ոտքի վրայ, կանթեղ մը կու տայ հաւատաւոր կնոջ մը, Տաթեւացւոյն մօրը, որ կեցած է գրան մը մէջ։ Այդ գրան մէջ եւ կնոջ աջ ուսին վրայ երկտող մը կայ. — "Տոհմն մօր (կրնայ կարդացուիլ նաեւ՝ Հօր) Գրիգոր | ի Տաթեւացւոյն"։ Նկարիս մէջտեղ, երիտասարդ Գր. Տաթեւացին, վեղարով-փիլոնով ծնրադիր գրասեղանի մը առջեւ, հողաթափները ոտքին, գիր կը գրէ. Թիկանցէն՝ լուսապսակ աղաւնի, պատկառելի գլուխ մը — Հաւանաբար Որոտնեցւոյն —, ասուն կու տայ իր աշակերտին։ Իսկ Տաթեւացւոյն դէմ, գրասեղանի միւս կողմը, չորս ծնրադիր վեղարաւորներ՝ փիլոնով, եւ չորսալ կրօնաւորք, որոնք իրենց աչքերը սեւեռած են Տաթեւացւոյն գրած գիրքին վրայ — Հարցմանց Գիրքը —։ Ասոնց գլխուն վերեւ արձանագրուած է. "Կրօնաւորք եւ Վարդապետք"։ Նկարիս վարի շրջանակէն ներս գրուած է. — "Անձք եւ ուսուցանէք Ցամենայն ժամ ✝"։ Իսկ վարի լուսանցքին վրայ.

— "Մեծի Հօրն Միոյ՝ Երանելոյն Յօհաննու
Որոտնեցւոյ՝
Ծնուոյց աշակերտի, եւ պարգեւին Լուսաւորչի.
Միոյն Գրիգորի Տաթեւացւոյ, Ծնարան
Վրդպտի,

Բուն իմաստասիրի եւ խստակրօն ճգնաւորի՝ Արարեալ
զսոյն գիրս Հարցմանց. ի Հերքումն աղանդից ամենայն
Հերձուածողաց. Եւ ի լուծումն բազմազան բանից ճշմարտուն. ի փառս միոյն Ա.յ, եւ յօգուտ ուղղափառ
մանկանց Սէջմկէ Հայաստանեայց ուխ Եկեղեցւոյս Քի.»

Էջ 7ի ճակատը զարդարուած է մեծ խորանով մը եւ մեծ լուսանցազարդով մը. խորանին կամարին ներքեւ նոտր գրով՝ Հոգիդ | Սուրբ | օգնեա՛ | մեզ: Իսկ գիրքի սկսուածին առաջին բառը, Որպէս, սիրուն մարդագիրներն են, որ ամբողջ տող մը բռնած են. երկրորդ տողը, «Սանն նհրձոա», գլխագիր է. Բացի այս մասերի էջէն, ամբողջ գործը, ծայրէ ի ծայր երկսիւնակ է, զարդարուն շրջանակներով: Երեսներուն մեծութիւնը՝ շրջանակներէն ներս, գրեթէ 14.5×22.5 սմ., իւրաքանչիւր սիւնակ 43 տող: Ամբողջ գործը կը բաղկանայ ԿԷ (67) տետրակներէ. իւրաքանչիւր տետրակ՝ վեց թուղթ կամ 12 էջ, բացի վերջին տետրակէն (ԿԷ), որ փոխանակ վեցի՝ ունի ութը թուղթ կամ 16 երես. բոլորը՝ 808 երես:

Տաթեւացւոյն ինքնագիր Յիշատակարանը կը գրաւէ ամբողջ 772 երեսը եւ 773ին առաջին սիւնակը. իսկ 490 երեսէն մինչեւ 792ին





առաջին սիւնակը. «Յիշատակարան տպագրման գրքոյս»։ Յաջորդը՝ «Ցանկ եւ Ցուցակ Գլխաւոր Բանից բովանդակ Գրքոյս։ Ըստ Տառից մերոց Դասաւորութեանց», այսինքն՝ այբուբենական ցանկ մը։

Հարցմանց Գիրքին այս Հրատարակութիւնը կատարուած է երկու Հնագոյն եւ ուղղակի Տաթեւացւոյ ինքնագիր օրինակէն գաղափարուած Ձեռագիրներու համեմատ, զոր Հայթայթած են Ակնցի Տէր Մարկոս Քահանայ եւ մահտեսի Մակար, որք յիշատակուած են մանաւորապէս.

— «Յիշեսջիք՝ եւ զակնցի տէր մարկոսն հայոց, եւ զմահտեսի մակարն, որք եղեն Բ. գիրք ի Հին օրինակաց ամանդակ սրբագրութեան, որ ի վաղ ժամանակաց գրեալ էին զօրինակն գրքոյս՝ ի ձեռագիր օրինակէ եռամեծի սրբոյն Գրիգորի՝ Գրքոյս արարողի». (էջ 792 = ՉՂԲ)։

Ձեռագիրները տպագրուածին հետ բաղդատողը, փորձերը սրբագրողը եւ «գլխաւոր բանից» այբուբենական ցանկը շինողն է Պաղտասար Դպիր, որ առանձին փոքրիկ Յիշատակարան մը դրած է վերջին էջի վերջին սիւնակին վրայ՝

— «Ներել մաղթեմ՝ աղերս արկեալ,
Որ ինչ ի սմա սխալ գտեալ.
Ո՛չ գիտելոյն եւ ոչ տեսեալ,
Կամ՝ լատ ՚րնոցն այնպէս թողեալ»։

Հակառակ այս յայտարարութեան եւ խոստովանութեան, պէտք է գիտել որ Պաղտասար Դպիր բոլորովին պատասխանատու է Հարցմանց Գիրքին այս անխնամ տպագրութեան, քանի որ՝ ստուգիւ շատ բան չէ տեսած եւ չէ գրած։

## Աստապատցիի կիսկատար Տպագրութեան ցիրուցան Տետրակները:

Ս. Յակոբայ Ձեռագրաց Մատենադարանին մէջ, թիւ 328 (հին թիւ 148) Ձեռագիր-Տպագիրը ուշագրաւ է. վասն զի Աստապատցի Պետրոս Վարդապետի, 1720ին տպագրել տուած «քանի մի ինչ տետր»ներէն նմոյշներ կը բովանդակէ։

Հաւաքածոյ մըն է այս, որու մէջ գլխաւոր տեղ կը բռնէ Հարցմանց Գիրքէն ընտրուած մասեր, յայտնապէս եւ յատկապէս այդ կիսկատար տպագրութեան տետրներէն ձեռք բերուած նմոյշներով գրքոյկ մը ձեւացնելու նպատակաւ։ Տպագիր-Ձեռագիր Հաւաքածոյին թուղթը (անշուշտ ձեռագիր մասերուն) բամպակ՝ փայլուն, գիրը՝ նոտր, եւ վերջը՝ երկուքուկէս երեսի չափ ալ բոլորգիր։ Հաւաքողն ու գրիչը, տեղն ու ժամանակը անծանօթ. բայց անպատճառ 1720էն յետոյ։ Կաշեկազմ, լաւ պահուած։ Տպագիր եւ Ձեռագիր մասերը միանգամայն 180 թուղթ են կամ 260 երես, երկսիւն։

Բուն գրչէն միակ Յիշատակարանիկ մը, էջ 183, երկրորդ սիւնակին վերջին տողն է.
— «Զմեղօք լի գծօղս յիշեսջիք ի Տէր աղաչեմ»։

Իսկ էջ 258, առաջին սիւնակին սկիզբը.
— «Թվին Հայոց ՌՃԿԲ (= 1713) ես կոստանդնուպօլսեցի Գէորգ վարդապետս եկի ի կեսարիայ կապադովկացւոց ի քարոզութիւն բանին Աստուծոյ, եւ հակառակութիւն ինչ անկեալ ի մէջ մեր, եւ ի մէջ մետրապօլիտին Յունաց ի վերայ փրկական չարչարանացն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, յետոյ նոյն մետրապօլիտն գրեաց առ մեզ գթուղթ մի ի վերայ նոյն բանին հելլենական լեզուաւ։ Զորոյ զթուղթն եւ զպատասխանին մեր յետոյ թարգմանեցաք եւ ի մերս լեզուաւ, ի խնդրոյ պայազատափառ իշխանին Տանճի մուրատզատէ մահտեսի Պողոս չէլէպուն եւ յիշատակ անջնջելի եւ ի յաղօթական արձանագրութիւն ճշմարտութեան ուղղափառ հաւատոյն»։

Այս Տպագիր-Ձեռագիրը՝ Հայցմանց Գիրքէն քաղուածէ մը ետքը, ապագրեալ տետրակներու յարմարումով, որ ընդհատուած է 116 էջին, կը բովանդակէ նաեւ.

— «Երանելույն Աթանասի Արքեպիսկոպոսի Աղեքսանդրացւոյ Հարցմունքն վայելուչք եւ պատուականք, Կիւրղի Երուսաղեմայ Հայրապետի. Յաղագս մակացութեան եւ հանճարոյ: Հարցմունք Ա.» (էջ 117—183)։

— «Կանոն ճ. եւ ծ. սրբոց հարցն ի Կոստանդնուպօլիս գումարելոց: Ի բդեշխութեան գերապայծառ իշխանացն Եւքէրիոսի, Եւագրիոսի. Յուլիսի Թ: — Յառաջ քան զԿանոնսն նորա. ասա: Թուղթ նոյնոյ սուրբ ժողովոյն Կոստանդնուպօլսոյ առ բարեպաշտ թագաւորն Թէոդոս՝ Մեծն անուանեալ, որում թղթոյն ենթադասեցին զառ ի յիւրեանց սահմանեցեալ Կանոնս» (էջ 184—191)։

— «Թուղթ ի Կոստանդնուպօլիս գումարելոց Եպիսկոպոսաց՝ առ գումարեցեալ Եպիսկոպոսունս Հռոմայ» (էջ 192—197)։

— «Պատմութիւն սուրբ ժողովոյն Եփեսոսի, որ է Երկրորդ Տիեզերական ժողով» (էջ 197—212)։

— «Ճառ Պրոկղոս վերատեսչին Կիզիկոյ, ասացեալ ի մէջ ժողովարանին Կոստանդնուպօլսոյ առաջի Նեստորի, վասն մարդեղութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի» (էջ 212—218)։

— Կիւրղի եւ Նեստորի թղթակցութիւնները եւ Կիւրղի ուրիշ թուղթերը (էջ 218—251)։

— «Ցուցանի կարճառօտապէս որ Փրանքն ոչ ունին զէ. խորհուրդ Եկեղեցւոյ» (էջ 251—257)։

— «Դաւանութիւն Սուրբ Գրիգորի Լու-

մատուռէին գրեալ ի Սուրբ Ոսկեբերան ընդհանրական վարդապետին», միայն 16 տող (էջ 257)։

— Էջ 258—259 վերեւ գրուած Յիշատակարանն Գէորգ Վարդապետի, եւ անմիջապէս յետոյ — «Թուղթ մետրապօլտին Յունաց առ Գէորգ Վարդապետ Հայոց»: Իսկ էջ 260՝ դատարկ։

Հաւաքածոյիս ճիշդ սկիզբը գրուած է Աստապատցի Պետրոս Վարդապետին տպագրել տուած Հարցմանց Գիրքին ցրիւ տետրակներէն ոմանք։ Այս ցրիւ տետրակներ (փորմա) կը կրեն Ա.—ԺԲ. թուահամարները։

Հարցմանց Գիրքին այս առաջին տպագրութիւնը խնամոտ գործ մըն է. Թուղթը բարակ մագաղաթի պէս, ճերմակ եւ ամուր. երկսիւն երեսներ, պարզ գիծերով շրջանակուած։ Շրջանակներէն ներս երեսներու մեծութիւնն է 13.13 × 19.5 սմ., իւրաքանչիւր սիւնակ 38 տող։ Այս տպագրութեան մէջ չկան մշակուած ցանկ նիւթոց եւ գլուխներ այնպէս, ինչպէս որ կան 1730ի հրատարակութեան մէջ։

Թէ հետաքրքրութեան համար եւ թէ իբրեւ յիշատակ Հարցմանց Գիրքին առաջին հրատարակիչ Աստապատցի Պետրոս Վարդապետի գրասիրական եռանդին եւ զոհողութեան, կը դնեմ այստեղ Ա.—ԺԲ. ցրիւ տետրներէն հաւաքածոյիս մէջ պահուած մասերը.

«Որպէս սանձ ճնշման», տող մը թուչնագիր. «Ծոցք՝ զամենայն ինչ միոյ», տող մը բոլոր գլխագիր. «Կան ի հարկէ զօղ. այսինքն զգործ, զգիտուած», տող մը գլխագիր։
Էջ հատուածոյս, 9—24, Բ. տետրին։
Էջ տպագրեալ տետրներուն, Թ—ԻԴ.

Կը համապատասխանէ, էջ 7—24, Բ. սիւնակ, տող 3.

Էջ հատուածոյս՝ 29—76.
Էջ տպագրեալ տետրներուն, Թ—ԾԶ. այսինքն՝

Բ. տետր, էջ տպգր. Թ—ԺԶ.
Գ. " " " ԺԷ—ԻԴ.
Դ. " " " ԻԵ—ԼԲ.
Ե. " " " ԼԳ—Խ.
Զ. " " " ԽԱ—ԽԸ.
Է. " " " ԽԹ—ԾԶ.

Կը համապատասխանէ, էջ 52, Բ. սիւնակ, տող 14—106, Ա. սիւնակ, տող 25։

Էջ հատուածոյս, 85—108.
Էջ տպագրեալ տետրներուն, ԿԵ—ՁԸ. այսինքն՝

Թ. տետր, էջ տպգր. ԿԵ—ՀԲ.
Ժ. " " " ՀԳ—Ձ.
ԺԱ. " " " ՁԱ—ՁԸ.

Կը համապատասխանէ, էջ 115, Ա. սիւնակ, տող 24—143, Բ. սիւնակ, տող 32։

Ինչպէս որ կը տեսնուի, Թիւ 328 հատուածոյն կազմող մարդը՝ իր ձեռքին տակ չէ կրցած ունենալ ցրիւ տետրակներէն Ը.րդը։ Ասկէ զատ յայտնի չէ թէ Աստապատցիին այս կիսկատար տպագրութիւնը մինչեւ ԺԱ. տետր (փորմա) հասած է թէ աւելի։ Բայց, ամէն պարագայի մէջ, «քանի մի ինչ տետր» բացատրու-

թիւնը, որով Հայրցմանց Գիրքին 1730ի տպագրիչը կ՚ակնարկէ առաջին տպագրութեան փորձին, այնքան արհամարհելի քանակութիւն մը չէ որ կը ներկայացնէ։ Վասն զի թիւ 328 Հաւաքածոյին միջոցաւ մեր առջեւ ունինք 96 երեսներու նմոյշ մը այդ կիսկատար մնացած հրատարակութենէն, եւ այդ թիւը հաւասար է 1730ի հրատարակութեան գրեթէ մէկութե-րորդին։

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ

### ՁԵՌԱԳԻՐՔ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ Ս. ՅԱԿՈԲԱՅ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻՆ

**1.** — Հ. — *ՀԱՄԱՌՕՏՆ, որ հիմ ծառայեց այս հրատարակութեան, թիւ* **1546**։ *Անթուական, բայց ԺԴ—ԺԵ դար։*

*ԵՐԵՍՔ 708։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 14½×10½, վերի եւ վարի լուսանցքներու կտրուածքը թեթեւօրէն անհաւասար։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ 10½×7½։ — ՏՈՂՔ 27—29։ — ՆԻՒԹ՝ թուղթ բամպակեայ, աղտոտ մեղրամոմի գոյն, կիսափայլ։ — ԿԱԶՄ՝ կաշեփայտ, կողքեր զարդարուն շուրջանակի. կողքերուն ներքը կապուտով նախշուն կտաւ փակցուած։ — ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀԱՆԱԿ՝ երկ երկու թերթ. միջնեան Աւետարանի մը մնացորդներ. միջին մեծրոպեան ընտիր գրչութեամբ, գիրերու անկիւններ կլորուելու վրայ։ Ինչպէս կ՚երեւի Ձեռագրէս քիչ մը մեծ Աւետարանի մը թերթեր են ասոնք։ Սկիզբը գրուած թերթերուն առաջին երկու երեսները կը բովանդակեն Մարկոսի Աւետարանին ԺԵ. 14էն, [ի] խաչ հանել զդա, մինչեւ 32. հաւատասցուք դմա։ Իսկ մնացած երկու երեսներ. Մրկս. ԺԳ. 3էն, [մի]ջնիցի այդ նե. գինչ նշան է յորժամ կատարիցին իցէ այդ ամենայն, մինչեւ 18. զի մի ձմեռնային լինիցի. եւ այլն*

վերջին տողը կիսովի կտրուած: Վերջը դրուած թեր-թերուն առաջին երեսը կը բովանդակէ Մարկոսի Աւե-տարանին. ԺԵ. 33էն. խաւարի կալաւ, մինչեւ 39. [աը]դարեւ այրս այս որդի Այ էր: 2, 3, 4 երեսները կը բովանդակեն. [զ]ետ շըջ[է]ին ձո[րա եւ պ]աշտէին զնա-էն մինչեւ ԺԶ. 8. զի երկնչէին: Եւ վերջ. [Աւետ]-ԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՐԿՈՍԻ: Ըսել է որ Աւետարանի այս օրի-նակին մէջ կը պակսին Մարկոսի ԺԶ. գլխուն մնացած 9—20 համարները: Չորրորդ երեսին վրայ փոքրիկ յի-շատակարան մը մնացած է. [...] յող առաքը Աւետա-րանիս զՏր | [...] Ճմուձեաց եպիսկոպոս | [յիշե]սջիք ի մի եւ քն զնեզ | յիշեսցէ. | [...] զիս զԹեոդորոս զանարժան գրի | [շըս յիշ]եսջիք ի քն: — ՀԱՆԴԱ-ՄԱՆՔ չափ. տեղ տեղ թանաքի թթուն անցուցեր է թուղթերը, գոր օր. էջ 196—322: Առաջին տետրակը բաժնուած, բայց կապոյտ թելով կապուած եւ հազիւ թէ համատառուած վերի կողմէն: Կողքերուն կապիճները փրթած. առաջին կողքը ճաթած դուրսէն, եւ թիկունքը պատռած: — ԳԻՐ՝ մանր բոլորգիր, վարժ գրչէ: — ԶԱՐԴԱԳԻՐ՝ միայն մէկ հատ է. անիգրը Ռ. ոսկի, կա-պոյտ. կարմիր գոյներով. եւ ամբողջ տողը. Որպէս ա-ռանձ ճերձռակաճողը զամենայն իմ, ոսկեգիր, թէեւ խանգարած: — ԽՈՐԱՆԳԻՐՔ սուարով: — Մեծ ԳԼԽԱ-ԳԻՐՔ՝ կարմիրով մը, որ անցած է: Միւս գլխագիրը սուարով: — ԽՈՐԱՆ մը, իր ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՈՎ անիգրը կայ. ճոխ ոսկիով եւ կապոյտով. դժբախտաբար քիչ մը եղծուած: Նոյնպէս միակ ՆԿԱՐ մը անիգրը. վարդապետ մը յոտնկայս, ձեռքը գաւազան T ի ձեւով, լուսապսակ գլխին շուրջ, վեղարաւոր մըն ալ նստած՝ վարի ձախ անկիւնը. Նկարս եղծուած է գրեթէ. յատակին կէսէն աւելին պղնձագոյն. մնացածը մութ կապոյտ: — ԳԱ-ՑԱՐԿ՝ երկու երես անիգրը: Առաջին երեսին վրայ գրչի խաղեր սեւ թանաքով. վարի երկու անկիւնները բոլոր-շի-անկիւնաւոր կնիք մը կոխուած. մէջ տողը խաչ. գրուածքը դժուարընթեռնլի. Տէր Սա(հակ?, Սարգիս?): Երեք երես ալ, 706—708, վերջը, նոյնպէս վերջին երեսը կեղտոտուած գրչի խաղերով: Այս վերջին երեսին վերի անկիւնը նշանակուած է նոր գրչէ մը — 353 —, թղթահամարը Ձեռագրիս: Մնացած բոլոր կարեւոր տեղեկութիւնք կը պակսին. ո՞վ է գրիչը, ե՞րբ եւ ո՞ւր

գրուած է, ո՛վ է համառօտողը, բնագիր օրինակն է համառօտին թէ գաղափարուած ուրիշ օրինակէ մը: Խորհրդաւոր լռութիւն մը. որովհետեւ պատառուած պակասած բան չկայ Ձեռագրիս մէջ: Բայց դատելով գրչութեան արուեստէն շատ հեռու չէ Տաթեւացւոյ շրջանէն. ուրեմն ԺԴ.—ԺԵ. դարու գրչութիւն մը:

Յիշատակագրութիւն ըլլալով, Ձեռագրիս սկիզբը, էջ 11, վարի լուսանցքին վրայ, սեւով գրուած է յիշատակն երսղէմ | սրբոյն յակոբայ, որ նոյն գրչէ Ս. Յակոբայ մատենադարանին ուրիշ շատ մը Ձեռագիրներու մէջ ալ կը տեսնուի:

ՄԱՏԵԱՆՍ է Գրիգորի անյաղթ փիլիսոփայի Հարցմանց [illegible] եւ պատասխանիք [illegible], [illegible]:

Բովանդակութիւնք գրուած է Ձեռագրիս սկիզբը, էջ 3—8, հետեւեալ կերպով.

— Առաջաբանութիւն գրոցս Հարցմանց. եւ զամենայն իրս գործառնութեան չորիցս (այսպէսիք ասելով):

[Ա.] Որք զհարկ եւ զ[illegible]:
Բ. Երկրորդ վասն ճանաչման Աստուծոյ:
Գ. Երրորդ ընդդէմ Արիանոսաց[1]:
Դ. Չորրորդ ընդդէմ Հրէից:
Ե. Հինգերորդ ընդդէմ Տաճկաց[1]:
Զ. Վեցերորդ ընդդէմ Հոգեմարտին:
Է. Եօթներորդ ընդդէմ Նեստորի եւ Երկաբնակաց:
Ը. Ութերորդ Աստուածաբանութիւն Դիոնէսեայ:
Թ. Իններորդ վասն Հրեշտակաց եւ դիւաց:
Ժ. Տասներորդ վասն գործոյ եւ արարչութեան Աստուծոյ:

---

[1] Արիանոսաց վրայ բ. իսկ Տաճկաց վրայ ա. գրուած է, հասկցնելու համար "Երրորդ ընդդէմ Տաճկաց" պիտի ըլլայ, իսկ "Հինգերորդ ընդդէմ Արիանոսաց":

ԺԱ. Մետասաներորդ վասն Արարածոց եւ աշխարհի։

ԺԲ. Երկոտասաներորդ վասն լուսաւորաց եւ յեղանակաց։

ԺԳ. Երեքտասաներորդ վասն իւրաքանչիւր տարերից եւ բուսոց եւ կենդանեաց։

ԺԴ. Չորեքտասաներորդ վասն դրախտին։

ԺԵ. Հնգետասաներորդ վասն կազմութեան մարդոյ։

ԺԶ. Վեշտասաներորդ վասն հոգւոց մարդկան։

ԺԷ. Եւթնեւտասաներորդ վասն բոլոր մարդոյն։

ԺԸ. Ութեւտասաներորդ վասն Սարեկի եւ նախահարցն։

ԺԹ. Իննեւտասաներորդ վասն Աբրահամու եւ իւրոցն։

Ի. Քսաներորդ յելից Գրոց։

ԻԱ. Քսանեւմի Ղեւտականքն։

ԻԲ. Քսանեւ բ. Թիւքն։

ԻԳ. Քսանեւ գ. Երկրորդ օրէնքն։

ԻԴ. Քսանեւ դ. Յեսու Նաւեան։

ԻԵ. Քսանեւ ե. Դատաւորքն։

ԻԶ. Քսանեւ զ. Առաջին թագաւորութեանց։

ԻԷ. Քսանեւ է. Երկրորդ թագաւորութեանց։

ԻԸ. Քսանեւ ը. Երրորդ թագաւորութեանց։

ԻԹ. Քսանեւ թ. Չորրորդ թագաւորութեանց։

Լ. Երեսներորդ Մարգարէութեան Փրկչին։

ԼԱ. Երեսնեւ ա. վասն նոր օրինացն։

ԼԲ. Երեսնեւ բ. վասն մեղաց։

ԼԳ. Երեսնեւ գ. վասն առաքինութեան։

ԼԴ. Երեսնեւ դ. վասն եւթն խորհրդոց։

ԼԵ. Երեսնեւ ե. վասն առանձնակի Եկեղեցւոյ։

ԼԶ. Երեսնեւ զ. վասն փոփոխման մարդոյն։

ԼԷ. Երեսնեւ է. վասն բաժանման հոգւոյ։

ԼԸ. Երեսնեւ ը. վասն Նեռինն։

ԼԹ. Երեսնեւթ. վասն յարութեան կրկին։

Խ. Քառասներորդ վասն յարութեան եւ դատաստանին։

Եւ զամենայն իրս գործառնութեան չորից խնդրին պատճառս։ Արարողական, Նիւթական, Տեսական եւ Կատարունական. այսինքն է Արարօղն եւ Արարեալն, եւ Արարումն եւ պատճառ նորին. որպէս ի շինութիւն տան. Արուեստաւոր հիւսն եւ շինեալ տունն եւ որպիսութիւն նորին՝ բոլոր կամ քառանկիւնի. եւ պատճառ նորին՝ վասն բնակութեան մարդկան։

Իսկ առաջիկայ իրողութեանս, նիւթական պատճառ, Տառն իմն ակռական հատոր Հարցմանց այսոցիկ, որոց յարմարումն շարակարգութեան է ըստ այսմ օրինակի.

Ա. Առաջին. առ արտաքինս առարկութիւն եւ լուծումն ընդդիմախօսութեան նոցա։ Որք զհարկ եւ զճակատագիր, զՉար եւ զԲարիս յԱստուծոյ համբաւեն։

Եւ ընդդէմ Մանիքեցւոցն, եւ Այլազգեաց եւ Հրէից։

Բ. Երկրորդ հատորն է ընդդէմ Արիոսի եւ Հոգեմարտից, եւ Նեստորի, եւ Երկաբնակաց։

Գ. Երրորդ հատորն է ճշմարիտ Աստուածաբանութիւն Սրբոյն Դիոնիսեայ ցուցումն տակաւուք։

Դ. Չորրորդ, վասն վեցօրէից եւ արարչութեան բոլոր աշխարհի։

Ե. Հինգերորդ, ի կազմութենէ լինելութեան մարդոյն։

Զ. Վեցերորդ, ի նոյն ինքն յարարածոց սկիզբն է ըստ կարգի պատմութեանց Հինգ գրոցն Մովսէսի։

Է. Եօթներորդ. Յեսու եւ Դատաւորքն եւ Չորս Թագաւորութեանցն համառօտեալ։

Ը. Ութերորդ, ի Նոր Կտակարանաց մարդեղութեան Բանին Աստուծոյ։

Թ. Իններորդ, ի նոր Եկեղեցւոյ հարցմունք զանազանք։

Վասն Հոգւոյն Սրբոյ, էջ 102—107.
Վկայութիւնք յաղագս համագոյ եւ զուգապատիւ Երրորդութեանն եւ նոյնագործ արարչութեանն, էջ 107—108.
Վկայութիւն՝ թէ Հոգին Սուրբ Աստուած է, էջ 108—113.
Ընդդէմ այնոցիկ, որ ասեն զՀոգին բղխումն ի Հօրէ եւ յՈրդւոյ, էջ 113—115.
Եւ զի Հոգին Սուրբ է միայն ի Հօրէ բղխումն, էջ 115—119.
Ընդդէմ մարդադաւան Նեստորականաց, էջ 119—121.
Հարցմունք առ երկաբնակս, որք ուրանան զմին Քրիստոս Աստուած մարդացեալ ասել, էջ 121—124.
Վկայութիւն ի Սուրբ Գրոց, զի ճշմարիտ Աստուած է Քրիստոս, էջ 124—129.
[Հարցմունք], էջ 129—141.
Հարցումն Երկաբնակաց առ մեզ, էջ 141—143.
Հարցից եւ ես զձեզ զայդ Երկաբնակաց, էջ 143—153.
Հերձմունք Երկաբնակաց առ մարդեղութիւն Բանին, էջ 153—159.
Երրորդ Հատոր Հարցմանց, Յաղագս Աստուածաբանութեան Սրբոյն Դիոնեսեայ, էջ 159—190.
Չորրորդ Հատոր Հարցմանց, ի գործոյ եւ յարարչութեանցն Աստուծոյ, Վեցօրէից, էջ 190—232.
Հինգերորդ Հատոր Հարցմանց, Յաղագս լինելութեան մարդոյն եւ կազմութեան, էջ 232—274.
Վեցերորդ Հատոր Հարցմանց, Հինգ [illegible] [illegible] եւ այլն, էջ 274—360.
Եօթներորդ Հարցմանց — Յեսու, էջ 360—377.
Ութերորդ Հատոր յաղագս մարդեղութեան Փրկչին մերոյ, էջ 377—449.

Արդ՝ է ինչ ի սմա հաւաքեալ ի լուսաւոր բանից վարդապետաց որոց բառ գրոյն կամ իմացուածոյն։ Եւ է ինչ ի ներգործութեանց Հոգւոյն Աստուծոյ շնորհաց, որ ծածկէ յիմաստնոց եւ յայտնէ տղայոց, յիւրաքանչիւր ժամանակս, բառ կամաց իւրոց։ Եւ թէ այս եւ թէ այն, դու ընկալ զխնդիրդ մտաց առանց ամենայն երկբայութեանց, իբր ի միոյ կենդանատու աղբերէ կենաց ուռճացեալ եւ պտղաւէտեալ ի փառս եւ ի գովեստ նորին անեղագործի եւ ամենաշնորհի։ Զոր եւ ես, զօրէն մշակաց, բազմահաւաք պտղոց կամ փունջ մի անուշահոտ բազմերանգ ծաղկանց, կամ շնչին թռչնոց՝ զխորհուրդ մեղու. կամ որպէս զնմանս այլոյն առասպելով գրիս, ալեբս ընծայեցի ի գանձանակ ճոխութեան ձերդ մեծութեան, իմաստախոհ եւ ճշմարտասէր Եկեղեցեացդ Հայաստանեայց, եւ ընթերցասէր մտաց։

Որ եւ աղաչեմ՝ զրաբեմեան Հանդիպողաց եղբայրական սիրով Հաւանել. զպակասն լնուլ եւ զաւելին կշռել. եւ պիտանեացն փառս մեծընծայել այնմ՝ որ փառաւորեալ է ի պարգեւս իւր. իսկ զանպիտանս ներել մերոյ փոքրընկալ անօթոյս, եւ զանդգայկան փութոյս։

Դարձեալ, յերեսս անկեալ արտասուալից դիմօք, Հոգւ եւ փոքր սուրբ գործատարաց ձեր, աղերսեմ ի խորոց սրտէ, զՀարազատ գութ Հօրդ եւ եղբարց մերոց Հոգեւորաց, զի կամք մի արտասուաց ի կաթիլ դուլէ ձերդ մաղթանաց, ցողեսցէ ի գերեզման Հոգւոյս իմ՝ տապանաց, եւ լուասցէ զբազմաչարաւ զաղտեղեալ ոսկերս մեղաց մեռելոյս։ Զի թերեւս վասն ձեր սիրալիր մաղթանացդ զասայց ողորմութիւն յամենողորմ փրկչէն մերմէ։

Այլ եւ Վարդապետին իմոյ եւ մեծ Հռետորին Հայոց, Յոհաննու Որոտնեցւոյ, եղիցի ի սմա յիշատակ մաղթանաց՝ մասին աւրհնութեանց եւ վիճակի ժառանգութեան սրբոցն ի լոյս։ Զի նա ծնու

ղմեզ, բառ բանի, բաղմաձայն երկոք, կրթեալ ի մա-մնայս վարժարանի եւ ի յոյժ կենդանի։ Որ եւ ձեզ յիշողացդ եւ մեզ յուսողացս, առ. հասարակ ողորմեսցի բարերար եւ բաղմագութ, մարդասէրն Աստուած եւ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն։

Այլ եւ գերջանիկ գաղափարողաց մաղթեմ, որք օրինակէք զԳէ[illegible] Հոբձանցու այսոցիկ, գրել զը՛ ստակաւ յիշատակս այսորիկ. որպէս զի եւ զուք յիշիք գրեալ ի գիրն կենաց. ամէն [էջ 682—684]։

[Գ]րեալ յայսմ տեղոջ եւ հարցմունքն Գէորգէ-յ վասն բազում վկայութեանց, որ առեալ է ի գիրս յայս, զի անստարակոյս լիցի։ [Ե]. են հարցմունքդ Զորեքատասան գլխ. որպէս յայտ է ի կարգից. Հարցմունք Գէորգէ [illegible] եւ լուծ-մունք Գ[illegible], նորին հարազատի. օգնեա Յիսուս. Վերջին տողք. "Ձէ [illegible]„ (էջ 684—703)։

Ա. եւ Տ. կը վերջացնեն գլուխս. "Եւ այս յաղագս այսորիկ այսքան„ով, եւ անմիջապէս կը յարեն Տաթեւացւոյն Յիշատակարանը, տարբեր վերիննէն. "Ո՛չ բառ բաւական բանի տուեալ (Տ. տուեալ) զլուծումն„ սկսած ծով։ Շատ կարեւոր, պատմական արժէք ունեցող Յիշատակարան մը։ Մեր օրինակը (Հ) չունի այդ Յիշատակարանը, եւ ատոր տեղ կը շարունակէ, — "Խոկ որ ասեն. Հա՛յր եւ որդի, եւ Հոգի սուրբ, ողորմեա, կամ թէ Քրիս-տոս որ խաչեցար. Այլքս երկաբնականացն է եւ քաղ-կեդոնականացն որք բաժանեն զբանն ի մարմնոյն եւ զխաչելոյն մարդ ասեն եւ տկար, եւ մահկանացու խոստովանին։ Այլ որ մեզ ուսուցին, Եփեսոսին է։ Զի սուրբ առաքեալն ի յանդ հաստատեցաւ, որ-պէս եւ փառք ի բարձունսն սկսեալ հրեշտակաց ի ծնունդն Քրիստոսի, եւ յերրորդ սուրբ ժողովն եղեւ կատարեալ„։ Եւ յառաջ կը տանի լուծմունքը

Ը. Աստուածաբանութիւն Սրբոյն [Դիոն]իսեա՛յ։
Թ. Վասն հրեշտակա՛ց եւ դիւաց։
Ժ. Վասն գործոց եւ արարչութեան։
ԺԱ. Վասն Արարածոց եւ աշխարհի։
ԺԲ. Վասն լուսաւորաց եւ եղանակա՛ց եւ աւուրց։
ԺԳ. Վասն իւրաքանչիւր տարե՛րց, բուսուց եւ տնկոց [եւ] կենդանեաց։
ԺԴ. Վասն դրախտին։
ԺԵ. Վասն կազմութեան մարդոյն։
ԺԶ. Վասն ոգւոյ մարդոյ։
ԺԷ. [Վասն] բոլոր մարդոյ։
ԺԸ. Վասն Աբելի եւ Նախահարցն։
ԺԹ. Վասն Աբրահամու։
Ի. Յելից գրոց։
ԻԱ. Ղեւտականքն։
ԻԲ. Թիւքն։
ԻԳ. Երկրորդ օրէնքն։
ԻԴ. Յեսու Նաւեա՛։
ԻԵ. Դատաւորքն։
ԻԶ. Առաջի[ն] թագաւորութիւնն։
ԻԷ. Երկրորդ թագաւորութիւնն։
ԻԸ. Երրորդ թագաւորութիւնն։
ԻԹ. Չորրորդ թագաւորութիւնն։
Լ. Քրիստոսի մարդեղութիւնն։
ԼԱ. Վասն Նոր աւրինացն։
ԼԲ. Վասն մեղաց։
ԼԳ. Վասն առաքինութեանց։
ԼԴ. Վասն եւթն խորհրդո՛ցն։
ԼԵ. Վասն առանձին Եկեղեցւո՛ մերոյ։
ԼԶ. Վասն փոխման մարդոյ։
ԼԷ. Վասն բաժանման հոգւոյ։
ԼԸ. Վասն Նեռինն։
ԼԹ. Վասն Յարութեանն Կիւրակէին[1]։

[1] ԼԹ. տողը մաշուած եւ յետոյ գրուած է մանր գրերով տողամիջին վրայ։ Այլ օրինակներու մէջ «Վասն յարութեանն [illegible] եւ ոչ թէ Կիւրակէին։

Խ. Վասն Գայլըստեան եւ դատաստանին։
ԽԱ. Հարցմունք Գէորգայ Վարդապետին եւ պատասխանի Գրիգորի եռամեծի Հողեչաճի։

Իսկ յառաջիկայ իրողութեանս, նիւթական պատճառ, եւ ընթակայէ առան իմն սեռական հատոր հարցմանցս այսոցիկ, յորոց յարմարումն շարադրութեան է ըստ այսմ աւրինակի։

Առաջինն, առ արտաքինս առարկութիւն եւ լուծումն ընդդիմախաւսութեանց, որք զհարկ եւ զճակատագիր, զչար եւ զբարի յԱստուծոյ համբաւեն։ Եւ ընդդէմ Մանիքեցոց, այլ Տաճկաց եւ Հրէից։
Երկրորդ Հատորն, ընդդէմ Արիոսի՝ եւ Հոգեմարտիցն, եւ Նեստորի եւ Երկաբնակացն։
Երրորդն Հատոր է ճշմարտաբանութիւն աստուածաբանութեանն Սրբոյն Դիոնիսեայ ցուցումն ամփաւուք։
Չորրորդ. Վասն վեցաւրէից եւ արարչութեան բոլոր աշխարհի։
Հինգերորդ, վասն ի կազմութենէ լինելութեան մարդոյ։
Վեցերորդ, ի նոյն ինքն յարարածոց սկիզբն է ըստ կարգի պատմութեանց հինգ գրոց[ն] Մովսէսի։
Եօթներորդ Հատորն, Յեսու եւ Դատաւորքն եւ Չորս թագաւորութեանցն համառաւտեալ։
Ութերորդ Հատոր ի Նոր Կտակարանաց մարդեղութեան Բանին Աստուծոյ։
Իններորդ, ի Նորս Եկեղեցւոյ հարցմունք զանազան։
Ժ. Վասն կատարածի եւ փոփոխման աշխարհի, յարութեան եւ դատաստանի հարցման։

Արդ այսոք[իկ] են նիւթական պատճառք այսոցիկ հարցմանց։ Իսկ տեսական եւ կատարու-

նախան նոյն է յուծումն բանից ընդդիմակաց, եւ յարդումն առ ճշմարիտն հաւատութեան խոստովանութեան մերս եկեղեցւոյ յիմաստասիրել իսկ։

Հաւաքման պատճառ գոլոյ իմս աշխատութեան Գրիգորի Բանասէրի տխեղծ մտաւին եւ տկար անձին. ի խնդրոյ ուժմե աշակերտի, Աստուծոյ ուղղափառի։

Ուր եւ մակագրեալ յորջորջումն գրոյս բան կոչման իւրն. Հարցմունք Գրիգորի այտատաւորի:

Այլ եւ պատճառ այրին, յորոց եղեւ մեզ հանդիպել։ Նախ, բան վերոյկոչեցելոյն Աստուծ. բացում անգամ եւ աշակերտակցաց իմոց աղաչեցեալ պնդիլոս ամենայն լուծանել։ Զոր ոչ եղեւ հնար ընդդիմադարձ լինել։

Երկրորդ, երկուցեալ յաստուածախօսն աւանդել աւանդ. որ զհեռացեալսն թագուց քանքար։ Զմեծութիւնն զոր եկեալ, հանգէ յարափային նորա։ Որ ծածկէ զբանն ի աւետեցելոյն ասէ։

Երրորդ, զի աշխատութիւն մեր մի միայն լիցի ներկայիս լսելոյ հոգ. առաջի, եւ յետնոցն գրչաւանդել. աղաչելով, եթէ որ գեղեցկեցի ի սմայ ընթերցմամբ, վասն իմ մաղթանս մատուցանել Աստուծոյ։

Արդ, հիմն գործոյս ի վերայ անշարժ վիմին Քրիստոսի կայացցի, եւ բոլորն շինուած՝ չորիւք սեամբ հաստատեսցի։ Զառաջինն սիւն կանգնեսցի Աստուածային քարոզութիւն. զերկրորդն՝ մարգարէական վկայութիւն. զերրորդն՝ մեկնողացն ուղղութիւն. զչորրորդն՝ ընթերցողացն հաւատութիւն եւ ճշմարտասիրութիւն։

Եւ մի որ կամականեցի երկրայական մասուկ բին ինչ թերութեան ի բանից վարդապետաց որոց հաւաքելոյ։ Եւ առեմ ոչ բան զիտութեան իմաստութեան, որոց բացում է այսպանդրն, եւ ես յինձէն գիտեմ, զղակառն եւ զ[յ]աճախն, զկրկինն եւս զ[ի] յայտ է լինութեամբ խնդրողաց։ Այլ

քան ճշմարտութեան ուղղափառութեան հոգ տարեալ յամենայն կամաց, ոչ գոլ եպերանք մատգիւր իմացողաց մերս միաշունչ միաձայնութեանց։

Այլ ուշիմ մտաւք եւ հոգացող գաղափարողքն գրեալ լինիցին ի գիրն կենաց անջնջելի յիշատակութեամբ ամէն. եւ եղիցի եղիցի։

Յ-նկ ---ջի[ն] Հ---րէ Հ-րցմ-նց-։

Նախ, քան զէմ նոցա, որոց զհարկն տանն։
Բ. Ընդդէմ որոց զրախտն համբաւեն։
Գ. Որ զշարս եւ զբարիս յԱստուծոյ տանն։
Դ. Ընդդէմ Մանիքեցւոցն։
Ե. Վասն բարոյ եւ չարի, եւ թէ զինչ է գործ նոցա։
Զ. Վասն ճանաչման Աստուծոյ, եւ առանց զրոյ ցուցումն Աստուծոյ։

Իսկ ընդդէմ Յաճկաց ԺԶ. գլխով։

Առաջինն որ ուրանան զերրորդութիւնն, այլ եւ բանին ակ.(?) երրորդութեանն։
Բ. Ուրանան զմարդեղութիւն Բանին։
Գ. Գրած է։
Դ. Թէ Աստուած է Քրիստոս եւ Ռոհայլլահ։
Ե. Որ զաւուրբ գիրս ոչ ընդունին, եւ չորս գիր տանն եկեալ։
Զ. Զի փեղամբար չէ Կնունան։
Է. Զի զ[յ]արութիւնն մարմնաւոր տանն։
Ը. Եւ զի անմահ են հրշտակք։
Թ. Զկենդանիս ոչ ընտրեն։
Ժ. Եւ վասն խոզի եւ վասն ձիոյ։
ԺԱ. Եւ վասն զի գինին պիղծ չէ, եւ զինչ է չափ գինոյն։
ԺԲ. Թէ ջուրն ոչ սրբէ զմեղս։ Եւ վասն միրտութեանն. զի պահս ոչ ունին։

ԺԴ. Վասն զի նման յանուն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ։ Եւ վասն Աբրահամու, զի աննման է։ Եւ վասն ձկանց։

ԺԵ. Զի անուաբէնք են։ [Ց]եա որոյ տառարկութիւնք Հրէից, եւ Ժ. թագաւորացն երկրի։ Այս են Ա——ջին Հ——քն։

Ինչպէս որ կ'երեւի ԺԴ. եւ ԺԶ. գլուխներ կը պակսին այս ցանկին մէջ, որ արդիւնք է գրչին անհմտութեան, թէեւ նիւթերը կան իրարու խառնուած, եւ կերպով մը ամփոփուած։

Գլխահամարներ թէ այստեղ եւ թէ յառաջջագոյն լուսանցքներու վրայ ալ դրուած են, Ա., Բ., Գ., եւայլն։ Եւ այստեղ ԺԴ. եւ ԺԶ. լուսանցքի վրայ ալ կը պակսին։

Պէտք է դիտել որ այս ցանկին, Ա.ի եւ Հ.ի ցանկերուն հետ բաղդատուած ատեն, տարբերութիւնը աչքի կը զարնէ։ Մանաւանդ Կ——ն բառին կիրարկումը այս օրինակին մէջ ուշագրաւ է։

Ա. ունի. «մեծերորդ, Մ——հ——ք փեղամբար ոչ է»։ Հ. արդէն չունի ընդդէմ Ցաճկաց գրուածին ցանկը։ Իսկ այս օրինակը, ինչպէս տեսանք վերեւ, ունի. «Զ. զի փեղամբար չէ Կ——ն»։

[ԸՆԴԴԷՄ ԿՈՐՈՒՍԵԱԼ ԱԶԳԻՆ ՏԱՃԿԱՑ. ՈՐՔ ԿԱՐԱԳԵՑ ԵՆ ՆԵՌԻՆՆ. ԵՒ ՆՈՐ ՀԵԹԱՆՈՍՔ. ՀԵՐՁՈՒԱԾՈՎՆ ԱՐԻՍՈՍԻ ԵՒ ԿԵՐԻՆԹՈՍԻ*]

[Ն]ախ. Զի ուրանան զերրորդութիւն անձանցն,[1]։

Երկր. Զբարի եւ զչար յԱստուծոյ ասեն։

---

* Մեր օրինակն չունի ո եւ է վերնագիր։ Այս վերնագիրը դրինք ըստ Ա.ի։

[1] Ա. զերրորդութիւնն անձանց։

Երրդ. Ուրանան զմարդեղութիւն բանին։

Չորրդ. ԶՔրիստոս ոչ խոստովանին Աստուած, այլ մարդ սոսկ եւ փնղամբար։

Հինգդ. Զամենայն Սուրբ գիրս, այսինքն՝ զՀին եւ զՆոր կտակարանս, ոչ ընդունին։

Վեցդ. 'Զոմն մարդ,'[1] փնղամբար ասեն։

Եւթդ. ԶՅարութիւն մարմնական ասեն։

Ութդ. ԶՀրեշտակս եւ զհոգիս մահկանացու ասեն։

Իննդ. Անարգեն զնշան խաչին եւ զպատկերս սուրբս։

Տասնդ. Զպեղծ կենդանիս ոչ ընտրեն, 'այլ,'[2] անխտիր ուտեն։

'Մետասանդ.,'[3] Զգինին հարամ՝ ըմպեն։

'Երկոտանդ.,'[3] Հանապազ ջրով ողողին եւ սրբութիւն համարին։

'Երեքտանդ.,'[3] Կրծատելն, որ է 'սունաթելն,'[4]։

'Չորեքտանդ., Պահք ոչ ունին, 'ոչ զՀինն եւ զՆորս,'[5]։

'Հնգտանդ.,'[3] 'ԶՀայզէնն'[6] ոչ ուտեն։

'Վեշտանդ.,'[3] Զի անօրէնք են եւ կարծեն զինքեանս օրինաւոր գոլ։

---

1 Ա. զՄահմէտ։

2 Ա. այլ զամենայն։

3 Ա. Տասն եւ մի, Տասն եւ բ., Տասն եւ գ., Տասն եւ դ., Տասն եւ ե., Տասն եւ զ.։

4 Ա. սունաթել։

5 Ա. ոչ զՀին եւ ոչ զՆորս։

6 Ա. զՀայզենս։

Եւ այլ եւս բազում ՝հայհոյութիւն,[1] ունին, զորս անարժան համարիմ յիշել. այլ այսչափ միայն ի պատասխանիս նոցա։ Եւ թէպէտ ոչ գոյ բաժին հաւատացելոյ ընդ անհաւատին, եւ ոչ լուսոյ ընդ խաւարի[2], որպէս գրէ Առաքեալ. զի թէ մօր կամ լեզուաւ խօսիմք ընդ նոսա, մեղանչեմք[3]. թող թէ այլ ինչ յարակցութիւն ունել կամ սէր։ Այլ պատասխանել անզգամին, ըստ Սողոմոնի, վասն ագիտաց զի մի մոլորեսցին զհետ կորստեան նոցա։

Եւ այսպէս պատահեսցէ իւրաքանչիւրոցն, ՝օգնութեամբ Սուրբ Հոգւոյն, որ զօրութիւն է տկարաց[4]։

[Ա.]

[Առաջին մոլորութիւն Այլազգեաց։]

՝Եւ նախ ուրանան զերրորդութիւն անձանց, որպէս հերձուածողն Սաբէլ,[5] եւ ասեն՝ մի Աստուած։ ՝Եւ առարկեն նախ այսպէս. Եթէ [յ]Աստուած է ծնունդ՝ այս եւ ապականութիւն. զի ծնունդ միոյն՝ ապականութիւն է միւսոյն. եւ այս

1 Ա. հայհոյութիւնս։

2 Ա-ն ունի. եւ առաջարկ Առաքելոյ ընդ մեհենաց [կամ մեհենեաց. որպէս ունին այլ օրինակք]։

3 Ա-ն յաւելու. զի պիղծ են ամենեքին եւ անարժանք։

4 Ա. օգնականութեամբ Հոգւոյն Սրբոյ, որ զօրութիւն տայ տկարաց։

5 Ա. Եւ նախ զառաջինն ուրանան զերրորդութիւնն անձանց. որպէս Սաբէլ։

գործութիւն է յԱստուած. ապա՛ ոչ է յԱստուած ծնունդ,[1]։

[Ա]սեմք առ այս[2] թէ որպէս ջղջիկանն ոչ կարէ հայել ի լոյս արեգականն, այսպէս մարդկային իմացումն ոչ կարէ հայել յաստուածային լոյսն, որ է անմատոյց. եւ ոչ կարեմք հասանել ընական լուսով գիտութեան. այլ միայն լուսով հաւատոյն՝ ի Սուրբ Գրոց առաջնորդեալք։ Եւ զի նոքա ոչ ունին զլոյս հաւատոյ, եւ ոչ զՍուրբ Գիրս. վասն այն ամենայն առարկութիւնք նոցա, որ է ըստ բնական գիտութեան եւ ըստ զգալի իրաց, 'ոչինչ է,[3] եզրակացուցանի յԱստուած։ Եւ այս մին պատասխանիս բաւական է ամենայն առարկութեանց նոցա։ Սակայն զի մի անգէտ երեւեսցուք, տացուք պատասխանի իւրաքանչիւրոցն[4]։ Առաջնոյն ասեմք թէ յիմանալի ծնունդն

---

[1] Ա. ունի այսպէս. 'Եւ առարկեն նախ այսպէս. եթէ ծայրագոյն պարզութիւնն ոչ կարտանայ բազմութեան. Այլ է Աստուած ամենեւին պարզ. վասն որոյ ոչ ունի բազմութիւն անձանց։ Դարձեալ՝ մի անձն պարզագոյն է քան զբազմութիւն անձանց. ապա ուրեմն այն որ է պարզագոյն՝ Աստուծոյ վայելէ,։

[2] Ա. ունի. 'ըստ Արիստոտէլի,։

[3] Ա. ոչինչ։

[4] Ա. ունի. 'յաշխատասիրութեանէ ոմանց վարդապետաց։ Եւ շարունակէ այսպէս. Առաջնոյն ասացեալ է թէ ծայրագոյն պարզութիւնն է ընդդէմ էութեան եւ ոչ աստուածային անձանցն. քանզի աստուածային անձինքն են մի էութիւն ըստ թուոյ։ Երկրորդ՝ ասացեալ է թէ միութիւն անձինն պարզագոյն է ի ստեղծուածս եւ ոչ ի ստեղծողն. զի անձինք ստեղծուածոց թէպէտ մի էութիւն են, այլ ոչ ըստ թուոյն։ Իսկ աստուածայինքն են մի եւ նոյն ըստ թուոյն. եւ մի անձն ոչ ունի նուազ քան զերիսն, եւ ոչ

ոչ է ապականութիւն եւ ոչ փոփոխումն ինչ. զի ոչ գոյ անդ նիւթ, որ ընդ գոլ 'միոյն տե-' սակին,[1] ապականի միւսն: Դարձեալ ասեն' ամենայն որ ծնանի է ժամանակաւոր. քանզի ծնունդն է փոփոխումն ինչ յոչէութենէ յէութիւն. այլ Աստուած է անփոփոխելի:

Ասեմք առ այս թէ աստուածային ծնունդն ոչ է ի ներքոյ ժամանակի, այլ յաւիտենական. եւ ոչ երբեք զօրութեամբ, այլ միշտ ներգործութեամբ:

Դարձեալ ասեն' թէ Որդին առնու զնոյն բնութիւն Հօրն. ապա պակասի ի Հայրն, կամ լինին զանազան Աստուածք:

Ասեմք առ այս թէ ոչ է պիտոյ թէ պակասի ի Հայրն, կամ լինին զանազան Աստուածք[2].

---

երկուցն ասելի քան զմիոյն. քանզի ոչինչ յաւելու ի յէութիւնն, բայց միայն զատորոշութիւնն: Զոր օրինակ նմանութիւնն ոչինչ յաւելու ի սպիտակութիւնն. զի թէ լինէր յաշխարհի միմիայն սպիտակ, եւ չլինէր այլ սպիտակ, այլ եւ ոչ նման. եւ եթէ լինի այն սպիտակ ոչինչ յաւելու յառաջնոյն, բայց զի յառաջն ոչ էր նման, եւ յետոյ է նման: Դարձեալ ասեն. ի առաջման անձինն դնի զգոյացութիւնն. քանզի անձն է բանական բնութեանն անբաժանելի գոյացութիւն, եւ թէ երեք են անձինք, ապա եւ երեք են գոյացութիւնք: Ասեմք առ այս, թէ գոյացութիւնն ոչ դնի ի առաջման անձինն վասն բազմապատկութեանն, այլ վասն անձինն, որ է մի էութիւն նոյն անձինն: Դարձեալ ասեն' թէ յԱստուած է ծնունդ, ապա եւ ապականութիւն. զի ծնունդ միոյն' ապականութիւն է միւսոյն, եւ այս փոփոխութիւն է յԱստուած. ապա ոչ է յԱստուած ծնունդ: Ասեմք առ այս, թէ յիմանալի ծնունդն, եւ այլն:

1 Ա. միոյ տեսակին:

2 Ա. չունի. 'կամ' լինին զանազան Աստուածք, թերեւս յանուշադրութենէ գրչին:

զի ոչ է իր մարմնական եւ նիւթական որ կարէ բաժանիլ եւ պակասիլ։ Եւ զի ոչ բաժանի, ոչ լինին զանազան Աստուածք։

Դարձեալ ասեն՝ թէ Աստուած ծնաւ զԱստուած, կամ զինքն ծնաւ Աստուած, կամ զայլս. անկարելի է ուրեք ծնանիլ զինքն. եւ թէ ծնաւ այլ Աստուած, ապա ուրեմն երկու են Աստուածք։

Ասեմք առ այս, թէ ոչ հաւանիմք երկոցունց։ Զի թէ ասի Աստուած ծնաւ զինքն Աստուած, իմացեալ լինի թէ Հայր ծնաւ զինքն Հայր. 'վասն որոյ,[1] յորժամ ասեմք թէ Աստուած ծնաւ զԱստուած, Աստուածն իմանի անդ, 'ոչ վասն բացարձակութեան, այլ վասն անձինն Հօր,[2], որ ոչ ծնաւ զանձն իւր, այլ զանձն Որդւոյ։ Նոյնպէս ոչ ծնաւ զայլ Աստուած. քանզի յորժամ 'ասեմք,[3] այլ Աստուած՝ այլն անդ ոչ ցուցանէ զանձն, այլ զէութիւն[ն]։

Դարձեալ ասեն. Հայր տայ Որդւոյ 'եւ,[4] զամենայն ինչ որ ունի. ապա եւ զիւր անձն, եւ այսպէս ոչ է որիշ անձն։

'Ասեմք,[5] թէ պարտանք է աստ։ Զի յորժամ ասէ թէ Հայր ետ զամենայն ինչ, իմացեալ լինի վասն 'ծնեալ էութեան,[6], որ է Որդի, եւ ո՛չ վասն անձին Հօրն։

---

1 Ա. վասն զի։

2 Ա. ո՛չ վասն բացարձակ էութեան, այլ վասն անձին Հօր։

3 "ասեմք" պակասի յԱ.ն յանուշադրութենէ գրչին

4 "Եւ" պակասի յԱ.ն։

5 Ա. ասեմք առ այս։

6 Ա. ծնելութեանն։

Դարձեալ ասեն. ի Հայրն մի է հայրութիւն եւ էութիւն. ապա թէ այս զէութիւն, այլ եւ 'զհայրութիւն,[1]։

Ասեմք թէ 'հայրութիւն եւ էութիւն,[2] մի են ի Հայրն, այլ զանազանին ի կերպ լինելոյն. զի 'էութիւն,[3] հաղորդելի է. իսկ 'հայրութիւն,[4] ոչ։

Դարձեալ ասեն. թէ յորժամ պետրոս մարդ է, պօղոս մարդ է, 'Մարկոս,[5] մարդ է, ապա են երեք մարդ եւ ոչ մի[6]։

Ասեմք առ այս թէ ոչ է նման. զի յորժամ ասի պետրոս մարդ է, պօղոս մարդ է, 'Մարկոս մարդ է,[7], ոչ է մի մարդկութիւն ըստ թուոյ, այլ ըստ 'տեսակ[ի],[8]։ Այլ յորժամ ասի, Հայր է Աստուած, Որդի՝ Աստուած, Հոգի՝ Աստուած, յերիսն մի է աստուածութիւն ըստ թուոյ։

Այժմ առարկութեամբ հաստատեսցուք. թէ 'Երրորդութիւն,[9] է անձանց։ Նախ այսպէս[10],

---

1 Ա. զհայրութիւնն։

2 Ա. հայրութիւնն եւ էութիւնն։

3 Ա. էութիւնն։

4 Ա. հայրութիւնն։

5 Ա. Յովհաննէս։

6 Ա. ունի. Նոյնպէս, թէ Հայր է Աստուած՝ Որդի Աստուած, ապա երեք են Աստուածք եւ ոչ մի։

7 Ա-ն պէտք էր ունենար 'Յովհաննէս մարդ է,'. բայց չունի. որովհետեւ քանի մը տող մնացեր եւ չուանցքի վրայ գրուած է, եւ հաւանաբար այդ պատճառաւ մոռցուած է այդ անունը։

8 Ա. տեսակին։

9 Ա. Երրորդութիւնն։

10 Ա. ունի. 'Բնութեամբ է բարւոյն հաղորդել զինքն այլոց. որոյ (որոց) պատճառ է. զի ըստ Արիստոտէլի բար

պէս մարդ, քան ՚զանձրնդականն,[1] որպէս քար. այլ որ ինչ պատուական է, վայելէ առաւելին ակզբանն. վասն որոյ Աստուած ծնաւ զՈրդի. զի մի պակաս ՚երեւի,[2] քան ՚զծնընդականն[3] ստեղծուածս[4].

Դարձեալ Հրեշտակք եւ ՚մարդիկ,[5] են պատուական էութիւնք. զի ունին բան եւ կենդանութիւն. եւ զոկեալն ՚ի սոցանէ,[6] անբան եւ անկենդան է. որպէս քար. այլ Աստուած է պատուական էութիւն, եւ ունի բան եւ կենդանութիւն, որ է Որդի եւ Հոգի Նորին.

Դարձեալ. ամենայն ՚բանական,[7] ունի իմացումն, որով իմանայ զինքենէ. ՚ունի,[8] եւ կամք, որով կամի զինքն. արդ Աստուած իմանալով զինքն ծնանի զՈրդի եւ կամելով զինքն բղխէ զՀոգի. Այս ուրեմն են ի յԱստուած երեք անձինք[9].

---

բնութենական, որպէս Հայր որդւոյ. Նա՝ զի պատճառ է Աստուած պարզից աննիւթութեալ եւ խառնիցն արարածոց. պարտ է զոյն նմա եւ պատճառ բնութենապէս Որդւոյ եւ Հոգւոյ. զի մի զայն պակաս անպատճառ պատճառն յամենայն պատճառաց.

1 Ա. Դարձեալ զանծնունդ.

2 Ա. երեւեսցի.

3 Ա. զծնընդականն.

4 Ա. ունի. "Դարձեալ. ամենայն իր մարմին կամ անմարմին, ունի էութիւն, զօրութիւն եւ ներգործութիւն. Եւ զի խոստովանեալ գոյ է Աստուած, ապա ուրեմն զօրութիւն իւր է Որդին, եւ ներգործութիւն՝ Հոգին Սուրբ.

5 Ա. մարդիկք.

6 Ա. ի նոցանէ.

7 Ա. որ բանական է.

8 Ա. ունին.

9 Ա. այլ Աստուած կամելով զինքն բղխէ զՀոգին.

Այլ եւ հարցանեմ. թէ Աստուած բան եւ հոգի ունի՞ թէ ոչ. թէ չունի անբան է եւ անկենդան, եւ 'կուռքն,[1] են որ Աստուածք կոչին 'անբան,[2] եւ անկենդան։ Իսկ թէ ունի, ապա Քրիստոս է բանն Աստուծոյ. այլ եւ Հոգին Սուրբ, որպէս ամենայն մարգարէքն վկայեն։

Իսկ թէ ասեն, արարած է բանն եւ ծնունդ. 'Պատասխանեսցի թէ աստ,[3] չորս հերձուած գոյ 'նախ՝ զի մեր բանս ծնունդ է 'մտաց մեր,[4] եւ

---

իմանալով զինքն ծնանի զՈրդի. բայց այսմ օրինակի. զի ամենայն իմացող ունի նմանութիւն ինչ յիմացեալ իրին. եւ նմանութիւն այն կոչի բան մտաց եւ պատկեր իմացեալ իրին. որպէս իմանալով զքար, ունիմք զնմանութիւնն ի միտս, որ կոչի պատկեր եւ բան քարի։ Այսպէս եւ Աստուած նախ իմանա[լ]յ զինքն եւ ինքեամբ գոյացեալ. իսկ իմանալով զինքն ծնանի զնմանութիւն իւր. եւ նմանութիւնն այն ծնեալ՝ է պատկեր եւ բան Աստուծոյ. եւ զի յԱստուած մէջ գոյ բնութեան պատահմունք. վասն այն նմանութիւնն այն եւ բան է գոյացութիւն. եւ զի Աստուած է ամենեւին պարզ. վասն այն ծնեալ բանն այն է նոյն էութիւն եւ գոյացութիւն ծնողին. եւ զի ի մէջ ծնողին եւ ծնելոյն է առընչական հակակայութիւն. վասն այն հակակայութեան այս պատճառէ զանձն այլ. ապա ուրեմն պարտ է զի բանն Աստուծոյ ընկեր այլ անձն ի ծնողէն. եւ երկրորդ. անձն այն, որ է նմանութիւն բնութեան ծնողին, է նոյն բնութիւն. վասն այն կոչի Որդի։

Եւ զարմանալ. որպէս Աստուած է իմացող, նոյնպէս եւ կամեցող է. եւ որպէս իմանալովն զինքն յառաջ եկած զբանն. այսպէս սիրելովն զինքն՝ յառաջ եկած յինքենէ զՀոգին Սուրբ, որ է նոյն գոյացութիւն եւ էութիւն, որ է երրորդ անձն. ապա ուրեմն են պէտք յԱստուած երեք անձինք։

1 Ա. կուռք։
2 Պակասէ յԱ.Ն։
3 Ա. պատասխանի. Ասա՛յ։
4 Ա. մեր մտաց։

ոչ արարած։ Երկրորդ՝ զի մինչ արար զբանն՝ անբան էր։ Երրորդ՝ զի մասն մի արարած լինի Աստուծոյ, եւ մասն մին արարիչ։ Չորրորդ՝ զի բանն 'ի բնութենէն,[1] է, եւ թէ բանն արարած է եւ բնութիւն նորա արարած է։ 'Այսպէս,[2] ոչ խոստովանին զԱստուած արարիչ։

Այլ մարմնացեալ բանին օրինակ 'տամք,[3] զխօսեցեալ բանն եւ զգրեալն ի քարտիսի։

Իսկ վկայութիւն ի Սուրբ գրոց։ Զի[4] Մովսէս ասէ. Հոգի Աստուծոյ շրջէր ի վերայ ջուրց։ Եւ Յոբ 'ասէ,[5]. Հոգի աստուածեղէն է որ արար զիս։ Եւ Դաւիթ 'ասէ,[5], Բանիւ Տեառն երկինք 'հաստատեցան,[6], եւ Հոգով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք 'նոցա,[7]։ Եւ Սողոմոն ասէ[8], Հոգի Տեառն ելից զաշխարհս[9]։

---

1 Ա. ի բնութենէ։
2 Ա. Եւ այսպէս։
3 Ա. տուք։
4 Պակասէ յԱ.Ն։
5 Պակասէ յԱ.Ն։
6 Ա. Հաստատեցաւ։
7 Ա. Նորա։
8 Պակասէ յԱ.Ն։
9 Ա. ունի. 'Եւ թէ Սուրբ Գրոց ոչ հաւատան, այլ ցուցից ի նոյին գրոց զվկայութիւն երիցն անձնաւորութեանց։ Նախ որ ասէն ի ըեզուս իւրեանց Հայր, Որդի, Հոգի Սուրբ, Աբա, Բրա, Ռուհաչ Ղդդուսա (օրինակս ունի Դղդուսա, ինչպէս ուրիշ օրինակներ։ Ընդունելու անգիտութեան արդիւնք մըն է այս սխալը, կամ ձեռագրաց մէջ Ղ.ի եւ Դ.ի շփոթում)։ Որդի, Հոգի, Հայր, Եբրա, Ռօ՞, Աբա՞։

Դարձեալ. Վասլաւի, Բիլլաւի, Թաւլաւի, Հայր, Հոգի, Որդի։ Բիամբլա՞, Թաւմամն, Թաւֆիմ։ Դարձեալ. Հայր, Որդի, Հոգի, Աբբա՞ (Հ)աբբապար, Աբբա՞ Աբբապար։

Եւ օրինակ ՙմիութեան եւ երրորդութեան՚[1]. որպէս միտք, իմացումն եւ կամքն մի են բնութեամբ եւ երեք յատկութեամբ։ Դարձեալ, հոգին, բան եւ շունչն մի են եւ երեք։ Դարձեալ, մի է մարդն հոգով եւ մարմնով եւ մտօք ըստ ոմանց։ Դարձեալ, մի է արեգակն եւ լոյսն եւ ճառագայթն իւր. այսինքն՝ սպիտակ լոյսն եւ դեղին։ Դարձեալ, մի է հուրն եւ լոյսն եւ ՙջերմութիւն ի նմանէ՚[2]։ ՙԴարձեալ՚[3], մի է ծաղիկն եւ գոյն եւ հոտն ի նմանէ[4]։ Դարձեալ, Ադամ, Եւայ եւ Սէթ ի նմանէ. մինն ծնունդ եւ մինն ոչ, եւ ՙմի՚[5] բնութիւն երեցն։

Եւ այլ բազում ինչ[6] օրինակ տամք երրորդութեանն, իբր նեցուկ ակար մտաց մարդկան։

Այլ նա ինքն է անօրինակ եւ աննման, եւ ի վեր քան զամենայն եղեալս։ Ինքն ինքեան

---

Դարձեալ. Հայր, Որդի, Հոգի. Այ, Էր, Ըն: Դարձեալ. Խարանեա, Մաքրքնաա, Իմաքնաա: Դարձեալ. Հայնաթ, Ըլմ, Ծանիփար: Տեառնիժան, Բանն, Հոգի:

Եւ ի լեզու նոցա անձն կոչի Շախսիաթ եւ բնութիւնն՝ Տապիաթ, եւ էութիւնն՝ Ուսաղ, եւ գոյացութիւնն՝ Ջօհար:

1 Ա. միութեանն եւ երրորդութեան։

2 Ա. ջերմութիւն իւր, որպէս ի հրոյն. եւ կամ որպէս երեք լոյսք ի մի խառնեալ լապտեր։ Դարձեալ մի բնութիւն ջրոյ է. ծովն, գետն եւ աղբերն։ Դարձեալ մի է արմատն եւ ծառն եւ պտուղն։

3 Ա. Եւ կամ։

4 Ա. ունի. "Դարձեալ. մի է խնձորն եւ հոտն եւ համն եւ գոյնն իւր,"

5 Ա. մի է։

6 Ա. ունի ՙայսպիսի՚։

միայն է նման, եւ Որդին միածին եւ Հոգին Սուրբ, որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Բ.

*Երկրորդ մաղթութիւն Այլազգեաց*[1]։

Որ զբարի եւ զՉար յԱստուծոյ ասեն, բաւականապէս ասացեալ եղեւ յԱռաջին Գլուխն։

*Ծանօթ.* — Այս Գլուխը մեր Ձեռագրին (= Հ) մէջ սա խորագիրն ունի.

*Ընդդէմ այլազգեաց, որք զչարս եւ զբարիս [յ]Աստուծոյ ասեն*, եւ կը բռնէ էջ 17—26։

Ա.ն ունի միայն *որք զչարս եւ զբարիս յԱստուծոյ ասեն*։

Իսկ Տպագրուածն ունի.

*Ընդդէմ նոցա՝ որք զբարի եւ զչար՝ յԱստուծոյ ասեն՝ ԺԲ առարկութեամբ* (էջ 13)։

Հոս կը գտնենք այդ Բ-րդ Գլուխը, դարձեալ ըստ Հ. Ձեռագրի, բաղդատելով զայն Ա.ի եւ Տ.ի հետ, որպէս զի ամբողջանայ Տաթեւացիին գրուածը ընդդէմ Տաճկաց։

Յետոյ, այս գլխին վերջը, կը գտնենք նաեւ Մ. Ձեռագրին ընթերցուածը, գաղափար մը տուած ըլլալու համար Մ.ի համառօտութեան մեթոտին վրայ։

---

[1] Ա. Տաճկաց։

## ԸՆԴԴԷՄ ԱՅԼԱԶԳԵԱՑ, ՈՐՔ ԶՉԱՐՍ ԵՒ ԶԲԱՐԻՍ (Յ)ԱՍՏՈՒԾՈՅ ԱՍԵՆ[1]

Իսկ ոմանք յաւելուն՝ եւս յամբարշտութիւն[2], իբր փախչելով ի ձախուն, խոտորին յաջակողմն. Ասելով թէ պատճառ ամենայնի բարեաց եւ չարեաց մերոց ոչ մեք, 'այլ[3] առաջին պատճառն Աստուած։

'Եւ զայս ասեն նոր հեթանոսք, որք են Տաճիկք[4], փախչելով յառաջասացեալ բախտէ եւ ի[5] ճակատագրէ ասելոյ, եւ փոխանակ նոցա յառաջին պատճառն վերագրեն զհարկն։ 'Եւ զի մի լինիցին երկու աստուածք Չար եւ Բարի, ըստ Մանիքեայ, այլ մի եւ նոյն է պատճառ երկուցն[6] ասեն[7]։

'Այլ մեք, դասք ճշմարտութեան հետեւողք[8] ընդդիմանամք այսմ. Ասելով թէ Աստուած ոչ է պատճառ չարեաց, այլ միայն բարեաց։

---

1 Ա. 'Որք զչարս եւ բարիս յԱստուծոյ ասեն,' Տ. Երրորդ գլուխ Ճառոյթիս: Ընդդէմ նոցա՝ որք զբարին եւ զչարը՝ յԱստուծոյ ասեն մ.թ., առաջնութեամբ:

2 Ա. եւ Տ. յեւս ամբարշտութիւն։

3 Տ. այլ է։

4 Տ. վերցնելով "Եւ զայս ասեն նոր հեթանոսք, որք են Տաճիկք, բառերը, սոցա տեղ գրած է "որք, յարաբերականը, 'որք փախչելով.'

5 Ա. եւ Տ. չունին "ի"։

6 Ա. երկուցեց (— երկուցունց?)։

7 Տ. որպէս զի մի ասիցեն երկու սկիզբն ըստ Մանիքեայ։

8 Տ. Այլ մեք դասք ուղղափառաց, հետեւողք ճշմարտութեան։

Եւ այս վասն բազում պատճառի.

Նախ. զի բարին էութիւն է. ուստի յայտ է. զի Հակադարձ[1] առ միմեանս. զի ամենայն որ բարի է, է[2]. եւ ամենայն որ է՝ է՝ բարի է. իսկ չարն ոչ էութիւն է։ Այլ որդ՝ Աստուած պատճառ էութեան է, եւ ոչ ոչէութեան. ապա ուրեմն չարն ոչ է յԱստուծոյ։

Երկրորդ. զի թէ չարն (յ)Աստուծոյ է. այլ որդ՝ չարն եկամուտ է եւ պատահեալ, լինէր ապա ի յԱստուած օտար ինչ եւ պատահական, որ է անտեղի[3].

Երրորդ. եթէ չարն է յԱստուծոյ, ապա սիրէ զչար. եւ եթէ սիրէ զչարն, սիրէ եւ զչարագործս, որք սիրեցին զչարն[4].

Չորրորդ. եթէ չարն է յԱստուծոյ, ոչ պատժէ զսատանայ, որ չարացաւ եւ ոչ զչարս ի մարդկանէ. այլ ահա պատժէ զչարն. ուրեմն ոչ է յԱստուծոյ[5].

Հինգերորդ. եթէ չարն է յԱստուծոյ, եւ

---

1 Ա. զի Հակադարձցին. Տ. զի Հակադարձին.

2 Ա. եւ Տ. բարի է, է է.

3 Ա. եւ Տ. Երկրորդ. բարին ունակութիւն է, եւ չարն պակասութիւն է (Տ. չունի "է") նմին. որպէս խաւարն լուսոյ. Այլ որդ՝ Աստուած պատճառ է ունակութեան եւ ոչ պակասութեան. ուրեմն չարն ոչ է Աստուծոյ.

4 Ա. եւ Տ. Երրորդ. բարին ճշմարիտ է եւ ճշմարիտն բարի. իսկ չարն սուտ է եւ սուտն չար. ապա ուրեմն Աստուած պատճառ է ճշմարտութեան եւ ոչ ստութեան.

5 Ա. եւ Տ. Չորրորդ. զի թէ չարն է յԱստուծոյ. այլ որդ չարն եկամուտ է եւ պատահեալ, լինէր ապա ի յԱստուած օտար ինչ եւ պատահական, որ է անտեղի. — Այս Չորրորդը կը համապատասխանէ Հ.ի Երկրորդին:

սկիզբն ամենայնի Աստուած, որ եւ չարեաց. այլ ոչ է սկզբնաւոր առաջին զաւակն չարեաց Սատանայ, որպէս նոքա բարբանջեն[1]:

Վեցերորդ. զի ի Հարկէ բարի է Աստուած, որպէս ի Հարկէ էակ է. այլ արդ՝ Հարկաւոր բարին է միշտ բարի եւ գոյացական բարի եւ զուտ բարի: Եւ զի ի Հարկէ ունի զգոլն բարի, անհնար է ոչ գոլ բարի: Եւ զի միշտ է բարի, անհնար է լինել բարի ոչ: Եւ զի գոյացական է բարի, անհնար է լինել պատահական չար: Եւ զուտ եւ խոկապէս բարի, անհնար է խառնել չարի[2]:

1 Ա. եւ Տ. Հինգերորդ. բարին կարգաւոր է, եւ չարն անկարգութիւն. այլ արդ՝ եթէ չարն ՚ի յԱստուծոյ, (Տ. յԱստուծոյ է), լինի անկարգութիւն յԱստուած, որ է անյարմար:

2 Ա. եւ Տ. Վեցերորդ. թէ չարն է՛ յԱստուծոյ, երեւի թէ Աստուած պատճառ է չարեաց: Այլ արդ. Ձ (բաց Տ.ի «ամենայն») պատճառ առաւել է քան պատճառեալսն, եթէ բարեաց եւ եթէ չարեաց. ապա անհնարին հերձուած է ասել զչարն ի յԱստուծոյ (Տ. յԱստուծոյ):

Եօթներորդ. եթէ չարն է յԱստուծոյ, ապա ուրէ զչար, եւ եթէ ուրէ զչար, ուրէ եւ զչարագործսն, որք ուրեցին զչար: — Այս էջը համապատասխանում է Հ.ի Գ..ին:

Ութերորդ. եթէ չարն է յԱստուծոյ, ոչ պատժէ զատաւոր որ չարացաւ, եւ ոչ զչարս ի մարդկանէ. այլ աՀա պատժէ. չար ուրեմն ոչ է յԱստուծոյ:

Իններորդ. եթէ չարն է յԱստուծոյ, ապա եւ կամի զչարն. յայնժամ լինի կրկին կամք Աստուծոյ, չար եւ բարի. զի կրկին գործ՝ ի կրկին կամաց յառաջ գայ. այլ թէ գործ եւ կամք կրկին է յԱստուած, ոչ է պարզ մի. այլ բաղադրեալ, որ անանցի է:

Տասներորդ. եթէ չարն է յԱստուծոյ եւ կամի զչար. ապա զբարին ոչ կամի. ապա թէ զբարին ոչ կամի. բարին ուրեմն ոչ է յԱստուծոյ:

ԺԱ.գ. (Տ. Մետասաներորդ). թէ (Տ. «եթէ») զչարին

եւ առաքելեն նախ այսպէս. Եթէ[1] Աստուած նախ քան զլինելն մեր ի նախատեսութիւն իւր ետես զամենայն լինել այնպէս. զչարն չար եւ զբարին բարի։ Արդ՝ Հարկ է ամենեցուն գոլ այնպէս, որպէս Աստուած ետես եւ գիտաց. եւ գիտութիւն Աստուծոյ ՙայնպէս տիրէ[2]։ Այս ուրեմն՝ ամենայն լինի ի Հարկէ տեսութեան Աստուծոյ։

ՙԱսեմք առ այս. թէ գիտելի է զի այլ է տեսութիւն Աստուծոյ եւ այլ է տեսութիւն մարդոյ[3]։ Զի տեսութիւն[4] Աստուծոյ ոչ է առաջին, այլ բոլոր համանգամայն եւ կատարեալ։ Իսկ տեսութիւն մարդոյ լինի առաջին եւ վերջին, զի զանցեալն տեսանէ յիշմամբ, եւ զներկայն՝ իմացմամբ, եւ հանդերձեալն ի պատճառն իւր, ըստ ժամանակին փոփոխելոյ, որպէս ասացաք։ Զոր օրինակ. թէ բազում մարդիկ անցանեն զճանապարհայն, եւ մերձ կացեալն տեսանէ նախ զմին, ապա զմիւսն եւ որ զկնի։ Իսկ թէ որ

---

Ասեմք առ այս. Նախ, եթէ կրկին է պատճառն. Հօր եւ Հեռի. այլ որդ՝ Հօր պատճառն է Հարկաւոր, եւ ներգործութիւնն (Տ. "ներգործութիւնն") իւր. իսկ Հեռին ոչ է Հարկաւոր, որպէս տեսցուք ի վերոյ։ Այլ (Տ. "Այլ որդն") աստուած է ամենեցուն ոչ Հօր պատճառ, այլ Հեռի. վասն որոյ ոչ Հարկաւ. (Տ. "Հարկաւոր") ներգործէ։

Դարձեալ ասեմք. թէ աստուած ոչ է պատճառ անկղծանածոց ի Հարկէ, այլ ըստ կամաց՝ որոց առնէ. զի ամենայն գիտէ ի Հարկէ եւ ամենայն ոչ ի Հարկէ։

1 Ա. եւ Տ. Երկրորդ. զի առէն թէ։

2 Ա. եւ Տ. "անպատճառ էր"։ Զեռագրական սխալագրչութեան ուշադրութ. արժանի մեն է այս, որ "անպատճառ է" եւ եղած է "այնպէս տիրէ"։

3 Պակասի ի Ա. եւ Տ.։

4 Ա. եւ Տ. "Զի ի տեսութիւնն"։

ի բարձր աշտարակ կալով տեսանէ զամենայն միահաւասար. նոյնպէս եւ Աստուած ի յաշտարակն յաւիտենից բարձրացեալ՝ տեսանէ զամենայն ներկայապէս։

Երդ՝ ՚պատասխանեմք[1] առարկութեանցն։

Նախ. ՚թէ որպէս[2] Աստուած տեսանէ զամենայն նախագիտութեամբ, եւ ոչինչ է արտաքոյ տեսութեան Աստուծոյ. սակայն տեսանէ զոմանս ի Հարկէ, եւ զոմանս ի ներընդունակութենէ լինել։

Դարձեալ ասեմք, թէ տեսանէ Աստուած զամենայն նախ քան զլինելն իւրեանց. սակայն տեսութիւն Աստուծոյ ոչ Հարկէ ի վերայ նոցա լինել չար կամ բարի։ Զոր օրինակ, արուեստաւոր որ գործէ այլ, եւ ի Հեռուստ տեսանէ որ զոր նոյ գործէ. այլ ոչ թէ տեսութիւնն Հարկեաց զայլն լինել այնպէս, այլ կամք արուեստաւորին։ Նոյնպէս եւ ՚տեսութիւն[3] Աստուծոյ ոչ Հարկէ ի վերայ մեր գործել զբարի կամ զչար, այլ կամք մեր։

՚Երկրորդ[4]. ասեն եթէ կամքն Աստուծոյ ոչ է ընդունայն, եւ ոչ որ կայ ընդդէմ կամացն Աստուծոյ. վասն որոյ զոր ինչ կամի այնպէս առնէ, զամ̃ չար եւ զամ̃ բարի։

Ասեմք առ այս.

Նախ. եթէ կամացն Աստուծոյ ոչ որ է

---

1 Ա. եւ Տ. «պատասխանեմ»։
2 Ա. եւ Տ. «թէպէտ»։
3 Ա. եւ Տ. «տեսութիւնն»։
4 Ա. եւ Տ. «Երրորդ»։

ընդդէմ, եւ որպէս կամի 'նոյնպէս[1] առնէ. այլ չար ոչ կամի եւ ոչ առնէ։

Դարձեալ ասեմք. թէ կամքն Աստուծոյ ոչ է ընդունայն. զի զոր ինչ կամի եւ առնէ. այլ կամեցաւ եւ արար զմեզ անձնիշխան եւ տէր գործոց մերոց. եթէ չար եւ եթէ բարի։

'Երրորդ[2]. ասեն թէ չարն ոչ է յԱստուծոյ. ապա երեւի թէ այլ ոմն է չարի սկիզբն, եւ լինի երկու սկիզբն, բարի եւ չար, ըստ Մանիքեայ։

Ասեմք առ այս.

Նախ. եթէ չարն ոչ է յԱստուծոյ. եւ ոչ ի բնութենէ եւ ոչ ի բնութիւն, եւ ոչ է բնութիւն։ Ասեմ զառաջինն՝ եթէ չարն ոչ է յԱստուծոյ. զի Աստուած բարի է բնութեամբ, եւ ի բարոյն չար ոչ գայ յառաջ, որպէս 'ի լուսոյն[3] խաւար։ Այլ եւ ոչ 'ի բնութենէ[4]. զի բնութիւնք ամենայն հրեշտակաց կամ մարդկան բարի են, ի բարոյն յառաջ եկեալ. այլ չար(ն) յանձնիշխան կամաց եկամուտ ի բնութիւն։ Այլեւ ոչ է բնութիւն. զի ոչ է չարն ի բնութիւն ուրուք, այլ արտաքոյ բնութեան 'պատահեալ[5]։ Այլեւ ոչ է բնութիւն. այսինքն՝ ոչ է էութիւն, ոչ մասն եւ ոչ բոլոր, այլ պակասութիւն ունակութեան. զի բարին ունակութիւն է, եւ չարն՝ պակասութիւն նորին, որպէս խաւարն

1 Ա. եւ Յ. «այնպէս»։
2 Ա. եւ Յ. «Զերրորդ»։
3 Ա. եւ Յ. «ոչ ի լուսոյն»։
4 Ա. «ի բնութենէն է»։
5 Ա. եւ Յ. «պատահեալ»։

լուսոյ եւ ՝հիւանդութիւն[1] առողջութեան, եւ
մահ՝ կենաց։

Այժմ պատասխանեսցուք ՝ընդդիմութեան[2]։

Արդ՝ թէպէտ չարն ոչ է յԱստուծոյ. այլու-
ոչ յինքն երկու աստուածք կամ երկու սկիզբն.
՝զի չար ոչ է էութիւն, եւ ոչ ընչութիւն. եւ
ոչ ընչին սկիզբն ոչ է Աստուած[3]. զի Աստուած
սկիզբն էութեանց է, ՝եւ ոչ՝ ոչ էութեանց[4]։
Այլեւ ոչ երկու սկիզբն. զի ՝գործօնեալք[5] չարին
սկսեալք են. ուրեմն ոչ են երկու սկիզբն[6]։

՝Չորրորդ[7], ասեն թէ ՝գործօնեալք[5] չա-
րին է յԱստուծոյ, որպէս կամքն. ապա եւ չարն
է յԱստուծոյ. զի նա՛ ստեղծ զկամքն։

Առ այս ասեմք.

՝Նախ. թէ Աստուած ստեղծ զկամքն բարի,
եւ զբարիսն եդ առաջի կամացն. իսկ նա ՝անձնիշ-
խանութեամբ[8] հեռացեալ ի բարոյն՝ գտանէ եղեւ
չարին. զի չարն ՝ոչ ինչ է[9], բայց հեռացումն,
կամ պակասութիւն բարոյ. ապա ուրեմն՝ թէ-
պէտ բանն եւ կամքն է յԱստուծոյ, այլ կամել
եւ ընտրել զչարն ոչ է յԱստուծոյ, այլ կամացն
եւ բանին։ Զոր օրինակ, արուեստաւոր որ կազ-

[1] Ա. եւ Տ. «հիւանդութիւնն»։
[2] Ա. եւ Տ. «ընդդիմութեանն»։
[3] Ա. եւ Տ. «զի չարն ոչընչութիւն է, եւ ոչընչին սկիզբն՝ ոչ է աստուած»։
[4] Պակասի ի Ա. եւ Տ.։
[5] Ա. «գործունեայք», Տ. «գործունէայք»։
[6] Ա. յաւելու «կամ երկու անսկիզբն»։
[7] Ա. եւ Տ. «Հինգերորդ»։
[8] Ա. «անձնիշխանութեամբն»։
[9] Ա. «ոչ այլ ինչ», Տ. «ոչ այլ ինչ է»։

մեղջէ սուր ի պատճառս ‘բարոյ[1]. այլ որ ներգործեացն չար, նայ եղեւ չարին պատճառ։ Դոյնպէս եւ Աստուած է արարողական պատճառ կամացն, այլ ներգործական ‘պատճառ[2]’ չար կամքն մեր։

Դարձեալ. անձնիշխան կամքն է յԱստուծոյ, եւ է յոչընչէ եղեալ. այլ արդ՝ անձնիշխան կամքն ըստ այնմ՝ որ յԱստուծոյ է եղեալ, ոչ է պատճառ չարի, այլ ըստ այնմ ‘որ[3] ի յոչընչէ[4] եւ ցանկայ ոչընչի, այսինքն չարի. ‘վասն այսորիկ[5] մեղքն եւ չարն ‘ոչ է ի յԱստուծոյ[6], այլ յոչընչէ, որ է սկիզբն ‘իւր[7]։

Դարձեալ ասեմք. թէ Աստուած ստեղծ զկամքն, նայ եւ ‘զՀրեշտակ[8] եւ զմարդիկ բարի, եւ կամի զբարին, եւ բռնադատէ սիրել զբարին. ուստի յայտ է զի սերմանեաց ի բնութիւնս զբարին, եւ օրէնս եդ բարոյ, այլ եւ խրատ եւ յորդորումն եւ ‘պարգեւք[9] բարեաց։ Իսկ զչար ոչ կամի, եւ ոչ բռնադատէ ի չար. այլ ‘տանջանս եւ պատիժ ետ[10] գործողացն զչարն։ Արդ ուրեմն չարն ոչ է յԱստուծոյ, եւ ոչ կամի զչար ուրուք։

---

1 Ա. «բարեաց»։
2 Ա. եւ Տ. «պատճառ է»։
3 Ա. «որ է»։
4 Տ. «յոչընչէ»։
5 Ա. «վասն որոյ»։
6 Տ. «ոչ են յաստուծոյ»։
7 Տ. «նոցա»։
8 Ա. եւ Տ. «զՀրեշտակս»։
9 Տ. «պարգեւս»։
10 Տ. «տանջանս եւ պատիժս», Ա. եւ Տ. «եդ»։

բարին. զի բարին ըստ կամաց է. իսկ չարն թոյլ տալով է. և այլ է թոյլ տալովն, որ իբրև չկամաց է։

Դարձեալ. թոյլ տալ և ներել չարեաց, վասն բարոյն է. զի նախախնամութեամբ բազում բարիս յառաջ ածէ ի չարէ. որպէս սատանայի թոյլ տայ զի փորձեսցին բարիքն և յայտնեսցին պսակքն։ Նաև մարդկան չարաց թոյլ տա, կամ զի ընտրեսցեն զբարիս, կամ յետոյ զղջասցին, կամ պէսպէս նախախնամութեամբ, որպէս ինքն գիտէ Աստուած ներէ չարեաց, որպէս տեսանելոց եմք ՚յառաջիկայդ[1]։

՚Վեցերորդ[2]. տեսն թէ Աստուած ոչ կամի զչար. այս կարեմք ասել ինչ, զոր ոչ կամի Աստուած։ Ասա ընդէ՞ր ասէ ՚Աւետարանն թէ մազ մի ի գլխոյ ոչ պակասի առանց հրամանի[3]։

Ասեմք առ այս.

Նախ. եթէ ունիմք ինքնիշխան կամք և տէր եմք գործելեաց[4] մերոց, առնել և ոչ առնել[5]։

---

1 Ա. և Տ. «յառաջիկայդ»։

2 Ա. և Տ. «Ութերորդ»։

3 Ա. «յաւետա»(րանին?), Ա. և Տ. տերև մի ի ծառոյ ոչ անկանի, և մազ մի ի գլխոյ ոչ պակասի առանց հրամանի։

4 Տ. «գործոց»։

5 Ա. Այլ երբեմն սկիզբն գործոյ ի մեզ է և կատարումն առ Աստ. և երբեմն սկիզբն ի մեզ, և կատարումն ի նախախնամութիւնն աստուծոյ։ — Տ. այլ երբեմն սկիզբն ի մեզ է և կատարումն ի նախախնամութիւնն աստուծոյ։ Ա. և Տ. Երբեմն սկիզբն յաստուծոյ է, և կատարումն առ

Դարձեալ. ասեմք թէ ոչ է բարի առանց Աստուծոյ ՛կամաց[1], եւ ոչ չար՝ առանց թոյլ տալոյ նորա։ Ա՛յն է որ ասէ, ՛մազ մի ի գլխոյ ձերմէ[2] ոչ պակասի. զի ոչինչ կարեմք առնել առանց կամաց[3] կամ առանց գիտութեան[4] կամ առանց թոյլ տալոյն Աստուծոյ։

՛Իններորդ[5]. ասեն՝ ընդէ՞ր ապա ասէ ինքն Աստուած. Ես եմ որ առնեմ զխաղաղութիւն եւ հաստատեմ զչար[6]։

Ասեմք առ այս[7]. եթէ կրկին է չար. է՛ չար գործոց եւ է՛ չար պատժոց։ Ա՛յլ արդ՝ չար գործոցն ոչ է Աստուծոյ, որպէս ցուցաւ. այլ չար

---

մեզ. եւ երբեմն երկուքին յաստուծոյ. այսինքն՝ սկիզբն եւ կատարումն։ Ա՛յլ արդ, որ սկիզբն եւ կատարումն է յաստուծոյ, աստուածային է ներգործութիւն եւ արարչական իր։ Իսկ որ սկիզբն եւ կատարումն ի մեզ, (Ա.) ներգործութիւնք չարին։ Իսկ որ (Տ. չունի «որ») սկիզբն յաստուծոյ եւ կատարումն ի մեզ, որպէս նախախնամութիւն ընտրելոցն յառաջ քան զլինելն աշխարհի, որ այժմ բարի գործովք կատարեցեն (Տ. կատարեցին), ըստ նախասահմանելոյն իւրեանց։ Իսկ որ սկիզբն ի մէնջ է (Տ. չունի՝ «է») եւ կատարումն (Տ. ի) խնամոցն աստուծոյ. որպէս (Տ. «այսինքն») յորժամ սկսանիմք զբարին, եւ նա աւարտէ ի բարին. եւ թէ սկսանիմք զչար. եւ նա փոխէ ի բարին, ըստ բարի նախախնամութեան իւրոյ (Տ. խնամոցն իւրոց)։

1 Ա. եւ Տ. «կամացն»։

2 Ա. եւ Տ. «ասէր. ոչ անկանի, եւ մազ մի ի գլխոյ»։

3 Ա. յաւելու «աստուծոյ»։

4 Ա. «գիտութեանց»։

5 Ա. եւ Տ. «իններորդ»։

6 Ա. եւ Տ. եւ սպանանեմ եւ կեցուցանեմ. եւ թէ Ես խաւարացուցանեմ (Տ. խաւարացուցից) զփրան փարատանի։

7 Ա. եւ Տ. նախ եթէ։

պատժոցն է ՙարդարութեան՚[1] Աստուծոյ, որ հատուցանէ արդարապէս։

Ութերորդ. ասեն ընդէ՞ր ապա ասէ Աստուած, Ես սպանանեմ եւ կեցուցանեմ, եւ թէ ես խստացուցանեմ զսիրտն փարաւոնի[2]։

ՙԼսեմք առ այս[3], թէ չորեքկին են հատուցմունք. բարի փոխանակ բարւոյ եւ չար փոխանակ չարի, որ է գործ արդարութեան։ Եւ բարի փոխանակ չարի, անպարտ ՙգթութեան եւ ողորմութեան՚[4] Աստուծոյ։ Իսկ չար փոխանակ բարւոյ ոչ առնէ, ըստ որում անիրաւութիւն է. այլ առնէ երբեք, ըստ որում նախախնամութիւն է. զի ի չարէն լինիցի բարի, թէպէտ մեզ չար երեւի. այլ այս եւս բարի է. որպէս հիւանդութիւն, փորձութիւն, եւ այլն։ ՙԱյսպէս է հաստատել չարին եւ խստացուցանել սրտին եւ այլոցն՚[5]։

ՙԻններորդ[6]. ասեն՝ ընդէ՞ր ասէ մարգարէն. ի գիրս քո ամենեքեան գրեցան։ Եւ Աւետարանն ասէ. Որդի մարդոյ երթայ որպէս եւ գրեալ է վասն նորա։ Ապա ուրեմն՝ ամենայն որ ի հարկէ գրոյն այնորիկ լինի՝ եթէ չար եւ եթէ բարի։

Լսեմք առ այս, եթէ կրկին ունի դէմս գիրն գոյութեան կենաց։ Մինն է արդարութեան այժմու կենացս, որ է փոփոխական, յորմէ

1 Ա. եւ Ց. արդարութեանն։

2 Տե՛ս էջ 75, ծան. 6։

3 Ա. եւ Ց. նախ եթէ։

4 Ա. եւ Ց. «գթութեանն եւ ողորմութեանն»։

5 Ց. «Այսպէս է հաստատել չարին, եւ խստացուցանել զսիրտն, եւ այլն»։

6 Ա. եւ Ց. «Տասներորդ»։

կարէ որ ընչիլ։ Նա միւսն է յաւիտենական, 'նախասահմանութեան[1] Աստուծոյ, յորմէ ոչ որ կարէ ընչիլ։ Արդ՝ ժամանակեա(յ) 'արդարութիւն[2] յոյանի է. 'որք[3] անձնիշխան կամօք 'փոփոխին[4] երբեմն ի չար եւ երբեմն ի բարի, եւ ժամանեն փրկութեան կամ դատապարտութեան։ Բայց 'նախասահմանութիւն[5] Աստուծոյ ճանաչէ զփրկեալսն եւ տայ զկերպ փրկելոցն, որով փրկին ընտ(ր)եալքն։ Իսկ մարդիկ անձնիշխան կամօք եւ գործովք 'հասանեն[6] այնմ 'փրկութեան[7] շնորհաց եւ փառաց։ Այս է գիր ընտրելոցն. եւ այսպէս է երթալն որպէս եւ գրեալ է վասն նոցա[8]։

Նոյնպէս եւ 'նախագիտութիւն[9] ճանաչումն է չարեաց. 'որք[10] անձնիշխան կամօք եւ գործովք խոտեցին չարքն։ Ապա յիմար են այնոքիկ որք ասեն թէ կամիմ ասել զհամոյն իմ. զի թէ 'ընտրելոցն եմ[11]. որպէս յիմար հիւանդն

---

1 Ա. «նախասահմանութեանն»․ Տ «նախասահմանումն»։

2 Ա. եւ Տ. «արդարութիւնն»։

3 Տ. «որ»։

4 Տ. «փոխի»։

5 Ա. «նախասահմանութիւնն»․ Տ. «նախախնամութիւնն»։

6 Տ. «հասանին»։

7 Տ. յաւելու «եւ»։

8 Ա. եւ Տ. Եւ այսպէս է ընտրելն եւ կոչելն եւ արդարացուցանելն, որպէս գրէ Առաքեալն։

9 Ա. եւ Տ. «նախագիտութիւնն»։

10 Ա. եւ Տ. «որ»։

11 Ա. եւ Տ. «յընտրելոցն եմ, փրկեցայց. եւ թէ (Տ. եթէ) ոչ. դատապարտեցայց»։

առիցէ. կամիմ ուտել եւ ՚ըմպել[1] զհաճոյսն իմ. Եթէ առողջանալոյ եմ, առողջացայց. եւ եթէ մեռանելոյ եմ, մեռայց։

՚Տասներորդ[2]. ասեն՝ թէ որպէս ի կենդանիս ուղղն խոհեմ եւ առատաքին ողջախոհ է, եւ այլ կենդանիք են ապուշք եւ բղջախոհք, այսպէս ի բնական առեղծուածս հոգւոյն. ումն խոհեմ եւ ումն անզգամ, ցանկասէր եւ ողջախոհ, բարեբարոյ եւ չարաբարոյ[3]։ Ապա ուրեմն յԱստուծոյ է չար եւ բարին։

Ասեմք առ այս.

Նախ. եթէ[4] առնէ Աստուած զումն խոհեմ եւ զումն ագէտ, զի նա՛ ի նմանէ ուսցի. նոյնպէս եւ չարաբարոյն, այսպէս եւ ցանկասէրն ի բարեացն ուղղեսցին. ապա թէ ոչ կամեսցին՝ յիրաւի պատժեսցին։

Դարձեալ ասեմք, թէ ըստ ինքեան ոգքա ոչ են չար, այլ՝ բարի. որպէս ագէտն ի մեղաց, եւ բարկութիւնն ընդդէմ չարեաց եւ ցանկացողն բարեաց. զի ըստ բնութեան գործելով ոչ որ մեղանչէ, ասէ փիլիսոփայն։ Ապա

---

1 Ա. "ըմպել."

2 Ա. եւ Տ. "Մետասաներորդ."

3 Ա. եւ Տ. լինին։

4 Ա. եւ Տ. ուշիմ եւ ապուշ եւ այլն ըստ կարգի. ապա եթէ ի մարմնոյ խառնուածոց պատճառաքն, եւ թէ (Տ. եթէ) բնական որակութեամբ հոգւոյն (Տ. հոգւոց) նման եւ աննման գոլ, առանց ներգործելոյ ոչ չար են եւ ոչ բարի. ոչ գով եւ ոչ պարսաւ հետեւի. որպէս եւ ոչ բնական բարուց անասնոց։

Դարձեալ ասեմք. եթէ։

ամենայն ինչ որ յԱստուծոյ է, բարի է եւ ոչ չար։

Դարձեալ ասեմք, թէ սոքայ ոչ են բնութիւնք ի Հոգին, այլ 'որակութիւն'[1] զանազան եւ աննմանութիւնք, որպէս պատկերք երեւացին։ Այլ արդ՝ Եդ Աստուած զուգա բնական 'որակութիւն'[2] ի մասունս Հոգոյն. Եդ եւ զանձնիշխան կամքն տէր եւ իշխան ի ներքս ի Հոգին, զի կառավարէ եւ առաջնորդէ Հոգոյն, զվատ որակն ի բարին ուղղել, եւ զբարին ի նոյն պահել եւ յաւելուլ. զի այս է գործ անձնիշխանին. ապա թէ զայս ոչ առնէ, անձնիշխան կամքն Հետեւի չարին եւ ոչ ի բնութենէ, զոր Աստուած բարի է ստեղծեալ։ Ապա ուրեմն չարն ոչ է յԱստուծոյ, այլ ի մէնջ, կամ՝ ի նենգութենէ թշնամոյն, որ պատրէ զմեզ։

'Եւ եթէ ասիցեն Ցածիկքն, եթէ[3] առնէ Աստուած որպէս զոմն աղքատ եւ զոմն մեծատուն, տէր եւ ծառայ, իշխան եւ իշխեցեալ, այսպէս առնէ զոմն արդար եւ զոմն մեղաւոր, չար եւ բարի, որպէս ասէ գիր. ԶԵսաւ ատեցի եւ զՅակոբ սիրեցի մինչ չեւ ծնեալ էին։ Ապա ուրեմն՝ զոմն չար եւ զոմն բարի ստեղծանէ։

Ասեմք առ այս.

Նախ. եթէ աղքատութիւն եւ մեծութիւն, տիրելն եւ ծառայելն է յԱստուծոյ. սակայն

---

1 Ա. եւ Ց. «որակութիւնք»։

2 Ա. «որակութիւնք», Ց. «որակութիւնն»։

3 «Երկաստուածանորդք». ասեն թէ»։

ումանց կամելով եւ ումանց ներելով այսինքն, զբարի մեծատունս եւ զաղքատս կամելով անէ՝ եւ զչարսն՝ ներելով եւ թոյլ տալով։ Այսպէս զարդարս եւ զմեղաւորս, զչարս եւ զբարիս, զոմանս կամելով անէ բարիս. եւ զոմանս թոյլ տալով անէ 'չարս[1]։ Այսպ ուրեմն ոչ են ի կամացն Աստուծոյ չարութիւնք եւ ոչ 'մեղք[2]։

Դարձեալ ասեմք. եթէ անէ Աստուած մեծատուն եւ աղքատ, տէր եւ ծառայ, եւ այլն, զի ի միմեանց օգտեսցին. եւ ի ձեռն տէրանց խնամէ զծառայս եւ զհնազանդեալս։ Այսպէս անէ զչարս եւ զմեղաւորս, զի (ի) ձեռն 'բարեացն[3] օգտեսցին եւ ի լաւութիւն գայցեն։ Խոկ զեղատն ատել եւ զՅակոբ 'սիրելն է այսպէս[4]. զի զընտրելան սիրէ եւ զխոտանեան անարգէ նախատես ճանաչմամբ։ Եւ ի բացայայտութիւն այսմ բանի ծանիր բստ օրինակի. որպէս արհգաւէն զամենայն լուսաւորէ, այլ պարզ նիւթն լուսաւորի եւ թանձրն՝ ոչ։ Նոյնպէս եւ Աստուած զամենայն մարդոյ փրկութիւն կամի, որք անձնիշխան կամօք հաւանական լինիցին Աստուծոյ՝ փրկին. եւ որք հակառակին կամօք, ոչ փրկին։ Այլ զի արեգակն անբանապէս տայ զլոյս, իսկ Աստուած՝ բանիւ եւ իմացմամբ ընտրէ զարժանիս եւ փրկէ, որպէս 'մարդիկք[5] զընտրելիս

---

1 Տ. «չարս».
2 Տ. «մեղքն».
3 Ա. եւ Տ. «բարեաց».
4 Ա. եւ Տ. «սիրել. Ս որպէս ցուցաւ ի վերոյ».
5 Ա. եւ Տ. «մարդիկ».

ընտրեն եւ ոչ զխտտելիս։ Եւ զի մարդոյ ճանաչումն է այժմ լու[1] ՚լինել[2] իւրն, այլ Աստուած ճանաչէ յաւիտենից եւ յառաջ քան զլինելն իւրն։ Եւ զի մարդոյ ճանաչումն ՚փոփոխի[3] ընդ իւրն, իսկ այն անփոփոխելի միայ։ Այսպէս է եւ նախասահմանումն Աստուծոյ եւ ՚յառաջընտրութիւն[4], եւ ոչ առնէ հարկ ի վերայ ումեք։

Եւ գիտելի է այս. եթէ նախասահմանութիւնն Աստուծոյ առնէր հարկ ՚գործոյ[5] մարդկան, չարի եւ բարւոյ լինէր բազում անպատշաճութիւն. ՚զորս[6] վասն բախտին ասացեալ եղեւ, զոր եւ աստ կարգեսցուք։

Նախ. զի ընդունայն ՚լինէին[7] խրատմունքն, բարեացն վարձ եւ չարեացն ՚պատիժ[8]։

Երկրորդ. անիրաւ լինէր հատուցմունքն. բարեացն բարիս եւ չարեացն ՚չար[9]։

Երրորդ. զի Աստուած լինէր պատճառ չարեաց մերոց։

Չորրորդ. անպիտան լինէր յոյսն եւ աղօթքն։

---

[1] Լու. այս ապագրումն առեալ [illegible] է քան թէ լինել. Հ.-ի մէջ [illegible] է, իսկ երկրորդը՝ ընդ. Ա.-ի մէջ երկուքն ալ են. իսկ Տ.-ի մէջ՝ ընդ.

[2] Տ. «լինիլ»։

[3] Ա. «փոփոխեսցի»։

[4] Տ. «յառաջընտրութիւնն»։

[5] Տ. «գործոց»։

[6] Տ. «որս»։

[7] Ա. «լինին»։

[8] Ա. «պատիժն», Տ. «պատիժս»։

[9] Տ. «չարիս»։

Հինգերորդ. զի խափանեալ լինէր ՚անձն-իշխանութիւն մեր[1], որ ունի զինչն առ ՚երկուսեան[2] կողմն.

Վեցերորդ. զի ոչ ՚բարեգործքն[3] լինէին գովելի. եւ ոչ չարքն պարսաւելի.

Եւթներորդ. եւ ոչ լինէին մարդկային կամ աստուածային առաքինութիւնք.

Ութերորդ. ընդ վայր ՚լինէին[4] ուսմունք եւ յորդորմունք ի բարիս, ՚որով[5] փախչիմք ՚ի չարէ[6] եւ հաւանիմք ՚բարւոյ[7].

Իններորդ. ՚աւելորդ[8] էին դժոխք եւ արքայութիւն, որք տեղիք են չարեաց եւ բարեաց.

Տասներորդ. զի սուտ լինէին ամենայն օրէնք ընական[9], բանական[9] գրաւորական եւ աւետարանական. զի այսքա ամենեքեան խրատեն զմեզ խոտորիլ[10] ի չարէ եւ առնել զբարի, եւ այլն ամենայն.

Այսքան ընդդէմ նոցա, որք յԱստուծոյ ասեն ՚զբարիս եւ զչարս[11].

---

1 Ա. եւ Տ. «անձնիշխան կամքն».
2 Ա. «երկուացն».
3 Ա. «բարի գործքն».
4 Ա. եւ Տ. «էին».
5 Ա. եւ Տ. «որովք».
6 Տ. «ի չարէն».
7 Տ. «բարւոյն».
8 Ա. եւ Տ. «ունելորդք».
9 Ա. եւ, եւ.
10 Ա. «խոտորել».
11 Ա. «զչարս եւ զբարիս».

[ԸՍՏ ԴԼԱԻԽԸ Մ. ՁԵՌԱԳՐԻ ՀԱՄԵՄԱՏ]

—

*Որք գլուխ են գլխոյ:*

Իսկ ասեմք յաւելումն ևս յամփոփշտութիւն, իբր փաղչելով ի ձախոյն, խոտոր(ին) ի յաջ կողմ. ասելով թէ պատճառն ամենայն բարեաց և չարեաց մերոց ոչ մեք, այլ է տացին պատճառն աստուած. և զայս ասեն նոր հեթանոսք, որք են Տաճիկք. փաղչելով յառաջասացեալ բանսէ և ճակատագրէ, և փոխանակ նոցա յառաջին պատճառն վերագրեն զհարկն, զի մի լիցի(ն) երկու աստուածք, չար և բարի, ըստ Մանիքեայ, այլ մի և նոյն է պատճառ երկոցունցն, ասեն:

Այլ մեք՝ զասք ճշմարտախօսութեան, հետևողք ուղղութեան, ընդդիմանամք այսմ՝, ասելով թէ Աստուած ոչ է պատճառ չարեաց, այլ միայն բարեաց:

Նախ. զի բարին էութիւն է. ուստի յայտ է զի հակադարձին առ միմեանս. զի ամենայն որ բարիէ է, է. և ամենայն որ է է բարի է. իսկ չարն ոչ էութիւն է: Արդ՝ Աստուած պատճառ էութեան է, և ոչ է ոչ էութեան. այլ՝ չարն ոչ է յԱստուծոյ:

Նախ. ասեմք առ այս. եթէ չարն յԱստուծոյ է, սիրէ զչարն, սիրէ և զչարագործն, որ է պատճառ չարեաց. այսինքն՝ զսատանայ. զի սա-

տանայ տանջելոց է, որ պատճառ չարեաց։ Ապա ուրեմն՝ ոչ է չարն յԱստուծոյ։

Երկրորդ. եթէ չարն յԱստուծոյ է, կարութեամբ առնէ. թէ անկարութեամբ, ահա բռնադատեալ է. եւ եթէ կարողութեամբ առնէ զչարն, անկար է առնել զբարին։

Երրորդ. թէ չարն յԱստուծոյ է, ինքն բարի է (եւ) առնէ զչարն, թէ չար է որ առնէ զչարն, ահա հակառակ գործէ ինքեան. իսկ թէ չար, եւ առնէ զչարն, ոչ որ է յէակս բարի։

Չորրորդ. թէ չարն յԱստուծոյ է, սկիզբն ամենայնի Աստուած է բարեաց եւ չարեաց. ապա ոչ է սկզբնաչարն՝ առաջին գտանել չարեաց, սատանայ, որպէս նոքա բարբանջեն։

Սակայն բեր զառարկութիւնս նոցա տեսցուք, զեղծումն նոցա յարմարեսցուք։

Որ եւ առարկեն. Նախ. Նա (Աստուած) եթէ պատճառ է հարկաւոր եւ ներգործութեան[1] նորին. այլ արդ՝ Աստուած է պատճառ ամենեցուն եւ հարկաւոր. ապա ուրեմն եւ ներգործութիւն նորին է հարկաւոր։

Ասեմք առ այս. եթէ կրկին է պատճառն, մերձ եւ հեռի։ Այլ արդ՝ մերձ պատճառն է հարկաւոր եւ ներգործութիւնն իւր. իսկ հեռին ոչ է հարկաւոր։ Այլ Աստուած, պատճառ ամենեցուն, ոչ մերձաւոր, այլ հեռաւոր. վասն որոյ ոչ է պատճառ ներգործութեան նորին չարեաց։

Երկրորդ. ասեն թէ Աստուած նախ քան զստեղծանելն մեր, ի նախատեսութիւնն իւր եթէ

[1] Ա. եւ Ց. Ներգործութիւն։

ոչ (պէտք է ըլլայ՝ նոյն) զամենայն նոյնպէս լինել. զչարն չար եւ զբարին բարի։ Այլ արդ՝ հարկ է ամենեցուն գոլ այնպէս որպէս Աստուած եանես եւ գիտաց։

Ասեմք առ այս, թէ զոր աւրինակ արուեստաւոր որ գործէ սայլ եւ հեռաւոր տեսանէ որ զնայ զոր գործէ. այլ ոչ թէ տեսութիւնն հարկեաց զսայլն լինել նոյնպէս, այլ կամք արհեստաւորին։ Նոյնպէս եւ տեսութիւնն Աստուծոյ, որ (պէտք է ըլլայ՝ ոչ) հարկէ ի վերայ մեր գործել զբարի կամ զչար, այլ կամք մեր։

Երրորդ ասեն եթէ կամքն Աստուծոյ ոչ է ընդունայն, եւ ոչ որ կարէ կալ ընդդէմ կամացն Աստուծոյ. վասն որոյ զոր ինչ կամի առնէ, զոմն բարի եւ զոմն չար։

Ասեմք առ այս, եթէ կամացն Աստուծոյ ոչ ոք կայ ընդդէմ, որպէս եւ կամի, եւ նոյնպէս առնէ. այլ չար ոչ կամի եւ ոչ առնէ։

Չորրորդ ասեն՝ գործոնայք չարին է յԱստուծոյ, որպէս կամքն, այսպէս եւ չարն է յԱստուծոյ, զի նա ստեղծ զկամքն։

Առ այս ասեմք՝ եթէ Աստուած ստեղծ զկամքն բարի եւ զբարին եդ առաջի կամել եւ առնել. իսկ նա անձնիշխան կամաւք հեռացեալ ի բարւոյն, գտաւ (եղ) եւ չարին. զի չարն ոչ այլ ինչ է բայց հեռացումն ի բարւոյն։

Դարձեալ ասեմք. եթէ Աստուած ստեղծ զկամքն, նաեւ զհեշտանս եւ զմարդիկ ի բարին. եւ կամի զբարին, եւ բռնադատէ գործել զբարին։ Ուստի յայտ է զի սերմանեաց ի բնութիւն

զբարին, եւ ուրէնս եդ բարւոյ. այլ եւ խրատ եւ յորդորումն պարգեւք բարեաց. իսկ զչարն ոչ կամի, եւ ոչ բռնադատէ սիրել, այլ տանջանս եւ պատիժ եդ գործողացն զչարն։

Հինգերորդ. տեսն՝ թէ չարն յԱստուծոյ չէ, վասն էր ներէ չարեաց, եւ սատանայի եւ չար մարդկան։

Լուծումն առ այս. եթէ չարն ոչ է յԱստուծոյ, որպէս բարին. զի բարին ըստ կամաց է. իսկ չարն՝ թոյլ տալով. եւ այլ է ըստ կամացն, որ յաւժարութեամբ է, եւ այլ է թոյլ տալովն, որ իւր ոչ է ի կամաց։

Դարձեալ թոյլ տալ եւ ներգործել (պէտք է ըլլայ՝ ներել) չարաց՝ վասն բարոյ է. զի նախախնամութեամբ բազում բարիս յառաջ ածէ ի չարէ. որպէս՝ սատանայի թոյլ տայ զի փորձեսցեն զբարիքն, եւ աւելցին ի պսակն։ Նոյ եւ մարդկան չարաց թոյլ տայ կամ զի ընտրեսցեն զբարին կամ յետոյ զղջասցին, եւ պէսպէս նախախնամութեամբ, որպէս ինքն գիտէ Աստուած ներէ չարեացն։

Վեցերորդ. տեսն՝ այս ընդէ՞ր ասէ ինքն Աստուած թէ Ես եմ որ առնեմ զխաղաղութիւն եւ Հաստատեմ զչարս. Ես սպանանեմ եւ Ես կեցուցանեմ. եւ եթէ Ես խստացուցի զսիրտ փարաւոնի։

Լուծումն առ այս, եթէ կրկին է չար. է չարեաց (պէտք է ըլլայ՝ չար գործոց), է չար պատժոց. Այլ արդ՝ չարեաց (չար գործոցն) ոչ է յԱստուծոյ. եւ չար պատժոցն է յարդա-

րութեանն Աստուծոյ, որ հատուցանէ արդարապէս:

Եւթներորդ. ասեն՝ ի գիրս քո ամենեքեան գրեցան: Եւ Աւետարանն. Որդի մ՚րդոյ երթա, որպէս եւ գրեալ է վասն նորա: Այս ուրեմն ամենայն որ ի հարկէ գրոյն այնորիկ լինին եթէ չար եւ եթէ բարի:

Ասեմք առ այս. եթէ կրկին ունի դէմս գիրն դպրութեան կենաց. մինն՝ արդարութեան այժմու կենացս, որ է փոփոխական, որմէ որ ջնջել (պէտք է ըլլայ՝ յորմէ կարէ որ ջնջիլ). եւ միւսն յաւիտենական նախասահմանութեանն Աստուծոյ, յորմէ ոչ որ կարէ ջնջել: Արդ՝ ժամանակեայ արդարութիւնն յայտնի է, որք անձնիշխան կամաւք վարին, փոփոխին երբեմն ի չար եւ երբեմն ի բարի, եւ ժամանեն փրկութեան կամ դպրութեան[1]. բայց նախասահմանութիւնն Աստուծոյ ծանուցէ զփրկեալսն, եւ առ զկերպ փրկելոցն, որով փրկին ընտրեալքն. խոկ մարդիկք անձնիշխան կամաւք եւ գործոք հաստատեն (պէտք է ըլլայ՝ հաստանեն) յայնմ փրկութիւն շնորհաց եւ փառաց: Այս է գիր ընտրելոցն. եւ այնպէս է երթալն որպէս եւ գրեալ է վասն նոցա. եւ այսպէս է ընտրեալն (պէտք է ըլլայ՝ ընտրելն) եւ կոչելն եւ արդարացուցանելն, որպէս եւ գրէ Առաքեալն: Նոյնպէս եւ Նախագիտութեան ծանուցումն չարեաց[2], որք անձնիշխան կամաւք եւ չար գործովք խառնեցին չարքն.

---

1 Ր. եւ Ց. դատապարտութեան:

2 Ա. եւ Ց. Նախագիտութիւնն ծանուցումն է չարեաց:

ապա յիմար են այնոքիկ որք ասեն թէ կամիմ անել զհաճոյս իմ, զի թէ ընտրեսցեն եմ փրկեցայց եւ ոչ դատապարտեցայց. որպէս յիմար հիւանդն ասիցէ՝ կամիմ ուտել եւ ըմպել զհաճոյսն իմ, եթէ առողջանալոց եմ առողջացայց, եւ եթէ մեռանելոց եմ մեռայց։

Իսկ ի բացայայտութիւն այսմ բանի, ծանիր ըստ օրինակի. որպէս արեգական զամենայն լուսաւորէ, այլ պարզ նիւթն լուսաւորի եւ թանձրն՝ ոչ, նոյնպէս եւ Աստուած զամենայն մարդոյ փրկութիւն կամի, որք անձնիշխան կամաւք հաւանական լինին (ն. կամ՝ լինիցին) Աստուծոյ՝ կրկին (պէտք է ըլլայ՝ փրկին) եւ որք հակառակին ոչ փրկին։ Այլ՝ արեգական բաժանիլ (պէտք է ըլլայ՝ անբաժանական) տայ զլոյսն, իսկ Աստուած՝ բանիւ, խնայմամբն տար (պէտք է ըլլայ՝ ընտրէ) զարժանիս, եւ փրկէ, որպէս մարդիկ զընտրեալս ընտրեն եւ ոչ զխոտեալս։

Մ. էջ 33բ—36։

Գ.

*Երրորդ մոլորութիւն Այլազգեաց*[1]։

Այլք ուրանան զմարդեղութիւն բանին. եւ առարկեն նախ այսպէս, եթէ Աստուած ոչ է մարմին, եւ ոչ զօրութիւն ի մարմնի, եւ ոչ փոփոխելի. արդ՝ եթէ մարդ եղեւ՝ փոփոխելի է։

---

[1] Ենթադրուի ի յԵրրորդ գլուխն, որ ուրանան զմարդեղութիւն բանին։ Առարկեն, եւ այլն։

Պատասխանեմք. եթէ Աստուած բանն մարդ եղեւ անփոփոխելի. զի ոչ շփոթեցաւ բանին 'բնութիւն'[1] ի մարդկայինս, եւ ոչ 'մարդկութիւն'[2] այլայլեցաւ ի բանին բնութիւն. վասն զի անփոփոխ է աստուածային 'էութիւն'[3]։ Որպէս հոգի միաւորի ընդ մարմնոյ եւ լինի մարդ. եւ ի հոգի գոլոյն ոչ փոփոխի։ Զի անմարմինն թէպէտ միաւորի, ոչ փոփոխի ի 'մարմին'[4]։

Դարձեալ ասեն. թէ անպարագրելի բանն մարմին եղեւ. կամ՝ մասն բանին մարմին եղեւ. կամ՝ մարմինն անբովանդակելի 'ընդ'[5] բանին։

Ասեմք թէ բոլոր եւ կատարեալ բանն ի մարմնի պարագրեցաւ եւ մնայ անբովանդակելի. եւ մարմինն ընդ բանին միաւորեալ՝ մնայ պարագրելի. զի ի մարմին գոլոյ 'այլայլեցաւ'[6] որպէս բանն ի գիր միացեալ եւ խօսք մարդոյ ի բազում լսելիս կատարեալ եւ բոլոր պարագրելի։

Դարձեալ ասեն. որ ինչ ի վերայ գայ ումեք յետ կատարելութեան նորին, պատահումն է 'նմա'[7]. ապա եւ մարմինն բանին պատահումն է։

Ասեմք առ այս. եթէ բանն Աստուած էառ 'զմարդկային բնութիւնս'[8], զի լինիցի ճշմարիտ

---

1 Ա. բնութիւնն։
2 Ա. մարդկութիւնն։
3 Ա. էութիւնն։
4 Ա. մարմինն։
5 Ա. ըստ։
6 Ա. ոչ այլայլեցաւ։
7 Ա. նմին։
8 Ա. զմարդկային բնութիւն։

մարդ. այլ մարդ լինելն է ՙսեռ գոյացութեան եւ ոչ սեռէ պատահման[1]։

Դարձեալ ասեն. անարժան է ՙբնակելն[2] Աստուծոյ յարգանդի եւ աղծատանք. եւ բազումք գայթակղին եւ մոլորին զայս լսել։

Ասեմք. թէ ոչ է անարժան. զի ստեղծողն ի ստեղծուածն բնակեսցէ. որպէս շինողն ի շինուածն իւր։ Իսկ աշա յերկինս բնակէ Աստուած, եւ զամենայն տեղիս լնու եւ յամենայն մարդկան միտս է։ Նոյնպէս եւ ի սուրբ արգանդ [կուսին] բնակեցաւ[3] եւ ոչ է աղծատանք թէ նախատինս ի պատկերն ՙբնակեսցէ[4]. զի զոր ձեռօքն ստեղծ, ոչ գարշի անձամբ բնակիլ ի նմա։ Իսկ թէ բազումք ՙմոլորին եւ գայթակղին[5]. ի չարութենէ եւ ի հպարտութեանց է, որ ոչ հաւատան Սուրբ Գրոց, եւ ոչ կամին ճանաչել ՙզճշմարտութիւն[6]. եւ աշա ի ստեղծմանէն բազում մոլորութիւնք եղեն յաշխարհի։

Դարձեալ ասեն. որպէս ՙբարութիւն[7] ոչ միաւորի ընդ չարի, այնպէս մեծ ՙկարողութիւն[8]

---

1 Ա. ի սեռէ գոյացութեան եւ ոչ ի սեռէ պատահման։

2 Ա. բնակիլն։

3 Ա. նոյնպէս եւ ի սուրբ արգանդն կուսի: — Մեր օրինակին մէջ ՙկուսին, վերջին գրուած է տողին վրայ։

4 Ա. բնակէ։

5 Ա. գայթակղին եւ մոլորին։

6 Ա. զճշմարտութիւնն։

7 Ա. բարին։

8 Ա. կարողութիւնն։

Աստուծոյ ոչ միաւորի ընդ տկարութեան մար-
դոյս[1]:

Սակայն թէ տկարութիւն մարդկայինս բնու-
թեան ոչ նուազեցոյց զմեծ 'կարողութիւն[2]
Աստուծոյ. զի առանց շփոթման միաւորեաց
'զմարդկային[3] բնութիւն ընդ իւրում 'աստուա-
ծութեան[4]. այլ տկար բնութիւնս մեծացաւ միաւո-
րութեամբն. զի ի մեղաց անմեղ, անմահ 'եւ[5]
անապական եւ Աստուած եղեւ: Եւ 'տկարու-
թիւն[6] ոչ է նման չարութեան. զի չարութիւն
զրկեալ է ի վախճանէն, այլ 'տկարութիւն[6] ոչ:

'Դարձեալ ասեն. մեծ է ողորմութիւն Աս-
տուծոյ քան զարդարութիւն. պարտ էր ողորմու-
թեամբ քաւել եւ ոչ մարդ լինել եւ չարչարել[7]:

Սակայն թէ ոչ վայելէր 'ողորմութեան[8]
Աստուծոյ առնել ընդդէմ արդարութեան, այլ
լինել ի միասին. վասն այնորիկ վճարեաց զպարտս
ըստ 'ողորմութեան[8] եւ կրեաց զպատիժս ըստ
արդարութեան:

---

1 Ա. ի մէջ այսպէս է նախադասութեանց կարգը. 'Դարձեալ մեծ է ողորմութիւնն Աստուծոյ քան զարդարութիւնն. պարտ էր ողորմութեամբ քաւել եւ մարդ լինել եւ չարչարել: Սակայն ոչ այս, եթէ տկարութիւնս մարդկայինս բնութեան, եւ այլն:

2 Ա. կարողութիւնն:

3 Ա. զմարդկայինս:

4 Ա. աստուածութեանն:

5 Ա. 'եւ, պակասէ յԱ.Ն:

6 Ա. տկարութիւնն:

7 Ա. 'Եւ այնմ որ ասեն. ողորմութիւնն մեծ է քան զարդարութիւնն,: Հմմտ. նախորդ ծանօթութեան հետ:

8 Ա. ողորմութեանն:

Դարձեալ ասեն. կարող էր Աստուած կամելով միայն փրկել զմարդ. կամ այլ ինչ ստեղծուածով վճարել զպարտս մարդկան։

Ասեմք թէ կարող էր Աստուած կամելով փրկել. այլ պատշաճ էր Աստուծոյ մարդ լինել. զի 'սէրն'[1] նորա երեւեսցի ի մեզ. այլ եւ զօրն արդարութեան ցուցցի։ Եւ զի ոչ այլ ինչ ստեղծուածով վճարեաց 'զպարտս'[2] մարդկան. զի ամենայն ստեղծուած ունի զօրութիւն հանաւոր. իսկ վճարել զպարտս մեղացն պիտոյ էր անհունն զօրութիւն։ Եւ դարձեալ. զի մի ստեղծուածոյ ինչ շնորհակալ եւ պաշտօնատար լիցուք. այլ Աստուծոյ 'փրկչի'[3]։

Դարձեալ ասեն. թէ Քրիստոս բաւականապէս վճարեաց զպարտս, անիրաւ երեւի. զի դեռ եւս կրեն մարդիկ 'զպատիժս'[4], նաեւ ոչ էր պիտոյ վասն մեղաց աղօթք, ողորմութիւն եւ այլն։

Ասեմք առ այս. եթէ Քրիստոս բաւականապէս վճարեաց զպարտս եւ եբարձ զմեղս, եւ մնաց պատիժքն, զի 'չարչարակից լիցուք Քրիստոսի եւ փառացն հաղորդեսցուք։ Նաեւ թէ հաւատացեալքն ի Քրիստոս լինել էին անչարչարելի ի կեանս յայս, վասն մարմնոյ բարութեանն առնուել քան թէ վասն 'Հոգեւորին'[5]

---

1 Ա. սէր։
2 Ա. զպարտս։
3 Ա. փրկչին։
4 Ա. պատիժս։
5 Ա. քան Հոգեւորին։

հաւանեալ էին հաւատացեալքն Քրիստոսի. յայնժամ եւ ոչ լինէր հաւատոյն վարձ։ Իսկ թէ պիտոյ է վասն մեղաց բարեգործութիւնք։ Ասելն է թէ մահն Քրիստոսի է պատճառ փրկութեան ընդհանրական, որպէս մեղք առաջին մարդոյն էր ընդհանրական պատճառ դատապարտութեան։ Այդ՝ որպէս մահն Ադամայ հասանի առ իւրաքանչիւր ոք[1], որ փրկին ի ձեռն վերստին ծննդեան աւազանին բարի գործովք։

Դարձեալ ասեն. մեղքն 'մեղք[2] ոչ սրբի, այլ առաւելու. այլ ապաւինեալքն զՔրիստոս բազումք մեղանչեցին։

Ասեմք թէ մահն Քրիստոսի էր վճարող մահու մեղաց մարդկան։ Իսկ զի ընական մահն էր վասն սկզբնական մեղացն, իսկ վասն ներգործական մեղացն, որ էր կամաւոր, պարտ էր մեռանել բռնադատական մահուամբն։ Վասն այսորիկ Քրիստոս մեռաւ վասն սկզբնական 'մեղացն[3], եւ բռնադատութեամբ ի ձեռն այլոց՝ վասն կամաւոր 'մեղաց[4]։ Իսկ զի ոմանք մեղանչեցին ի մահն Քրիստոսի, 'ոչ էր ինչ[5] պատճառ ի կողմանէ նորա, որպէս առէ Աստուած, ընդ իս 'է[6] թշնամութեամբ ի տարապարտուց։

---

[1] Ա. ունի լուսանցքի վրայ. 'Ծնընդեամբ. որպէս մահն Քրիստոսի պարտ է հասանել առ իւրաքանչիւր ոք։

[2] Ա. մեղքն։

[3] Ա. մեղաց։

[4] Ա. մեղացն։

[5] Ա. ոչինչ էր։

[6] Ա. պակասէ „Ա.Ն.։

Դարձեալ ասեն. մեղք ջնջի ապաշխարութեամբ, որպէս դուք ասէք. ապա 'էր'[1] պիտոյ Աստուծոյ մարդանալ։ Եւ դարձեալ. գործ 'մարմնաւորութեան'[2] մեծ էր քան զգործ ստեղծանելոյն. ապա որպէս ի ստեղծանելն ամենայն մարդիկ ստեղծան. նոյնպէս ի 'մարմին'[3] լինելն ամենայն մարդիկ պարտին փրկիլ. այլ այս ոչ է եղեալ։

Պատասխանեմք առաջնոյն. թէ 'ապաշխարութիւն'[4] եւ այլ բարի գործք ոչ կարեն ջնջել զմեղս, թէ ոչ 'լինի'[5] հիմնացեալ հաւատով ի վերայ չարչարանացն Քրիստոսի։ 'Առ'[6] միւսն ասեմք. թէ ոչ է պատճառն ի կողմանէ Աստուծոյ, որ ամենեքեան ոչ փրկին, այլ յինքեանց։ Զոր օրինակ. թէ ոք ի տիւն զակն իւր խփէ ի խաւար մնայ, ինքն է 'պատճառ'[7] եւ ոչ արեւն։ Եւ որպէս ի զուգաւորութենէ արուին եւ իգին ոչ միշտ ծնանի զաւակ, եւ այս ոչ ի կողմանէ ստեղծողին, որ ասաց Աճեցէք եւ բազմացարուք. այլ ի պակասութենէ առնողին կամ կրողին նիւթոյն։

Դարձեալ ասեն. թէ 'մարմին լինելն'[8] բանին էր պատճառ փրկութեան մարդկան, պարտ

1 Ա. ոչ էր։
2 Ա. մարմնաւորութեանն։
3 Ա. մարմինն։
4 Ա. ապաշխարութիւնն։
5 Ա. լինին։
6 Ա. Եւ առ։
7 Ա. պատճառն։
8 Ա. մարմինն լինել։

էր լինել ի սկզբանէ աշխարհի. զի առաջինքն փրկեալք էին։ Եւ դարձեալ ասեն. մեզ Հրեշտակաց եւ մարդկան էին ի միոյ սեռի. այլ ինքն՝ հպարտութեան եւ զՀրեշտակս ոչ փրկեաց, նաեւ ոչ էր պարտ զմարդիկ փրկել։

Ըստ այնոյն ասեմք. եթէ թողու մարդկան երկայն ժամանակս ի բնական օրէնքն եւ անկաւ ՚յանարգ մեղս[1]. Նա՛ եւ ետ գրաւորական օրէնք, զի խորշեսցին ի մեղաց. եւ ոչ այնու արդարացան. եւ ապա եկն շնորհաց օրէնքն, զի ճանաչեսցուք զփրկութիւն ի Քրիստոսէ եղեալ։ Եւ դարձեալ, որպիսութիւն մարդկայն կենաց ոչ առ ժամայն ի կատարումն հասանէ. որպէս մանկունք նախ վարժին փոքրագոյն ուսմամբ, նոյնպէս անպատշաճ էր նախ զմեծամեծ պատուիրանս տալ մարդոյս. այլ զփոքունս, զի սովորեսցի անկատար ուսմամբ, եւ ապա ի կատարեալ օրէնս հասցէ։ ՚Երկրորդ[2] ասեմք. թէ Հրեշտակք ոչ կարէին նորոգիլ. այս է պատճառն զի ՚ընդարութիւն[3] հեռու ի կարծեացն։ Եւ Հրեշտակք անփոփոխելի իմանան եւ կարծեն. վասն այսորիկ անփոփոխապէս ընտրեն ՚զչար կամ զբարի[4]. յաղագս որոյ անդրէն մնացին։ Եւ դարձեալ, Հրեշտակի իմանալարար կարեն ուսանել. իսկ մարդն կարօտ է ուսանել զգալապէս։ Եւ դարձեալ, Հրեշտակաց մասն կորեաւ եւ բոլորն մնաց. իսկ

1 Ա. յարգանդէ ի մեղս։
2 Ա. Երկրորդին։
3 Ա. ընդարութիւնն։
4 Ա. զչարն կամ զբարին։

թէ զմարդն ոչ էր փրկելոյ, բոլորն էր կորուսանել։ Զայս եւ այնպիսիս հեթանոսք ՚հակառակին[1] ընդ սուրբ ՚Եկեղեցիս[2]։

Այժմ դարձեալ մեք ցուցցուք. զի պատշաճ էր Բանին մարդ լինել։ Եւ զի մարդեղութիւն Բանին յայտնի է ի Սուրբ Գիրս. այլ նոքա ոչ հաւատան։ Վասն որոյ բանական իմացմամբ ցուցցուք։ Նախ զի բնութեամբ է ՚մարդոյ[3] սիրել զԱստուած։ Եւ յայտնի է. զի մոլորեցաւ զհետ զանազան սուտ աստուածոց. վասն որոյ Աստուած մարմնացաւ եւ երեւեցաւ. զի ծանիցուք զմին եւ զճշմարիտ Աստուած։ Դարձեալ. կամեցաւ առաջին մարդն աստուածանալ եւ ոչ կարաց ի կատարումն. յաղագս որոյ Աստուած մարդ եղեւ եւ աստուածացոյց զնա։ Դարձեալ. չարախօսէր սատանայ. եթէ բնութեամբ չար եւ մեղանչական է մարդն. Աստուած մարդ եղեւ եւ եցոյց անմեղ եւ բարի ՚զբնութիւն[4], ի բարի արարչէն եղեալ։ Դարձեալ. նա որ շնորհօք իւրովք արար, ողորմութեամբ իւրով ՚եւ[5] փրկեաց։ Դարձեալ. որպէս Աստուծոյ իւր է ստեղծանելն, այսպէս ՚նորա է[6] նորոգելն եւ փառաւորելն։ Ստեղծեաց յոչընչէ եւ նորոգեաց յապականութենէ, եւ ի վախճանի փառաւորեսցէ։ Դարձեալ. ինքն արարիչն եհաս վճիռ եւ զա-

1 Ա. Հակառակէին։

2 Ա. Եկեղեցի։

3 Ա. մարդոյս։

4 Ա. զբնութիւնս։

5 Պակասէ յԱ.ն։

6 Ա. Նորա իւր է։

տապարտեաց զԱդամ. վասն որոյ ինքն մարմնացաւ եւ չարչարեցաւ, եհատ զվճիռն եւ ազատեաց զՆա։ Դարձեալ. սէր Նորա եւ ամենիմաստ ‘գիտութիւն[1] երեւեցաւ. զի թէ ոչ էր մարդացեալ, ասէին թէ չկարէր, կամ ոչ կամէր, կամ ոչ գիտէր. եւ երեւի յայսմանէ ակարութիւն, ագիտութիւն կամ նախանձ, որ կարի իմն անպատշաճ է Աստուծոյ։ Դարձեալ. սատանայ յաղթեաց մարմնոյն, եւ Աստուած նովին մարմնով յաղթեաց յաղթողին. եւ է այս գործ արդարութեան։ Դարձեալ. զի ուսուցէ յաղթել դեւին, մանաւանդ արդարութեամբ քան ‘հզօրութեամբ[2]։ Դարձեալ. զօրացաւ մահ ի մարդկային բնութիւն. վասն որոյ անմահն Աստուած մարդ եղեւ եւ անմահացոյց զերկոսին։ Յաղագս այսոցիկ եւ աւելի քան զայս, ‘Բանն[3] էառ զմարդկային բնութիւն եւ երեւեցաւ մարդ ի մէջ աշխարհի եւ փրկեաց զմեզ։

Այլ թէ ասիցէ Տաճիկն, թէպէտ հաւանեցաք այսմ, սակայն Հայր եւ Որդի ‘անել[4] անպատշաճ լսի։ Ասեմք ‘թէ[5] Մովսէսի Թաւրէթն զարարածս ամենայն ծնունդ եւ արարած, ասէ. Աստուծոյ Դարձեալ ասէ վասն մարդկան. Այս ինքն է Հայր քո, որ արար եւ ծնաւ զքեզ։ Եւ դարձեալ ասէ Որդի անդրանիկ իմ ‘է[6] Իսրայէլ,

1 Ա. գիտութիւնն։
2 Ա. հզօրութեամբ։
3 Ա. Աստուած բանն։
4 Ա. ասել։
5 Ա. եթէ։
6 Պակասէ յԱ-ն։

սիրեցի զնա։ Եւ Դաւիթ ասէ. Ես ասացի թէ աստուածք իցէք կամ որդիք բարձրելոյ ամենեքեան։

Եւ եթէ արարածոց եւ մարդկան Հայր կոչի Աստուած, վասն զի ի նմանէ ստեղծան, զի՞նչ անպատշաճ է Քրիստոսի Հայր կոչել զնա, որ ի բնութենէ Հօր ծնաւ նախ քան զյաւիտեանս, որպէս ասէ Դաւիթ. Յառաջ քան զյաւիտեանս ծնայ զքեզ։ Եւ վասն մարմնոյ ՚միութեան[1] զի՞նչ է օտար, եթէ զճառագայթս արեւու, որ ի յոյս է միացեալ, ասեմք եթէ ծնունդ է արեգականն, կամ զբանս որ ի գիրս է միաւորեալ, ասեմք ՚եթէ[2] ծնունդ է մտացն։ Նոյնպէս եւ Բանն Հօր, յարենէ կուսին, իւր մեղան միաւորեալ եւ ՚մարմնոյն[3] երեւեալ։ Եւ ինքն Հայր Աստուած ի Յորդանան ՚գետն[4] վկայեաց ի վերայ մարմնացեալ Բանին. Դա է որդի իմ սիրելի։ Եւ ինքն փրկիչն ասէր. Ելի ի Հօրէ եւ եկի յաշխարհ. դարձեալ թողում զաշխարհ եւ երթամ առ Հայր։ Արդ՝ եթէ դու զԱստուած հաւատաս, զԱստուծոյ բանն ընդէ՞ր ուրանաս, եւ ոչ ասես Հայր եւ Որդի։ Զի ինքն Հայր Աստուած վկայեաց, եւ Որդին յայտնեաց ՚եւ դժուար լսես[5]. եւ մարգարէքն յառաջագոյն ուսուցին ՚եւ ոչ հաւատաս[5]։

1 Ա. միութեանն։
2 Ա. թէ։
3 Ա. մարմնով։
4 Ա. գետ։
5 Պակասի յԱ.ն։

Եւ դարձեալ ասեմ ի կարճոյ. զժուար լսել թէ Քրիստոս՝ Որդի 'է Աստուծոյ[1]. ապա դու ցո՛յց ինձ թէ ո՞վ է ի յերկրի Հայր Քրիստոսի. ապա թէ չկարես ցուցանել, հաւատայ Աստուծոյ Հօր, որ ասաց. Դա՛ է որդի իմ 'սիրելի[2]. կամ հաւատա՛ Քրիստոսի, որ ասաց Աստուծոյ որդի եմ, 'ըստ այնմ. դու հաւատա՞ս յՈրդին Աստուծոյ։ Ահա՛ յայտնապէս վկայութիւն ի Սուրբ Գրոց ասացեալ, Աստուած եւ Որդի Աստուծոյ Այսքան առ այս[2]։

Դ.

*Չորրորդ մոլորութիւնք 'Ալազգեաց[3]:*

Որք զՔրիստոս՝ Աստուած ոչ խոստովանին, այլ մարդ եւ փնղամբար. այսինքն՝ մարգարէ։ Որք, ընդդէմ լուսոյն ճշմարտութեան զակն հաւատոյ խցեալ, ի խաւարի մնան եւ ի յաւիտենից փրկութեան կենացն զրկին, ըստ որում 'վկայեաց[4] ճշմարտութիւնն Քրիստոս, որ ուրանայ զիս առաջի մարդկան, 'ուրացայց եւ ես զնա առաջի Հօր եւ Հրեշտակաց։ Եւ Յովհաննէս ասէ, որ ոչ հնազանդէ[5] Որդոյ, 'բարկութիւն[6] Աստուծոյ

1 Ա. Աստուծոյ է։
2 Պակասի յԱ.։
3 Ա. *Չորրորդ ուսացումն է Ծանեկաց:*
4 Ա. կնքեաց։
5 Ա. 'ուրացայց զնա առաջի Հօր իմ եւ Հրեշտակաց. եւ դարձեալ. որ ոչ հնազանդի,։
6 Ա. բարկութիւնն։

մնայ ի վերայ նորա։ Որոյ պատճառ է զի հաւատացեալքն փրկին. այլ յիրաւի անհաւատքն կորնչին։ Զոր յայտնապէս հին եւ նոր Կտակարանքն զՔրիստոս՝ աստուած ցուցանեն. այլ նորա ոչ հնազանդին Սուրբ Գրոց[1]։

Եւ թէ ասիցեն, որպէս մեր բանս մարդ չէ, նոյնպէս՝ Աստուծոյ Բանն։

Ասեմք, եթէ մեր բանս անկատար է, եւ եղական[2] եւ եղծանելի. վասն որոյ ոչ է մարդ։ Իսկ Աստուծոյ Բանն կատարեալ է եւ անեղ եւ անեղծ. վասն որոյ 'Աստուած[3] է։

Դարձեալ ասեմք, թէ Բանն Աստուծոյ՝ աստուած ոչ է, եւ Հոգին Աստուծոյ՝ աստուած ոչ է, եւ զօրութիւն Աստուծոյ՝ աստուած ոչ է, որպէս դուք ասէք, ապա 'ոչ գոյ Աստուած[4], զի[5] զմասունսն բառնալով, բառնի եւ բոլորն։

---

1 Ա. ունի. 'վասն որոյ բանիւք նոցա խօսեցուք ընդ նոսա. նախ այսպէս հայրց զԱհուան, որք մխախոհ են Յամհոյ. զի Ահուան զԱհոխայն դայլոյ ասէ եւ աստուած. եւ Յանրիկն եկեալ եւ մարդ։ Երկրորդ՝ Թուրքամն խրքամբ ասէ. *Ցիսէ Ռուհ Ալլահ եւ Քալիմաթու*, որ է Քրիստոս՝ Հոգի, Աստուած եւ Բան։ Արդ կրկին է անասութիւնս բառնիս։ Նախ՝ ուղղական. այսպէս՝ *Ցիսէ*, որ է Քրիստոս, Հոգի. Աստուած եւ Բան։ Ահա յայտնի խոստովանութիւնն Երկրորդ՝ հոլովական այսպէս՝ եթէ Քրիստոս Հոգի, կամ Հոգա եւ Բան Աստուծոյ։ Եւ այս եւս յայտնի է թէ Քրիստոս Հոգի է Աստուծոյ եւ Բան, ապա ուրեմն Աստուած է. զի Աստուծոյ Հոգին եւ Բանն Աստուած է։

2 Ա. ունի. է։

3 Ա. յԱստուած։

4 Ա. Աստուած ոչ գոյ։

5 Ա. ունի. եւ։

Եւ սա է հարցումն[1], թէ լոյս ասէք զՔրիստոս, որպէս ասէքդ. *Ցիսէ նուր ի Նուրդան*[2]. այսինքն՝ լոյս ի լուսոյ։ Արդ հարցանեմ. լոյսն այն եղական է թէ անեղ։ Ջի թէ անեղ, ապա ուրեմն՝ Աստուած[3] եւ արարիչ։ Իսկ թէ ՛ասէք՝ եղական[4]. ասեմք եթէ ՛որդի[5] լուսոյ է. ի հրեշտակաց լուսոյն թէ ի լուսաւորացդ, թէ տարրական. աՀա սոքա ոչ ասին լոյս Աստուծոյ։ Իսկ թէ ասէք, նոր ստեղծուած է. ասեմք, ՛թէ[6] իր ինչ ստեղծական ՛ի[7] յԱստուած ոչ է. զի բոլորն պարզ էութիւն է եւ անեղ։ Այլ արդ՝ ՛թէ[8] զլոյսն Աստուծոյ ստեղծուած ասէք, լինի մասն ինչ եղական Աստուծոյ[9], այլեւ պատառհումն լինի յԱստուած, որ է յայտնապէս սուտ։

Ապա լոյս ի լուսոյ է Քրիստոս, որպէս լոյս արեգական[10] ունի զէութիւն ՛միայն[11], նոյնպէս

---

1 Ա. յաւելու, կրկին. Դարձեալ այսպէս. թէ Հոգի Աստուծոյ ասէք զՔրիստոս. զինչ է Հոգին այն. եթէ Հրեշտակաց Հոգի է, կամ մարդկան, կամ նոր ստեղծեալ. այլ սոքա Աստուծոյ Հոգի ոչ կոչին. Իսկ թէ Քրիստոս Հոգի է Աստուծոյ, ապա ուրեմն Աստուած է։ Ջի որպէս է Հոգի մարդոյ յէութենէ մարդոյ, նոյնպէս Հոգին Աստուծոյ յէութենէն Աստուծոյ։ Երկրորդ Հարցումն։

2 Ա. *Նուրբտանն*։

3 Ա. ունի. է։

4 Ա. եղական ասէք։

5 Ա. յորդւոյ։

6 Ա. եթէ։

7 Պակասէ յԱ. ն։

8 Ա. եթէ։

9 Ա. ունի. այլ եւ բաղադրեալ դոյ։

10 Ա. արեգականն։

11 Ա. նմին։

եւ որդի զՀօր 'էութիւն[1]։ Եւ որպէս լոյս ճրագի ոչ է յետոյ, նոյնպէս եւ որդի ընդ Հօր է յաւիտենից։

Դարձեալ. լոյսն այն անեղ եւ արարիչ ծագեաց ի կոյսն Մարիամ, եւ առեալ զբնութիւնս մեր, զՀոգի եւ զմարմին եւ զմիտս, միաւորեաց ընդ իւրում 'աստուածութեան[2]. ապա ուրեմն միացեալն ընդ Աստուծոյ՝ Աստուած է։ Որպէս մոմն վառեալ լոյս է, եւ որպէս փայտն Հրացեալ կայծ է, եւ որպէս երկաթ Հրացեալ Հուր է, այսպէս մարմինն ընդ Աստուծոյ միացեալ՝ Աստուած է։ Եւ զոր օրինակ ամենայն մարդոյ Հոգի յԱստուծոյ է ստեղծեալ, եւ ի ծնողէն միայն մարմինն է[3], եւ կուսի Մարիամ մայր Աստուծոյ եւ Աստուածածին. զի զանմարմին լոյսն Աստուծոյ մարմնացեալ ծնաւ. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։ Եւ զոր օրինակ ի Հոգւոյ եւ ի մարմնոյ մի անձն է 'մարդ[4], եւ մի դէմ եւ մի բնութիւն է մարդոյն, այսպէս Բանն Աստուած մարդացեալ՝ մի անձն է, եւ մի դէմ, եւ մի բնութիւն[5] Աստուծոյ մարդացելոյ եւ մարմնացելոյ. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։

Դարձեալ. ամենայն մարդ ի Հօրէ եւ ի մօրէ ծնանի. արդ՝ Քրիստոս ի կուսական ար-

---

1 Ա. էութիւնն ունի։

2 Ա. աստուածութեանն։

3 Ա. ունի լուսանցքի վերայ. 'Եւ մայրն նորա կուսի ծնող մարդոյ, այնպէս եւ ի կուսէն միայն մարմինն է։

4 Ա. մարդոյ։

5 Ա. ունի. Բանին։

գանդէ անօերին յղացաւ եւ անապական ծնաւ, որպէս եւ դուք ասէք, ՙթէ ի կուսէն[1] ծնաւ. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։

ՙԵւ թէ ասեն[2], Եւա յԱդամայ եւ Ադամ ի հողոյ առանց սերման ՙծնաւ[3]. ասեմք եթէ եւ այսոքիկ ՙԱստուծոյ են գործք[4] եւ ոչ մարդոյ։ Եւ թէ օրինակիդ հաւատաս, ճշմարտութեանն ընդէ՞ր ոչ հաւատաս։ Զի որպէս բանն Աստուած զԱդամ ի հողոյ մարդ արար, այսպէս եւ նոյն բանն ՙի կուսէ[5] մարդ եղեւ. ապա ուրեմն ՙԱստուած է Քրիստոս[6]։

ՙԵւ թէ ասեն[7]. եւ մարգարէքն սքանչելիս գործէին, ՙորպէս առաջի փարաւոնի արար Մովսէս։ Իսկ[8] Եղիա եւ Եղիսէէ զմեռեալս յարուցին։ ՙՆոյնպէս եւ Քրիստոս արար սքանչելիս[9]։ Ասեմք, եթէ մարգարէքն այլոյ զօրութեամբ գործէին. այսինքն Աստուծոյ։ Իսկ Քրիստոս ինքնիշխան

---

1 Ա· եթէ ի բքբ, այսինքն՝ ի կուսէ։

2 Ա· եւ թէ ոք ասէ։

3 Ա· ծնան։

4 Ա· են գործ Աստուծոյ։

5 Ա· ի կուսէն։

6 Ա· ունի· ՙԴարձեալ. ամենայն արուեստաւոր ի գործոյն իւր ճանաչի. այլ զի Աստուած է ճշմարիտ Քրիստոս, ի գործոցն ճանաչի. եւ նախ զսքանչելիսն գործ Աստուծոյ է, զի ի վեր է քան զբնութիւն։ Արդ՝ դուք ասէք՝ եթէ քաղաքամաքրար է Եղիան, այսինքն՝ սքանչելագործ, որ զմեռեալս յարուցանէ[ր] եւ զկոյրս լուսաւորէր. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։

7 Ա· եւ թէ ոք ասէ։

8 Ա· ՙորպէս Մովսէս առաջի փարաւոնի. եւ։

9 Ա· պակասէ յԱ·ն։

‘Հրամանաւ[1], եւ ‘իշխանքն[2] գործեն թագաւորին Հրամանաւ։ Եւ յայտնի[3], որպէս մարգարէքն գործէին Աստուծոյ անուամբն. այսպէս եւ Առաքեալքն՝ Քրիստոսի ‘անուամբն[4] զամենայն ‘սքանչելիս[5] կատարէին. որպէս զմեռեալս յարոյց Պօղոս, եւ զկաղս գնացոյց Պետրոս՝ անուամբն Քրիստոսի։ Այս ուրեմն Աստուած է Քրիստոս։

Դարձեալ. թողուլ զմեղս միայն Աստուծոյ է, որպէս եւ դուք այսմ վկայէք։ Այլ արդ՝ Քրիստոս զմեղս թողոյր, ‘ոյք[6] գային առ նա. եւ մեզ ետ իշխանութիւն, ‘յեկեղեցիս[7] թողուլ զմեղս. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։

Դարձեալ. զխորհուրդս մարդկան գիտել եւ զառաջիկայն ասել, Աստուծոյ միայն է։ Այլ արդ՝ Քրիստոս գիտէր զխորհուրդս մարդկան, ‘զինչ կրէր ի նոսա[8], եւ զլինելոցն ասէր, որպէս եւ դուք Փեղամբար ասէք. այսինքն՝ մարգարէ. եւ մարգարէն անսուտ թարգմանի։ Եւ ‘թէ ասեն[9]. եւ մարգարէքն զլինելոցն ասէին. ասեմք, եթէ լինելոցն յայտնի միայն Աստուծոյ է եւ կամ որոց Աստուած յայտնեսցէ, որպէս Հրեշտակաց

1 Ա. Հրամանաւն։ Զօր օրինակ թագաւորն գործէ իշխանական Հրամանաւ իւրով։
2 Ա. իշխանք։
3 Ա. ունի. է։
4 Ա. անուամբ։
5 Ա. սքանչելիսն։
6 Ա. որք։
7 Ա. յեկեղեցի։
8 Ա. զինչ էր ի նոսա։
9 Ա. թէ որ ասէ։

եւ մարդկան։ Իսկ դեւք սուր եւ նուրբ են մտօք, փութանակի ուսանեն քան զմարդն, եւ թուին զառաջիկայն ասել։ Իսկ ճարտարք՝ ի սովորութենէ նշանաց եւ շարժմանց։ Իսկ վհուկք՝ կարծեօք եւ ՚թէականութեամբ[1]։ Այլ ճշմարտութեամբ, միայն Աստուծոյ. զի ՚զանցեալն[2] եւ զհանդերձեալն ներկայ է նմա։

՚Եւ թէ ասեն[3], այսպէս եւ Քրիստոս գիտէր որպէս մարգարէքն։ Ասեմք, եթէ մարգարէքն ի յայտնութենէ Բանին Աստուծոյ եւ Հոգւոյն ՚Սրբոյ[4] գիտէին, եւ երբեմն՝ յորժամ կամէր Աստուած։ Իսկ Քրիստոս միշտ եւ յինքենէ. զի Աստուծոյ Բանն է եւ ՚իմաստութիւն եւ լոյս[5]. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։

Եւ թէ ասեն. Աւետարանն ձեր ասէ. Մարգարէ յիւրում գաւառի պատուի ոչ ունի։

Ասեմք, եթէ մարգարէ զՔրիստոս ոչ վասն ՚պատուելոյ[6] կոչեն, այլ վասն փրկութեան. զի յորժամ Բանն մարդ եղեւ, յայնժամ կոչեցաւ մարգարէ կամ առաքեալ կամ քահանայ եւ այլն։ Այլ զի ոմանք մարգարէ ՚կարծէին[7] զնա, ըստ նոցա միտսն ասէ։ Սուտի յայտ է ՚որ ասէ[8]. Զո՞ ոք ասեն զինէն մարդիկն։ Ասեն ոմանք զԵղիա,

---

1 Ա․ թէականութեամբ․
2 Ա․ անցեալն։
3 Ա․ Եւ թէ ոք ասիցէ։
4 Պակասէ յԱ․ Ն։
5 Ա․ լոյս եւ հոգի։
6 Ա․ պատուելոյ։
7 Մոռացուած էր մեր օրինակին մէջ. դրինք ըստ Ա.-ի։
8 Պակասէ յԱ․ Ն։

*կէաք զԵրեմիա կամ զմի ոք ի մարգարէիցն. եւ ցաշակերտսն ասէ. Դուք զո՞ ոք ասէք։ Ասէ Պետրոս, դո՛ւ ես Քրիստոս որդի Աստուծոյ կենդանւոյ. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս. եւ որդի Աստուծոյ հաւատամք զնա, եւ երանիմք։*

*Դարձեալ. ստեղծանելն գործ Աստուծոյ է. զի անհնուն զօրութիւն պիտոյ է զոչ գոյն ի գոյ ածել։ Արդ՝ որպէս դուք ասէք թէ Քրիստոս ի տղայութեանն ընդ խաղս առեալ զհողն ի ձեռս եւ ստեղծանէր թռչունս, որպէս ՝չղջիկան եւ կամ այլ ինչ։ Այլեւ [ի] ծնէ կուրին աչքն եբաց, որ տեսանէր։ Արդ՝ եթէ Քրիստոս ստեղծանէ թռչուն եւ [ի] ծնէ կուրին աչք, ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։ Եւ թէ ՝ասեն[1] եւ կախարդք ոմանք զկերպարանս մարդոյ կամ զթռչնոյ [առնեն], ասեմք եթէ նոցայն առ աչօք է եւ ոչ իսկութեամբ։ Այլ որ արար զկերպարանս, դարձեալ նա՛ կարէ փոխել։*

*Դարձեալ. միշտ անմահ մնալն Աստուծո՛յ է։ ՝Արդ՝ դուք ասէք եթէ[2] Քրիստոս ո՛չ խաչեցաւ եւ ո՛չ մեռաւ, այլ ե՛լ յերկինս եւ կենդանի է միշտ. ՝եւ մեք ասեմք թէ խաչեցաւ եւ թաղեցաւ եւ յարեաւ եւ համբարձաւ յերկինս, եւ միշտ*

---

1 Ա. ՝չղջիկան, եւ կամ այլ ինչ. եւ դարձեալ ասէք. ըմբռնեցաւ ի Հրէիցն. ստեղծեաց ի սուրաթն մարդ մի, զոր խաչեցին, եւ ինքն ել յերկինս։ Արդ՝ եթէ Քրիստոս ստեղծանէ թռչուն կամ մարդ. կամ իւր կերպարանս. ձգեաց ի վերայ ուրուք. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։ Եւ թէ որ ասիցէ,։

2 Ա. ՝արդ եթէ որպէս եւ դուք ասէք թէ,։

կենդանի է[1]. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։ ՝Եւ թէ ասեն ամենայն մարգարէից հոգիքն են ի յերկինս[2]. ասեմք եթէ ամենայն մարգարէիցն ՝հոգիք են[3] առանց մարմնոյ. այլ եւ յետ մահու ելին յերկինս։ իսկ Քրիստոս հոգւով եւ մարմնով. այլեւ անմահ կենդանութեամբ ել յերկինս. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։

Եւ թէ ասեն. Իտրի եւ Իլիաս, որք են Ենովք եւ Եղիա ՝յերկինս ելին, նոյնպէս եւ Քրիստոս[4]։ Ասեմք. ՝թէ[5] նոքա ոչ են յերկինս, այլ ի դրախտն, ՝որ է[6] միջակ վայր մահու եւ կենաց. եւ կենդանի են մինչ ի կատարած, եւ յետոյ մեռանին ի ձեռս Նեռինն, որ է Մահդի էլ զամանն։ իսկ Քրիստոս ել յերկինս եւ ոչ ի դրախտն. որոյ պատճառ է, զի ոչ ի դրախտէն էջ, այլ յԱստուծոյ բանն իւր[7] էջ յերկիր եւ ել դարձեալ յերկինս առ Աստուած. ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։

Եւ թէ ասեն. եւ Քրիստոս գալոց է ի կատարածի. ՝գայ[8] եւ մեռանիցի։ Ասեմք առ այս, եթէ այն որ ի կատարածի գայ եւ մեռանի, ոչ է Քրիստոս, այլ Նեռն[9] եւ որդի Սատանայի։

---

1 Պակասէ յԱ. Ձ.։

2 Ա. Եւ թէ որ ասիցէ. ամենայն մարգարէիցն հոգիքն են յերկինս,։

3 Ա. հոգիքն միայն։

4 Ա. ՝են յերկինս,։

5 Ա. եթէ.

6 Ա. ՝որ է,։

7 Ա. ունի. ՝եւ հոգի,։

8 Պակասէ յԱ. Ձ.։

9 Ա. ունի. է։

՚Այն է, զոր դուք ղանձալ կոչէք[1]. զի թէ Քրիստոսն էր նա, զիարդ ՚զքրիստոնէութիւն դարձուցանէք ի Հաւատոյն, որ յառաջ[2] ի նա Հաւատացին։ Եւ թէ ասեն. այս Եղիա եւ Ենովք վասն էր մեռանին եւ Քրիստոս ոչ։ Ասեմք, թէ նոքա մեռանին, զի վկայեսցեն վասն ճշմարտութեանն Քրիստոսի։ Իսկ Քրիստոս որո՞յ վկայութեան մեռանի։ Եւ թէ ասեն. դուք ասէք, եթէ Քրիստոս[3] մեռաւ յառաջագոյն վասն կենաց աշխարհի, զի փրկեսցին Հաւատացեալք։ Այլ յայնժամ ոչ է փրկութիւն, զի անցեալ է ժամանակ մարդկան եւ Հասեալ են ի դատաստան։ Դարձեալ. դատաւոր ամենեցուն Աստուած է, որ արար զամենայն։ Այլ արդ՝ յայտնի է յամենայն ՚մարգարէս[4] խօսեցեալ թէ Քրիստոս Նորա դատաւոր։ Որոյ պատճառ է զի Նա մարմին էառ եւ չարչարեցաւ, Նա դատապարտէ զանՀաւատսն եւ փրկէ զՀաւատացեալս իւր։ Որ եւ դուք ասէք եթէ Ղիամամթի ղատոի Ցիսէն է Նստելոց․ ապա ուրեմն Աստուած է Քրիստոս։

Եւ թէ ասեն զմեզ. դու ՚ասացեր[5] այժմ թէ Քրիստոս ոչ է գալոց։ Ասեմք, եթէ նախ եկն Քրիստոս քարոզել եւ դարձուցանել, եւ յետոյ

---

1 Ա. ՚Եւ որ այժմ եկեալ է մոլար առաջնորդն ձեր, որ է Կարապետ Դեռինն.

2 Ա. զքրիստոնեայք դարձուցանէք ի Հաւատոյն, որք յառաջին.

3 Ա. ունի. ՚խաչեցաւ եւ մեռաւ. Ասեմք. եթէ Քրիստոս.

4 Ա. մարգարէսն.

5 Ա. ասացեք.

եկեալ դառնալ եւ փրկել։ Առաջին գալուստն էր ՝գծուծ[1] կերպիւ. եւ երկրորդ[ն] Հայրական փառօք։ Եւ մեռանել ոչ կարէ վասն կրկին պատճառի։ ՝նախ՝ զի ամենայն մեռեալք յառնեն. յայնժամ ՝կենդանին[2] վասն էր մեռանի։ Երկրորդ՝ զի թէ մեռանի, յայնժամ զվճիռ դատաստանին ո՞վ ՝հատուցանէ[3]. եւ մեռեալն ՝գլուխներից[4] կեանքն որպէս շնորհէ։ Ապա ուրեմն Աստուած է Քրիստոս եւ դատաւոր ամենեցուն եւ կեանք յաւիտենականն։ ՝Այսքան առ այս[5]։

Է.

*Հինգերորդ մոլորութիւն է Այլազգեաց*[6]

Որ զամենայն Սուրբ գիրս, այսինքն՝ զՀին եւ զՆոր Կտակարանս ոչ ընդունին։ ՝Եւ[7] չորս գիրս առեն յերկնից եկեալ. *Թաւրէթ, Զաբուր, Ընճիլ, Փուրղան*։ *Թաւրէթ* զՄովսէսին

1 Ա. ունի. գծուծ ծածկապէս։
2 Ա. կենդանի։
3 Ա. հատցէ։
4 Ա. գլուխնականն։
5 ՝Այսչափ ընդդէմ Այլազգեացն յայտնի բանից ցուցաք զՔրիստոս Աստուած Տէրերիս, վասն ամենայն։ Այլ վասն Հաւատացելոց եւ կատարելոց, վկայութեամբ Սուրբ Գրոց. բազում գլխով, այլ ուրեք արտայայտեցաք. զի է Տէրերիս Քրիստոս Աստուած, եւ փրկիչ մեր եւ կեցուցիչ. որում փառք եւ պատիւ ընդ Հօր եւ Սուրբ Հոգւոյն. ամէն,։
6 Ա. Հինգերորդ մոլորութիւն Տաճկաց։
7 Պակասէ յԱ.ն։

ՙկուչեն[1]. Զապուր ՙզԴաւթի[1]. Ընճիլ ՙզԱւետարանն, եւ Փուրղան[2] Մահմետին է։ Զորս ասեն, այլ երկքն բնաւ ոչ գիտեն եւ ոչ հաւատան, այլ միայն զԵւրեանցն։ Եւ ասեն թէ ՙայլքն[3] ամենայն սուտ են, եւ միայն Փուրղաննէ ճշմարիտ օրէնք։

ՙԶօր հարցանեմք[4] զնոսա նախ այսպէս. եթէ չորք օրէնք ՙերկնից[5] իջեալ, ճշմարիտ են թէ սուտ։ Իսկ եթէ ՙզձերն[6] ճշմարիտ ասէք, ապա եւ ՙառաջինքն ճշմարիտք են[7], զի յերկնից իջին։ Իսկ ՙեթէ առաջինքն ճշմարիտք են[8] եւ դուք ոչ լսէք. ապա յայտ է զի արտաքոյ էք ճշմարտութեան եւ սուտ։

ՙԴարձեալ. թէ առաջնոցն ոչ խոսեցաւ զճշմարիտն. այս լինի կամ ի տգիտութենէ կամ ի տկարութենէ կամ ի չկամութենէ, որ է յայտնապէս սուտ. զի ՙամենիմաստ[9] է Աստուած եւ ՙամենակարող[9] եւ ՙամենագութ[9]. ապա ուրեմն ճշմարիտ է հին կտակարանքն եւ ՙնորն[10]։

Դարձեալ. թէ զառաջին բանս իւր սուտ արար Աստուած եւ ձեզ նոր ետ, ապա ՙԱս-

1 Ա. ՙզԴաւթին։
2 Ա. ՙզԱւետարան, եւ Փուրղանն։
3 Ա. այլք։
4 Ա. Որ հարցանեմ։
5 Ա. յերկնից։
6 Ա. ձերն։
7 Ա. ապա եւ առաջինքն են։
8 Ա. թէ առաջինքն ճշմարիտք։
9 Ա. ամենիմաստ, եւ այլն։
10 Ա. Նոր։ — Այս հատուած յաջորդ երեք հատուածներէն ետքը դրուած է յԱ-ն։

տուած[1] զիւր բանս սուտ առնէ, որ է մեծ հայ-հոյութիւն ՝զայս խօսել[2]. Եւ թէ առաջինքն սուտ եղեն, նաեւ ձերդ ՝սուտ լինելոց է[3].

Դարձեալ. թէ զառաջին բանս իւր փոխեաց Աստուած, ապա զղջանայ եւ ՝փոշիմանի[4]. եւ զղջումն ագիտութեան հետեւի, որ է անհը-նարին մեղք.

Դարձեալ. թէ զառաջինն բան ն սուտ առաց եւ յետոյ՝ ճշմարիտ. ապա փոփոխումն գոյ ի նմա, եւ փոփոխականն՝ Աստուած ոչ կարէ լինել.

Դարձեալ. թէ առաջնոցն սուտ խօսեցաւ, ապա խաբեաց զնոսա եւ ստեաց. եւ խաբօղն եւ ստախօսն ՝ոչ Աստուած լինի[5].

Դարձեալ. թէ նոցա սուտ խօսեցաւ եւ ձեզ ճշմարիտ. ապա ատեաց զնոսա եւ սիրեաց զձեզ. Ապա այժմ դուք սիրելի լինիք Աստուծոյ քան զԴաւիթ եւ զՄովսէս եւ զԱբրահամ, եւ քան զայլ նահապետսն, որ է բնաւ սուտ.

Դարձեալ եւ այլապէս. թէ ՝նոցայն[6] սուտ է օրէնք եւ կտակք, նաեւ ձերդ ՝է սուտ[7]. զի բազում ինչ ՝նոցայն[8] ունիք, որպէս ՝զթլփատութիւն[9], զլուացումն, զշաբաթն, եւ

1 Ա. Աստուած իւրն.
2 Ա. որ զայս խօսի.
3 Ա. սուտ է լինելոց.
4 Ա. փոշիմանի.
5 Ա. Աստուած ոչ լինի.
6 Ա. նոցա.
7 Ա. սուտ է.
8 Ա. զնոցայն.
9 Ա. զթլփատելն.

‘զայլն[1]. զի թէ հիմն խախուտ է, նաեւ ‘զշինուածն[2]։

Դարձեալ. ամենայն նախահարքն եւ մարգարէքն զձեր ‘կտակքդ չունէին[3]. այլ ամէնքն սուտ խօսեցան։ Եւ դարձեալ. ամենեքեան կորեան, որք ‘չունէին[4] զձեր օրէնքդ։ Այլ ընդէ՞ր դուք ի նոցա ‘անուն[5] սալասաթ բերէք, եւ բարեխօս դնէք ‘զԴաւիթ, զՄովսէս, զԱբրահամ, եւ զայլսն[6]։

Դարձեալ. հրով եւ մրգով երեւեցաւ Աստուած Մովսէսի, եւ գրեաց զօրէնս ի տախտակի. եւ Դաւիթ հայր է Քրիստոսի ըստ մարմնոյ, եւ Քրիստոս Բան է Աստուծոյ եւ ‘լոյս. եթէ զկտակս[7] նոցա սուտ ասէք, այլ եւ զԱստուած ասէք, որ խօսեցաւ ընդ նոսա, եւ ետ զԲանն կտակարանացն։ Եւ զայս ո՞ր միտք հաւանի, թէ Աստուծոյ օրէնքն սուտ լինի[8]։

Զայս եւ այլ այնպիսիս, բազում հայհոյութիւն է ի բանս նոցա, որք ոչ ընդունին զՀին եւ զՆոր Կտակարանս։

---

1 Ա. զայլսն։

2 Ա. շինուածն։

3 Ա. կտակդ ունէին. ջնջուած մը կայ կտակ բառին վերջը։

4 Ա. ոչ ունէին։

5 Ա. յանուանն։

6 Ա. զՄովսէս, զԱբրահամ, զԴաւիթ, եւ զայլսն։

7 Ա. հոգի. եւ թէ զկտակարանս։

8 Ա. ունի. ‘եւ Կոյս օրէնքն ճշմարիտ, որ այսպէս գրեալ է ի վերնագիրն ի Փուրղանին ձեր. Մասաֆ. որ է Կոյս օրէնքն. զոր գրէր Մահմէտ եւ կապէր ի ճակատն երնջի, եւ նա բերէր ժողովրդեանն։

Եւ թէ ասեն, աՀա եւ դուք զՀին օրէնս ոչ ունիք, նոյնպէս եւ մեք զձերդ եւ զնոցայն ոչ ունիմք։ Ասեմք առ այս. մեք զՀին կտակարանս ունիմք, որպէս զնորս ի միոյ Հոգւոյ խօսեցեալ, եւ կոչեմք Աստուածաշունչ։ Այլ եւ զՀին օրէնս ոչ խոտեմք իբր չար ինչ եւ պիղծ։ Այլ զի կարօտ եմք Հնոյն։ Նախ. 'զի[1] Հիննն աղայոյց եւ անկատա[ր] էր 'օրէնք[2]. իսկ 'նորս' կատարման եւ կատարելոց։ Երկրորդ[3]. այն օրինակ եւ այս ճշմարտութիւն. իսկ կատարեալն անկատարին, եւ Հոգեւորն մարմնաւորին եւ 'ճշմարտութիւնն[4] օրինակին ոչ կարօտի եւ ոչ կատարէ։ Այլ ունիմք զնա ծածուկ եւ ստուերաբար։ Զոր օրինակ կաղապարն է ծածկեալ ի նկարն, եւ դեղով լցեալ. եւ որպէս[5] աստեղք ի տիւն է ծածկեալ. նոյնպէս զբնականն 'օրէնսն եդ[6] Աստուած Ադամայ եւ 'զբանականն[7] Նոյի եւ ԱբրաՀամու եւ 'զգրաւորն[8] Մովսէսի եւ այլ մարգարէիցն. այժմ ունիմք ընդ Աւետարանին ծածկապէս եւ ոչ յայտնի, որպէս ասացաք։

Եւ թէ ասեն. այսպէս եւ մեր օրէնքս նոր

---

1 Պակասէ յԱ. Ն.
2 Ա. օրէնքն.
3 Ա. ունի. այն մարմնական էր եւ այս Հոգեկան երրորդ.
4 Ա. ճշմարտութիւն.
5 Ա. ունի. Հինգ թիւն է ի տասնեակ թըւոց. որպէս.
6 Ա. օրէնս եա.
7 Ա. զբանականն.
8 Ա. զգրաւորականն.

է եւ 'ձերդ[1] հին եւ փոխեալ։ Ասեմք. 'թէ[2] ամենայն 'օրէնք[3] յերկու դէմս որոշին. այսինքն, ի կատարեալն եւ յանկատարն, որ է 'օրինակն եւ ճշմարտութիւն[4]։ Եւ է կատարեալ եւ 'ճշմարտութիւն[5] նոր. իսկ անկատարն եւ օրինակն հին։ Արդ, եթէ 'օրէնք[6] ձեր նոր է, պարտ է զի լինիցի մերս հին, եւ ապա 'ձեր[7] նոր, զի նոր ի վերայ հնոյն առի։ Այլ թէ օրէնքս մեր նորն է, ապա ձերդ նոր ոչ կարէ լինել, զի նորն ի վերայ նորոյ ոչ առի։

Դարձեալ[8]. կատարեալն ոչ կարէ լինել անկատար, այլ կարէ լինել գերակատար, որ է յետ ատեացս[9]։ Այլ արդ, 'օրէնք[10] ձեր ոչ է գերակատար, որ անդի կենացն է, եւ ոչ կատարեալ, որ նորս է, եւ ոչ անկատար, որ հինն է, որպէս ցուցաւ։ Ուրեմն օրէնք ձեր արտաքոյ ամենայն օրինաց է։ Եւ արտաքոյ օրինացն անօրէնութիւն է, եւ անօրէնութիւն[11] ոչ կարէ փոխել զօրէնս, եւ ոչ լինի նոր օրէնք։

---

1 Ա. ձեր։
2 Ա. եթէ։
3 Ա. օրէնքս։
4 Ա. օրինակ եւ ճշմարտութիւնն։
5 Ա. ճշմարտութիւնն։
6 Ա. օրէնքն։
7 Ա. ձերդ։
8 Ա. ունի. 'օրինակն փոխի ի ճշմարտութիւնն, այլ ճշմարտութիւնն ի յօրինակն ոչ երբէք. ապա թէ ոչ ներգործութեամբն լինի զօրութեամբ, որ է ասուած։ Դարձեալ.'
9 Ա. ունի. է։
10 Ա. օրէնքն։
11 Ա. անօրէնութիւնն։

խափանեալ է հաւատքն. զի զէմ յանդիման տե-
սութիւն է եւ ոչ յուսալի իր։ Հինգերորդ. զի
ամենայն մարգարէ զայն խօսի, զոր այլ ոք չէ
խօսեցեալ. որպէս յայտ է ի գրոց մարգարէիցն։
Իսկ Մովսէս մասն ինչ ի Մովսէսէ առեալ եւ
մասն ինչ յայլ գրոց՝ եւ յիւր անուն գրեալ։
Զի Թլփատութիւն ի Մովսէսէ, եւ լուացումն եւ
զատիկն եւ այլն ամենայն, եւ ոչ նոր ինչ
պատգամ[1]։ Վեցերորդ. զի ոչ որ մարգարէ իւր
բանիցն հակառակ խօսի։ Այլ նա հակառակ իւր
խօսի[2]. զի ոչ գրեաց մարգոյ մեզ ինչ, այլ առ-
նել զամենայն զոր կարէ։ ‘Զի զկինն վասն պոռնը-
կութեան է սպանանել՝ ասէ. եւ կերակուրն վասն
ապահովութեան է՝ ասէ։ Եւ այս մեծ հայհոյու-
թիւն է զԱստուած չարեաց պատճառ ասել[3]. եւ
ի վերայ այսմ ‘զաստուածն ասէ[4] լինել եւ հա-
ստատումն։ Արդ՝ եթէ մեղք ոչ է մարգկան,
‘զի՞նչ հատուցանէ Աստուած։ Եւ այլ բազում
ինչ բանս խօսեցաւ, զոր այժմ չէ պարտ յիշել։
Վասն որոյ ոչ առնեմք մարգարէ[5]։

1 Ա. ունի. ‘Եւ այս ամենայն որ եւ կարծի յետինքն առնել։ Այսպ ուրեմն գէզ է եւ ոչ մարգարէ։ Զի զԹլփատութիւնն ի Մովսէսէ էառ, եւ զլուացումն, եւ զատկն, որ է առատնորդ. եւ այլ ամենայն, եւ ոչ ունի նոր պատգամաւորի. վասն որոյ ոչ է պատգամաւոր։

2 Ա. ‘զի ոչ որ կարէ հակառակ իւր խօսել եւ առնել. այլ Մովսէս հակառակ իւր խօսի.։

3 Ա. ‘զի վասն այն առնէ Աստուած զկին վասն պոռնկութեան, զկերակուր վասն ապահովութեան։ Որ եւ այս կարծի հայհոյութիւն է զԱստուած ասել պատճառ չարեաց։

4 Ա. ‘ասէ զաստուածն։

5 Ա. ‘զի՞նչ հատուցանէ Աստուած. ապա ուրեմն ոչ...

ծելոց յամենայն հարկէ, եւ համարձակ եւ յայտ-նապէս պաշտել զՀաւատս իւրեանց։

'Այսքան առ այս[1]։

## Է.

Եւթներորդ մոլորութիւն Այլազգեաց։

'Որ զյարութիւն մարմնական ասեն[2], կերա-կուր եւ հեշտութիւն, կանայս քաղաքումն եւ եօթանասուն, որպէս Արիոս եւ Սաբելիոս եւ Կերինթոս ասացին, զորս նզովէ Սուրբ Գիրք եւ Եկեղեցի Աստուծոյ։

Եւ այսմ ի կարճոյ գիտասցուք 'զՀրամանն[3]. եթէ ի յարութեան ոչ կանայս առնեն եւ ոչ արանց լինին, այլ են իբրեւ զՀրեշտակս Աստու-ծոյ. զի ոչ մեռանել եւս կարեն։ Եւ թէպէտ այս բաւական է հաւատացելոց. սակայն տեսցուք 'զառաջարկութիւն[4] հեթանոսացն։

'Նախ որ ասեն, թէ յարութիւն է դառնալ վերստին յառաջին 'կեանս'[5] գլխաւորին։ Եւ էր առաջին 'կեանս'[5] ի գլխաւորին անմահութեամբ, որպէս ասաց Աստուած. Աճեցէք եւ բազմացա-րուք. ապա ուրեմն եւ ի յարութեանն լինելոց է անմահութիւն։ Ասեմք առ այս, եթէ 'առաջին

1 Ա· 'Այդ' այս է պատմութիւն նեռինն արքայնէ եւ կարապետի։

2 Ա· Որք զյարութիւն Ասեն։

3 Ա· զՀրամանն Տեառն։

4 Ա· զառարկութիւն։

5 Ա· կեանքն։

կեանս[1] դրախտին ոչ էր անմահութիւն եւ ոչ ցանկութիւն մարմնական, այլ հոգեկան եւ հրեշտակաց հաւասարութիւն. նոյնպէս եւ ի յարութեանն 'ի լինելոց։ Եւ թէ ասեն[2], ապա զինչ էր արու եւ էգն. ասեմք. եթէ յառաջագոյն գիտէր Աստուած, եթէ զպատուիրանն ոչ պահեն եւ ելանեն ի դրախտէն, 'արու եւ էգ արար, զի անասնաբար աճեսցին յերկրի[3]։ Ուստի յայտ է որ ասէ. Աճեցէք եւ բազմացարուք եւ լցէք զերկիր։ Զերկիր ասաց լցէք եւ ոչ զդրախտն։

Դարձեալ ասեմք, եթէ ի յարութեանն ոչ զդրախտին, 'որ էր միջակ կեանք[4], այսինքն՝ ի մէջ մահու եւ կենաց. այլ զխոստացեալն ի դրախտին 'զփառսն[5], զոր ոչ կարաց ժառանգել Ադամ, զնոյն առնելոց է ի 'յարութեանն[6] անմահ կենօք։

'Դարձեալ[7] ասեն. ո՞չ ապաքէն ի գիրս ձեր է գրեալ յարութիւն առաջին եւ հազարամեայ արքայութիւն եւ հանգիստ, եւ գետ իւղոյ եւ մեղու՝ եւ ուտիցէք եւ ըմպիցէք 'յարքայութիւն[8] ասէ Աւետարանն ձեր։

'Ասեմք, թէ մեր գիր մեկնութեան եւ

---

1 Ա. 'յառաջին կեանքն,։
2 Ա. լինելոց է։ Եւ թէ որ ասիցէ։
3 Ա. 'արու եւ էգ արար զնոսա յերկրի. զի անասնաբար աճեսցեն յերկրի։
4 Ա. 'որ միջակ կեանք էր։
5 Ա. զփառս։
6 Ա. յարութեան։
7 Ա. Երկրորդ։
8 Ա. յարքայութիւնն։

իմաստութեան գրոյն. զանհրեւոյթն[1] Աստուծոյ երեւելեօքս ուսանի։ Այն որ առաջին անէ յարութիւն, կրկին է յարութիւն, որպէս եւ կրկին է անկումն. այսինքն՝ հոգւոյ եւ 'մարմնոյ'[2]։ Արդ՝ առաջին յարութիւն է հոգւոյն, որ է թողութիւն մեղաց, որ եղեւ Քրիստոսիւ. եւ հազար ամն զկատարեալ թիւն նշանակէ, որ սուրբքն հանգչին հոգով ի գործս իւրեանց, եւ թագաւորեն ընդ Քրիստոսի մինչեւ ի կատարած աշխարհի։ Եւ ապա ի յերկրորդ յարութեանն մարմնոյն, առնուն զկատարեալ 'փառս'[3] եւ զպսակն յաւիտենից։ Եւ գետ իւղոյ եւ մեղու զմշտնջենաւորս եւ զառատ 'ողորմութիւն եւ զքաղցրութիւն[4] Աստուծոյ նշանակէ։ Նոյնպէս կերակուր եւ ըմպելի զզուարթութիւն եւ 'զիմաստութիւն Աստուծոյ նշանակէ[5], եւ ոչ մարմնական կերակուր 'կամ[6] ըմպելի։

---

1 Ա. ունի. 'Զանձն. եթէ զոր զգիրս ասոյր ոչ ընդունիք. զի ոչ զգիրս գիտէք եւ ոչ զզօրութիւն նորա. զայլ զամենայն ինչ մարմնաւոր եւ զգալի կարծէք. եւ զի՞նչ ասէք զայն. երկինք աթոռ իմ են եւ երկիր պատուանդան. այնպէս նստոյ անգեւոյ եւ ոտք երկայն մինչեւ յերկիրս հասանել, կամ որ ասէ ձեռն եւ բերան եւ աչք եւ ականջ Աստուծոյ, այսպիսի կարծէք զգալի եւ մարմնաւորութիւն. եւ խառնարան եւ զինքնըմբռնութիւն. ապա հաւատարէք զոր Սադուկեցոցն եւ Սամարիկեանցն, որ զամենայն ինչ մարմնաւոր ասացին եւ անմարմին իրաց ոչ հաւատացին. եւ զյարութիւնն եւս ուրացան։ Այլ մեք զեր մեկնութեանն եւ իմաստութեան գրոյն զի անհրեւոյթն։

2 Ա. մարմնոյն։

3 Ա. փառս։

4 Ա. 'ողորմութիւնն եւ քաղցրութիւնն,։

5 Ա. զիմաստութիւնն Աստուծոյ ցուցանէ։

6 Ա. եւ։

ՙԴարձեալ[1] ասեն. յարութիւն Քրիստոսի է պատճառ եւ օրինակ յարութեան ամենայն մարդկան, որպէս դուք ասէք. այլ արդ՝ Քրիստոս Տէր յետ ՙյարութեան[2] եկեր եւ էարբ ընդ աշակերտսն. ապա ուրեմն ամենայն մարդիկ ուտիցեն։ Ասեմք, եթէ Քրիստոս յետ յարութեանն ոչ վասն կարօտութեան եկեր, այլ վասն ՙհաստատոյց զյարութիւն[3]. զի բազումք տարացան զյարութիւն[3], որպէս Հրեայքն եւ դուք։ Իսկ հաստատեաց յարութիւն[3], ամենեցուն յայտնի է լինելոց եւ ոչ ըստ ունելի կարծիս։ Վասն որոյ ոչ է պէտք ՙկերակուր[4] վասն հաստատութեան։ Աստի յայտ է զի երիս իրս գործի ի կերակուրն. այսինքն, առաջին՝ համտեսելն. երկրորդ՝ ծամելն. երրորդ՝ փոխելն ի մարմին. զհամտեսելն եւ զծամելն կերեալ Քրիստոս. այլ ՙզփոխելն[5] ի մարմինն ոչ ՙկրեաց[6]. զի ընդ ծամելն յիւրաքանչիւրն տարրերն լուծանէին։

ՙԴարձեալ[7] ասեն. թէ մարմինն կարօտ է կերակրոյ։ Արդ՝ ՙեթէ[8] ստուգապէս այս մարմինս յարիցէ, պէտք է կերակրոյ. ՙապա[9] թէ ոչ՝ ՙայլ[10]

---

1 Ա. Երրորդ։
2 Ա. յարութեանն։
3 Ա. հաստատելոյ զյարութիւնն։
4 Ա. կերակրոյ։
5 Ա. զփոխելն։
6 Պակասէ յԱ.Ն։
7 Ա. Չորրորդ։
8 Ա. թէ։
9 Ա. այլ։
10 Ա. այլ իմն։

մարմին եւ ոչ այս յարիցէ։ Ասեմք, 'թէ[1] ապականացու մարմին կարօտ է կերակրոյ. այլ 'անապականք[2]' ոչ. որպէս եւ լուսաւորք երկնից ոչ են կարօտ 'կերակրոյ[3]։ Այլ որդ՝ ի 'յարութեան[4] մարմինք մարդկան լինին անապականք եւ անմահք վասն որոյ ոչ են կարօտ կերակրոյ։ Եւ թէպէտ ստուգապէս այս 'մարմին[5] յարիցէ ի հողոյ, սակայն այլ է որպիսութեամբ։ Զի այժմ ապականացու է յապականացու 'հողէ[6]. եւ յայնժամ անապական յանապական տա-րաց։

Դարձեալ ասեմք. թէպէտ լինիցի մարմին նոյն, այլ 'ոչ գործ նոյն։ Զի թէպէտ լինիցի ոտք եւ ձեռք[7], ոչ գնայ եւ ոչ գործէ մարմնով. եւ թէպէտ ունի զկենդանութիւն, այլ ոչ [illegible] շնչոյ։ Նոյնպէս եւ է ճշմարիտ 'մարմին[8]. այլ ոչ ունի զկերակրականն եւ զաճողականն. այսպէս ի 'յարութեան[9]' ոչ է կերակուր եւ [illegible], եւ ոչ փափկութիւն մարմնական. այլ մնայն հոգեկան է որպէս հրեշտակաց։

Իսկ յորժամ եղծաւ առարկութիւն նորա. այժմ հարցցուք զնոսա։

---

1 Ա. եթէ։
2 Ա. անապականքն։
3 Ա. կերակրոյ։
4 Ա. յարութեանն։
5 Ա. մարմինս։
6 Ա. հողոյ։
7 Ա. ոչ գործեն ի նոյն. զի թէ լինի ոտք եւ ձեռն։
8 Ա. մարմինն։
9 Ա. յարութեանն։

Նախ հարցանեմ զձեզ. եթէ 'յարութիւն[1] մահկանացու է թէ անմահ. Զի թէ 'մահկանացու[2], զմահկանացուս ի մահ զերծօղ յարուցանէ. Իսկ եթէ անմահ, ապա յայտ է զի ոչ է կերպակուր մարմնական, եւ ոչ փափկութիւն եւ ոչ ծնունդ եւ ոչ ծերութիւն եւ ոչ մահ եւ ոչ ապականութիւն, եւ այլն ամենայն որ ինչ ի կեանս յայս, բարձեալ է ի յարութեանն.

Դարձեալ[3] ասէք. 'Անդ ի յարութեան միոյ առն քառասուն կամ եւթանասուն կին հուրիք[5] տան. Արդ՝ խոստովանեալ է յամենեցուն թէ որք մեռանին, նոքին նոյն թուով յարիցեն. Իսկ ի կեանս յայս բազում մարդիկ առանցկին մեռանին. Արդ՝ ուստի[6] 'լինին' միոյ մարդոյ քառասուն կամ եօթանասուն կին. 'ապա սուտ է զոր ասեն զհուրիսն[7].

Դարձեալ հարցանեմ. փոփոխական է յարութիւնն թէ անփոփոխ. Զի թէ փոփոխական է եւ զո՞յ անդ հեշտութիւն եւ փափկութիւն մարմնոյ, որպէս դուք ասէք, ապա զո՞յ այլ ծորումն եւ ապականութիւն. զո՞յ ապա ծնունդ եւ աճումն, զո՞յ եւ ակարութիւն հիւանդութիւն եւ մահ. ապա ոչ է այն յարու-

---

1 Ա. յարութիւնն.
2 Ա. մահկանացու է.
3 Այս հատուածը Ա.ի մէջ գրուած է Ը.րդ հատուածէն ետքը.
4 Ա. արդ ի յարութեանն.
5 Ա. ունի. կին. հուրիք.
6 Ա. լինիցի.
7 Ա. ապա սուտ են որ ասեն զհուրիսն.

թիւն, այլ այս ծննդական կենդանւոյս։ Եւ պիտոյ է այնմ՝ յարութեան այլ եւս յարութիւն եւ հանդերձեալ կենդանւոյ, որ է բնաւ առ ա։ Իսկ թէ անփոփոխ. ապա ոչ է փոփոխումն եւ կերպակուր մարմնական եւ փոխանելի։

Դարձեալ հարցանեմ. յարութիւնն ժամանակեա՞յ է թէ յաւիտենից։ Զի թէ ժամանակեայ է, նոյն այս կենդանի է, եւ ոչինչ 'առաւելու[1]։ Իսկ թէ յաւիտենից[2], ապա ոչ է շարժումն երկնի եւ լուսաւորաց, որ պատճառ են ժամանակաց, եւ ոչ ծնունդ եւ աճումն, որ հետեւի ժամանակի, եւ ոչ այլ ինչ փոփոխութիւն մարմնոյ։

Դարձեալ. կերպակուր եւ 'ըմպելիք[3] լինին յերկրէ եւ յայլ տարերաց։ Արդ՝ եթէ տարերք յապականութիւն փոխին. ոչ հասանին ի նոցանէ եւ ոչ լինին կերպակուր եւ ըմպելի մարմնական։ Իսկ թէ մնան յապականութիւն, ոչ է այն յարութիւն եւ յաւիտենից կենդանի։

Դարձեալ. զարքայութիւնն յերկրի՞ս ասէք թէ յերկինս։ Զի թէ յերկրիս, ոչ է այն արքայութիւն, այլ 'աժամանակաւոր[4] կենդանի։ Իսկ թէ յերկինս, ապա ոչ է անդ կերպակուր մարմնական եւ ըմպելի. զի սոքա ամենեքեան ի չորից տարերց են. եւ 'երկինք[5] հինգերորդ էութիւն բառ

1 Ա. առաւել։
2 Ա. ունի. 'արդեօ ասէք. ապա յաւիտենից.'
3 Ա. ըմպելի։
4 Ա. ժամանակաւոր։
5 Ա. երկինքն է։

Արիստոտէլի։ Եւ շրջս տայր ոչ կարէ 'ի վերոյ[1] երկնիցն ելանել եւ տարրական կերակուր լինել։

Դարձեալ. կերակուր մեր եւ փայփայութիւնք են ի բուսոց եւ ի կենդանեաց, որպէս հաց եւ միս, եւ այլն։ Արդ՝ եթէ ի 'յարութեան[2] են այսպէս փայփայութիւնք եւ կերակուրք, ոչ միայն մարդս, այլ եւ տունկք եւ զգայական կենդանիք յարիցեն եւ մնան յաւիտենական։

Դարձեալ. զի թէ գոյ անդ կերակուր մարմնական, պիտոյանայ արուեստից եւ զերկիր գործելոյ, որպէս աստ. լինի՛ անդ մեծատուն եւ աղքատ, լինի անդ յափշտակութիւն եւ զրկումն եւ անիրաւութիւն եւ մեղք։ Եւ որպէ՞ս լինիցի արդար դատաստան եւ հատուցումն ըստ գործոց. եւ ո՞ւր լիցի տեղիք սրբութեան եւ արդարութեան գործոց։ Զի աշխարհս այս է տուն մեղաց. եւ դժոխքն է տեղիք մեղաւորաց. եւ արքայութիւնն լիցի տեղիք մեղաց եւ անիրաւութեան, որպէս դուք կարծէք։

Դարձեալ ասէք. անդ ի յարութեանն միոյ առն քառասուն կին։ 'Արդ[3] կին լինի վասն որդեծնութեան. իսկ որ վասն հեշտութեան ախտի, պոռնկութիւն է եւ շնութիւն։ 'Այլ եւ[4] դուք ասէք թէ անդ որդեծնութիւն ոչ լինի. ուրեմն վասն հեշտութեան 'ախտի եւ պոռնկութեան լինիցին կանայքն բազումք[5]։ Ապա 'արքայու-

1 Ա. վերոյ։

2 Ա. յարութեանն։

3 Ա. 'Դարձեալ,։

4 Ա. Ապա եւ։

5 Ա. 'ախտի է եւ պոռնկութեան կանայքն բազումք։

բառնեաց Աստուած սիրելեաց իւրոց, մարգարէից, առաքելոց, մարտիրոսաց, ճգնաւորաց, և այլոց սրբոց։ Այս քան առ այս[1]։

### Բ.

*Ութերորդ մոլորութիւն 'Եղյագգեաց[2]։*

Որ զհրեշտակս և զհոգի մարդոյ մահկանացու ասեն։ Այս՝ քան զամենայն 'հերձուած[3] չարագոյն է, և ընդդէմ՝ աստուածեղէն գրոց։ Որ և բառնայ զհաւատ 'յարութեան[4] և զգործոց հատուցման։ Նա կարծիս առայ ոչ գոյ անմարմին էութիւն. այլ և կամայն Աստուծոյ ակարութեան 'է[5] ցոյցք, զոր անեղայք 'առաջիկայց[6]։

Բայց թէ որով պատճառաւ այսպիսի իմն զնեն հիմն բանից իւրեանց։ Եթէ Աստուած միայն է անմահ, զի անեղ և անսկիզբն է, և անսկիզբն՝ անփոփոխ է։ Իսկ ամենայն 'եղեալք[7] սկիզբն ունին, և որ սկիզբն ունի, ի հարկէ 'և ապա[8] փոխման։ Արդ ուրեմն հրեշտակք և հո-

---

[1] Այս ամբողջ հատուածին տեղ Ա. ունի. 'Զոր ձեզ մեծի բաժին պնդոյին ԲԵՂԷՀՍՍ, և անգիր պղծութեան ի կեանքս յայս և ի հանդերձեալն'։

[2] Ա. Տանճեաց։

[3] Ա. հերձուածս։

[4] Ա. յարութեանն։

[5] Պակաս յԱ.-ն։

[6] Ա. յառաջիկայց։

[7] Ա. եղեալք։

[8] Ա. ապա և։

գիր մարդկան եղեալք են. այս եւ սկիզբն ու-նին եւ վախճան[1]:

՚Ասեմք[2], թէ Աստուած միայն է անեղ եւ անմահ. ՚իսկ հրեշտակք եւ հոգիք՝ եղեալք եւ անմահ. ՚իսկ այլքն ամենեքեան[3] եղեալք եւ մահկանացուք[4]:

Դարձեալ ասեմք. միայն Աստուած է բնու-թեամբ անմահ. իսկ հրեշտակք եւ հոգիք կա-մօք անմահքինն են անմահք. զի կամեցաւ եւ ա-րար զնոսա անմահս. եւ կամօքն Աստուծոյ ոչինչ է անկարելիք[5]:

՚Եթէ[6] հարցցուք զնոսա եթէ յորժամ մեռանին, եւ որպէս ասեն մեզ թէ ի վերջին կէտ ժամանակի, ի վախճան աշխարհի, ՚ի քթել[7] ա-կան մեռանին հոգիք եւ հրեշտակք ամենայն, եւ դարձեալ կենդանանան: Եւ թէ պատասխանեն ՚հար-ցանեմք[8] թէ վասն էր մեռանին, ոչ այլ ինչ

1 Ա. ունի. Ըստ այս ասեմք. Նախ՝ եթէ հարկ է ան-ձն որ ոչ ունի սկիզբն, ոչ գոլ վախճան, այսինքն՝ յա-ւիտեանն. ընդդէմ է բացորոշեալ ժամանակին, որ սկիզբն ունի եւ վախճան. այլ ոչ է հարկ թէ ամենայն անվախճան անսկիզբն է: Որպէս մշտնջենաւորն, զի սկսեալ է եւ անվախճան. այսպէս ուրեմն հարկ լինել հրեշտակք եւ հոգիք սկսեալք եւ անվախճանք:

2 Ա. Դարձեալ ասեմք:

3 Ա. ՚իսկ թէ այլք ամենայն:

4 Ա. ունի. ՚այս է ի տրամաբանականսն:

5 Հատուածներուս մէջ եւեւս խառնակութիւն կայ: Ըստ Ա.ի հոս պէտք է ըլլան տարբեր աստուածաբանական երկու հա-տուածներ:

6 Ա. եւ թէ:

7 Ա. ի քթթել:

8 Ա. Հարց՝ փորձեմք:

Դարձեալ. արար Աստուած զհրեշտակս անմահս եւ միշտ փառաւորանիչս իւր, որպէս յայտ է ի սահմանէ նորին. էութիւն անմահ, անմարմին, Աստուծոյ սպասաւոր։ Արդ եթէ հրեշտակք մահկանացուք, փառաւորանութիւն[1] Աստուծոյ ոչ է մշտնջենաւոր[*]։

Դարձեալ ասեմք. թէ[2] հոգին ինքնաշարժ է, ինքնաշարժն մշտաշարժ է, եւ մշտաշարժն անմահ[3]. ապա ուրեմն հոգին անմահ է։

Դարձեալ հարցանեմ. զհոգին մարմին ասէք թէ անմարմին։ Զի թէ մարմին[4], ապա եւ մահկանացու. իսկ թէ անմարմին, ապա եւ անմահ. զի անմարմինն էութիւն ոչ մեռանի։

Դարձեալ. պատճառ մահու ի ներհակ խառնուածոյ տարերաց, այլ հոգին միեղէն եւ պարզ էութիւն է. ապա ուրեմն անմահ է[*]։

Դարձեալ. հրեշտակք եւ դեւք են միոյ սեռի եւ տեսակի։ Արդ՝ որպէս դեւք անմահ եւ մշտնջենաւոր տանջին, նոյնպէս եւ հրեշտակք անմահ եւ մշտնջենաւոր փառաւորին[*]։

---

1 Ա. մահկանացուք են, փառաւորանութիւնն։

2 Ա. Դարձեալ։

3 Ա. ունի. է։

4 Ա. ունի. որպէս Ստոյիկեանքն եւ Սադուկեցիքն ասեն։

5 Ա. ունի. Դարձեալ. թէ հոգին մարդոյ մահկանացու է, որպէս դուք ասէք, եւ շունչ անասնոցն ապականացու է, որպէս մեք ասեմք. ապա ոչինչ առաւել է հոգի մարդոյ քան զանասնոյ։

Դարձեալ. թէ հոգին մահկանացու է եւ մարմինն մահկանացու, ապա ուրեմն ոչինչ է զանազանութիւն հոգւոյ եւ մարմնոյ։

[Դարձեալ. մահ է որոշումն հոգոյ ՚ի[1] մարմնոյ. եւ յարութիւն է դարձեալ միաւորութիւն հոգոյ։ Այսպէս թէ հրեշտակն ունի մահ, պիտոյ է զի ունիցի [հոգի] զի որոշմամբն մեռցի, եւ միաւորութեամբն կենդանասցի][2]։

Դարձեալ. երկինքն է հինգերորդ էութիւն անապական, եւ ՚հրեշտակք[3] յերկնէ եւ յերկինս. ապա ուրեմն անմահք են եւ անապական։

Դարձեալ. թէ հոգիք յերկրի են ՚մահկանացու[4], եւ հրեշտակքն յերկինս. ապա ոչ ուրեք գոյ անմահութեան ՚տեղիք[5]։

*Դարձեալ. ի կատարածի թէ մեռանին հոգիք եւ հրեշտակք, որպէս դուք ասէք. արդ՝ կատարած աշխարհի է նորոգումն եւ կենդանութիւն ամենեցուն։ Արդ՝ ՚եթէ[6] հոգին, որ կենդանի է մեռանի, մեռեալ մարմինն որպէ՞ս կենդանանայ։

---

1 Ա. եւ։

2 [ ] Այս հատուածը, ըստ Ա.-ի, պէտք է գրուի երրորդ նշանակեալ հատուածէն յետոյ։

3 Ա. ՚հրեշտակք են։

4 Ա. մահկանացուք։

5 Ա. տեղի։

* Ա. ունի. ՚Դարձեալ. թէ հրեշտակն է մահկանացու, ապա իբր հրեշտակն մեղանչական. զի մահ՝ վասն մեղաց է պատիժ։

[ ] Հատուածէն յետոյ. Ա. ունի. ՚Դարձեալ. կեանք եւ մահ ներհակ հակակայ են, որպէս լոյս եւ խաւար. արդ որպէս փոփոխել ի կենաց, հեռանալ ի փոփոխել ի մահ, պիտոյ է հեռանալ անփոփոխ կենաց եւ անփոփոխ մահ. ապա ուրեմն սուտ են, որ ասեն թէ հրեշտակք ի նոյն կեան մահանան եւ կենդանանան։

6 Ա. եթէ։

Եւ յորժամ ամենայն տարերք նորոգին, հրեշտակք վասն էր ապականին։

Դարձեալ. յարութիւն մարմնոյն եղիցի վասն անմահութեան հոգոյն։ Արդ 'եթէ'[1] հոգին մահկանացու է, եւ ոչ մարմնոյն իցէ յարութիւն։ Եւ թէ ոչ յարութիւն, եւ ոչ դատաստան եւ հատուցումն գործոց։ Յիրաւի ապա զամենայն մեղս անխտիր 'գործեն'[2], զի զհոգին մահկանացու 'ասեն'[3]. եւ մարմինն ի հող լուծեալ է եւ ոչ գոյ հատուցումն եւ ոչ դատաստան։

Եւ թէ ասիցեն. 'եւ'[4] անփոփոխ եւ անմահք են հրեշտակք եւ հոգիք որպէս զԱստուած. ապա ոչ է զանազանութիւն ի մէջ նոցա եւ Աստուծոյ։ Ասեմք. եթէ մարմինք կրկին ունին զփոփոխումն. [ի] սկիզբն եւ ի վախճանն. եւ անմարմինք միայն ի մին կողմն, այսինքն՝ ի սկիզբն եւ ոչ ի վախճանն։ Իսկ Աստուած ամենեւին անփոփոխ. զի ոչ ունի սկիզբն եւ ոչ վախճան, որպէս ասացաւ ի վերոյ։

Նմանապէս եւ մահն է կրկին. զգալեացս բնական եւ իմանալեացն բարոյական։ Արդ՝ բնական մահն է որոշումն կենաց, եւ բարոյականն՝ որոշումն շնորհաց, որ է մեղքն։ Արդ՝ մարդն ունի կրկին մահ, բնական եւ բարոյական, ըստ մարմնոյ եւ ըստ 'հոգւոյ'[5]. իսկ հրեշտակն 'զբա-

1 Ա. թէ։
2 Ա. գործէք։
3 Ա. ասէք։
4 Պակասէ յԱ. Ն։
5 Ա. հոգւոյն։

բաւական[1]. զի է միայն Հոգի։ Իսկ Աստուած ա-մենեւին անմահ։

Այլեւ ունի մարդս կրկին յարութիւն[2]. զթողութիւն մեղաց եւ զանմահութիւն կենաց։ Իսկ Հրեշտակն ոչ ունի զթողութիւն մեղաց, որպէս դեւք։ Իսկ Աստուած ամենեւին արտաքոյ այսոց բաժանմանց. զի ոչ մեղանչէ եւ ոչ թողու-թեան կարօտի. այլ բաշխող կենաց եւ թողու-թիւն մեղաց։

Այսքան առ այս։

ԽԹ.

*Ննջեցելոց մոլորութիւն Այլազգեաց*[3]։

Որք անարգեն զնշան խաչին, եւ զպատ-կերս սուրբս։ Այսպիսի իմն յիմար կարծեօք բամբասեն զմեզ, եթէ ձեռագործի եւ կռոց երկրպագէք, եւ թէ[4] յարեւելս՝ արեգականն։

Ասեմք. եթէ յիմարութեամբ խօսեցին եւ սիրտք նոցա զնանրութիւն խոկասցէ[5]։ Մեք ոչ երկրպագեմք արարածոց[6] եւ ոչ կռոց. զի կուռք հեթանոսաց դեւք են. այլ մեք զԱստուած պաշ-տեմք[7] եւ [եմք] Քրիստոնեայք։

---

1 Ա. զբաւու ական։
2 Ա. ունի. յարութիւն։
3 Ա. Տաճկաց։
4 Ա. եթէ։
5 Ա. եթէ յիմարն յիմարութեամբ խօսի, եւ սիրտ նորա զծանրութիւն խոկասցէ։
6 Ա. արարածոյ։
7 Ա. աստուածապաշտք եմք։

Արդ դուք միայն ‘զխաչին նիւթն[1] տեսա-նէք, եւ զծածուկ խորհուրդ նորա ոչ իմանայք, որպէս այր, որ ոչ գիտէ զգրութիւն, զձեւ գրոյն միայն տեսանէ, այլ զծածկեալ բանն որ ի նմա, ոչ գիտէ: Խաչն նշան է Քրիստոսի եւ փրկու-թեան մերոյ, եւ զէն ընդդէմ թշնամոյն, զոր դուք ոչ գիտէք: Այլ զյայտնին ասեմ ձեզ: Խաչն ունի նիւթ եւ ձեւ, եւ ‘զօրութիւն[2] Աս-տուծոյ միացեալ[3] ի նմա: Նիւթն է ‘քար կամ փայտ կամ երկաթ[4], կամ այլ ինչ: Իսկ ձեւն է չորեքկուսի, ըստ նմանութեան խաչելոյն Քրիս-տոսի: Եւ ‘զօրութիւն[5] Քրիստոսի ի նմա բնակ-եալ, անմեկնելի ‘ի նմանէ[6] յաւիտեան: Զի ուր ‘խաչ[7] է, անդ է եւ խաչելեալն, անդ եւ ‘խա-չելութիւն[8]:

Այլ միայն նիւթոյն ոչ երկրպագեմք, եւ ոչ աստուածին՝ ձեւոյն: Եւ յայտնի քեզ, որ բա-ղում են ի կենդանիս եւ յանկենդանս նկար եւ ձեւ քառակուսի, եւ ոչ են երկրպագելի մեզ: Այլ ‘երկիրպագանեմք զօրութեան[9] Աստուծոյ, որ ի խաչն է միացեալ. այսինքն է Քրիստոս, միաւորութեամբ ձեւոյն ի նիւթն բնակեալ:

1 Ա. զնիւթն:
2 Ա. զօրութիւնն:
3 Ա. ունի. է:
4 Ա. ‘փայտ կամ քար, կամ այլ ինչ:
5 Ա. զօրութիւնն:
6 Ա. ի նմայ է
7 Ա. խաչն:
8 Ա. խաչելութիւնն:
9 Ա. երկրպագեմք զօրութեանն:

տաճար կռոց։ ՙԱհա նիւթ մի և կատարմունք այլևայլ[1]։ Այս ոչ է զարմանք թէ մի նիւթն լինի պատկեր սրբոց և պատկեր պղծոց։

Եւ թէ առասպելաբանեն, ոգի խնդրելոց են ՙի պատկերահանէն. ասեմք, եթէ[2] զայս ասէ Աստուած. Հոգի յինէն ելցէ, և զամենայն շունչ ես արարի։ Եւ թէ նա է արարիչ հոգոց, ի մարդոյ զկարգ խնդրէ։ Եւ Աստուած զհարն խնդրէ ի մարդոյ և ոչ պանկարէն։ Եւ թէ ՙծնողքն[3] մանկանց միայն ՙզնիւթ մարմնոյն տան և ոչ հոգի[4], ի նկարողէն զհոգի խնդրէ զհոգի։

Եւ զի ՙայլ[5] շնչաւոր կենդանիս նկարէք դուք, շունչ ունիք տալ նոցա[6]։

Եւ թէ ասեն, մարգարէն ասէ. Ու՞մ ՙնմանեցուցէք զՏէր[7]. ասեմք, թէ դուք զՍուրբ գիրս ոչ ընդունիք, զմարգարէ այժմ վկայ ածէք։ Այն

---

1 Ա. ունի. ՙԱհա նիւթն մի և կատարմունքն այլ և այլ։

Դարձեալ. զմի կնդրուկն ամենայն խնկեն Աստուծոյ և ամենայն կռոց. և զանասունս ամենայն պատարագեն Աստուծոյ, և ամենայն զոհեն կռոց։

2 Ա. ունի. ՙի պատկերակերտէն. ասեմք եթէ ասաց Աստուած զայդ առասպել և յո՞ր գրոց։

3 Ա. ծնօղք։

4 Ա. զնիւթն տան և ոչ զհոգի։

5 Ա. զայլ։

6 Ա. ունի. ՙԵւ թէ զծառս նկարէք, պատասխանի տաք հոգւոյ։ Ս՛ն. յիմարութեանց. Գիրք ասեն ասեն, որ զծառն սպանանէ, պատասխանի է արեան նորա. այլ մի թէ պատկեր նկարէ, պատասխանի է հոգւոյ։ Եւ ընդէ՞ր կենդանեաց յերկինս տալ հոգւոյ մարդոյ, եզին, ասիւծոյ, և այլն։

7 Ա. Նմանեցուցէք զՏէր. և մի պատկերի։

՛Դառնալ․ քանզի Աստուած զկերպարանս մարդոյ էառ ի սուրբ կուսէն Մարիամայ, եւ զպատկեր իւր ի վերայ դաստառակի նկարեաց եւ առաքեաց Աբգարու թագաւորի, որով բժշկեցաւ ի ցաւոց: Վասն այն մեք զնորա առեալ կերպարան նկարեմք[1]:

Դառնալ․ Տիրամայրն, ի վերայ փոխման աւուրն, ձեռամբ իւրով եառ մեզ զկենդանագիր պատկերն ի նշան բժշկութեան, եւ է մինչեւ ցայսօր: Յորմէ առեալ Հրաման, ի բազում տեղիս նկարեալ զպատկերս սրբոց: Զի տեսեալ մարմնոյ աչօք եւ իմանալի մտօք Հայիցիմք ի նախատիպն: Այս է պատճառ պատկերագրութեան Սրբոցն:

Այժմ պատասխանեսցուք վկայութեանն ՛զոր ասէ․ Ո՞ւմ նմանեցուցէք զՏէր[2]:

Գիտելի է զի արգել ի Հին ՛օրէնսն[3] զպատ-

---

Եւ պատկերք մարդոյ ի վերայ աշտանակին ձեւացոյց Մովսէս, նոյնպէս եւ յետոյ Սողոմոն ի Տաճարին արար զնոյն քրովբէսն եւ զՀնկալաձեւսն:

Դառնալ․ Հրեշտակք անմարմինք են, եւ մարդակերպ երեւեցան մարդոյ, եղին, արծուոյ, եւ այլոցն, երկթեւեան, վեցթեւեան, ութթեւեան եւ այլն: Եւ որպէս տեսին մարգարէքն, այնպէս նկարեցին Հնաւորքն:

1 Ա․ ՛Դառնալ․ քանզի Աստուած զկերպարանս մարդոյ էառ, վասն այն մեք զնորա առեալ կերպարանն, նկարեմք:

Դառնալ․ ինքն Տէր Քրիստոս Աստուած զպատկեր իւր ի վերայ դաստառակի նկարեաց, եւ առաքեաց Աբգարու թագաւորի, որով բժշկեցաւ ի ցաւոց:

2 Ա․ որ ասէ․ Ո՞ւմ նմանեցուցէք զՏէր, եւ որո՞վ օրինակաւ:

3 Ա․ օրէնս:

կերն, ասելով՝ Մի արասցես զնմանութիւն Աստուծոյ, որ ինչ յերկինս եւ որ ինչ յերկրի։ Նախ, զի անհնարին է աստուածային 'էութիւն[1] արարածոց։ Երկրորդ, զի մի մոլորեսցին ի կռապաշտութիւն, զի դեռ անկատարք էին. որպէս եւ 'զուարակս[2] Մովսէսի ծածկեաց, զի մի պաշտեսցեն։ Երրորդ, զի ոչ էր մարմնացեալ Բանն Աստուած։ Այլ յորժամ երեւեցաւ մարդ, ապա հրամանն եւս մեզ կատարելոցս պատկերս նկարել, որպէս առաջարկ։

Իսկ որ զրպարտանեն զմեզ թէ յարեւելս երկիրպագէք արեգականն. ասեմք, թէ ոչ երկիրպագեմք 'արեգական[3], այլ արարչին արեգականն։ Ուստի յայտ է զի որ զարեգակն պաշտէ առաւօտուն յարեւելս, եւ յերեկոյն՝ յարեւմուտս երկիրպագէ. այլ մեք 'ազգ քրիստոնէից[4]' միշտ յարեւելս։ Նա այս է պատճառն, զի Տէր մեր Յիսուս Քրիստոս[5] յարեւելից կողմանէ համբար-

1 Ա. էութիւնն։

2 Ա. զուարակն։

3 Ա. արեգականն։

4 Ա. քրիստոնեայք։

5 Ա. 'Նա այսմ պատճառս բազում են. այլ զուարկան տասցից ՃԻԴ։

Դաւիթ մարգարէն ասէ. Աստուած մեր նախ յերկինս երկնից ընդ արեւելս։

Դարձեալ. Ադամ դէմ դրախտին բնակեցաւ եւ աղաղակէր ուստի ել. Է եւ դրախտն յԵդեմ ընդ արեւելս. Վասն որոյ եւ մեք զնոյն խնդրեմք։

Դարձեալ. պատուական եւ ահագին աշխարհն է Արեւելք. եւ դարձեալ յայնմ կողմանէ գայ երեւելի լոյս աշխարհի, ուստի եւ մեք զիմանալին խնդրեմք։

Այլ եւ Տէր Քրիստոս։

ձու յերկինս. եւ խոստացաւ դարձեալ միւսան-գամ գալուստն յարեւելից գալ։ Վասն որոյ[1] մեք այն ունելով զայտնեան փրկչին՝ յարեւելս երկրպագեմք։

Իսկ դուք վասն էր ի Հարաւ երկրպագէք. թողեալ զպաշտօն Աստուծոյ, Իսմայէլի[2] ասն երկրպագէք. այլ ուրեմն մարգարէապաշտ էք[3] եւ ոչ աստուածապաշտ։

Եւ թէ ասեն[4]. Իսրայէլացիքն ի Հարաւ երկրպագէին. ասեմք, այլ ջհուտ էք եւ նմա-լութ ամենայն ազգի։

Դարձեալ. ասեմք թէ նոքա ոչ ի Հարաւ, այլ ամենայն կողմանց յԵրուսաղէմ երկրպա-գէին Քրիստոսի, որ անդ յայտնելոց էր մարմնով[5], եւ զդատաստանն վերջին անդ գտանելոց է։ Այլ դուք ոչ այնպէս, այլ մարդոյ մեռելոյ եւ գերեզ-մանի երկրպագէք։

'Այսքան առ այս[6]։

---

1 Ա. ունի. եւ։

2 Ա. ունի. 'Եւ Մահմետի ասեն։

3 Ա. ունի. եւ կռապաշտ էք։

4 Ա. ասէք։

5 Ա. 'Նոքա ի Հարաւ, այլ յամենայն կողմանց յԵրու-սաղէմ երկրպագէին ի Քրիստոս, որ անդ յայտնելոց էր մեզ։

6 Ա. Պակաս յԱ.Ն։

Ժ.

*Տասներորդ մեկնութիւն ՝այլազգեաց[1]։*

Որ զպիղծ կենդանին ոչ ընտրեն. այլ զա-մենայն անխտիր ուտեն, բաց ի խոզէն։

՝Նա զի գիտելի է, զի[2] զանազանութիւն սուրբ եւ անսուրբ կենդանեաց եդ Աստուած ի բնական ՝օրէնս[3] եւ ի գիրս Մովսէսի։

Ի բնականս եդ չորս ՝ընտրողութիւն[4] կեն-դանեաց։ ՝Նախ, շաղղակերքն, որպէս գաղանք։ Երկրորդ, անձոռնի ՝մեծքն[5], որպէս ուղտքն եւ փիղքն։ Երրորդ, փոքր եւ գարշն, որպէս գե-տունք։ Չորրորդ. փառատակարքն, որպէս օձն եւ ՝մո-ղէզն[6] եւ նմանք նոցա։ Բնականապէս ՝պիղծ էր համարեալ[7] յԱդամայ հետէ։

Որ եւ բանիւ ասաց Աստուած ՝Նոյի ի սրբոցն եւթն եւթն եւ յանսրբոց երկուս երկուս մուծա-նել ի տապանն։ Զոր եւ յելսն ի տապանէն, ՝զեւթն[8] ի սրբոցն պատարագեաց Աստուծոյ, եւ յանսրբոցն՝ ոչ։

Իսկ գրով Մովսէսի ՝յայտնեաց, եւ[9] յայտ-նապէս զանազանեաց։ Ունելով ՝եւ[10] զբնական

1 Ա. Յաճկաց։
2 Պակասէ յԱ.Ն։
3 Ա. օրէնքն։
4 Ա. ընտրութիւն։
5 Ա. մեծք։
6 Ա. մողեզք։
7 Ա. պիղծք համարեալք։
8 Ա. զեւթներորդն։
9 Պակասէ յԱ.Ն։
10 Ա. ունի, եւ ա ի չորրորդանին։ Մեր օրինակին մէջ

ընտրութիւնան, յաւել եւ զայս[1] ի չորքտասանիս[2]. նախ, որոճողն. երկրորդ, կճղակաւորն. երրորդ, որ ընդ պորտն միզէ. չորրորդ, եղջերաւորն. հինգերորդ, որ ի ներքին կզակն ունի զատամունսն։ Հնգեքին սոքա 'Նշանակ[3] են սրբոցն. իսկ թէ մի ի սոցանէ պակաս գտանի, անսուրբ է. որպէս ուղտն[4] որոճող միայն է 'եւ այլքն[5] պակաս[6]. եւ խոզն կճղակահերձ եւ պորտամէզ, եւ այլն պակաս. եւ նապաստակն որոճող, եւ այլն պակաս։

'Իսկ թռչունս[7], ուղղակոտուցն, կոճաւորն[8], երամապնացն. եւ որ զմաշկ քարշին ի մէջն ունի, եւ յետ զենլոյն զմագիլսն ուղիղ պահէ։ 'Այսոքիկ հնգեքին սոքա նշան են սրբոյն[9]։

Նոյնպէս ձուկն, որ թեւ ունի եւ թեփ, ուտելի է[10]։ Արդ՝ զայսոքիկ ի ձեռն Մովսէսի ընտրեաց Աստուած եւ ետ օրէնս. զնոյնս ունիմք այժմ մեք։

Արդ յայտ է որ դուք 'զօրէնս[11] ոչ ունիք,

---

գրչէ սխալմամբ եղած է։ Իսկ չորքտասանս։ Իսկ է կարծեր գլխագիր։ Ա. ի մէջ կարծեր գլխագրով - 'Զչորքտասանիս. եղած է. այս եւս գլխագրով "ի չորքտասանիս"։

1 Տես էջ 148. ծն. 10։

2 Բնագիրն է։ Իսկ չորքտասանի։ Մենք ուղղեցինք՝ հետեւելով Ա.ին։

3 Ա. Նշանք. յետոյ նշան։

4 Ա. ունի. որ։

5 Ա. եւ այլն։

6 Ա. ունի. 'Նոյնպէս եւ նապաստակ եւ խոզ։

7 Ա. 'Նոյնպէս ի թռչունս։

8 Ա. ունի. եւ.։

9 Ա. Այսոքիկ նշան են սրբոյն։

10 Ա. ունի. 'Նոյնպէս մաստակն, որ զկոճն ունի։

11 Ա. ունի. 'զԱստուծոյ օրէնսն։

են, եւ միսն *մուրտատ*, եւ զմարմին զգենուլ։ Այս է պատճառն, զի զոր ինչ արտաքսատուրն գործէ՝ սուրբ է եւ պիտանի։ Նոյնպէս ձիենին եւ ձարն սրբին արտաքսանին։

Եւ թէ ասեն. դուք խոզն փառն էր ուտէք. ասեմք. թէ փառն երկու պատճառի։ Նախ, զի աղանդութիւն ծնող է. եւ մարգիկ սովորեալ են ի յուտել եւ ի բաց ոչ թողուն զխոզի ուտելն։ Երկրորդ, զի որպէս Հոռոմն եւ Փռանկն զնապաստակն եւ զձագարն ուտեն, այսպէս եւ Հայոց ազգն զխոզն ուտէ։ Բայց ոչ է պարտ ուտել. բատ որում լաւ է ոչ ուտել միս եւ ոչ ըմպել գինի. պաշտօք եւ պարկեշտութեամբ կալ. զի այս է բարի եւ ընդունելի Աստուծոյ, եւ ոչ այն որ ուտեն եւ ըմպեն։

Իսկ դուք զձի փառն էր ուտէք, զի ոչ ունի նշան սրբութեան. ապա ուրեմն *մուրտատ* է։

Եւ թէ ասեն Դորա. *փեղամբարքն* մեր հրամայեաց ուտել. ասեմք մեք. ոչ ունէք երեւի բանդ այդ ի գիրս ձեր։ Բայց միայն ի մի ժամանակ ձմերան եւ սաստիկ սովու, ատացաւ ուտել եւ ապրել, եւ ոչ յամենայն ժամ ուտել։

Դարձեալ. թէ Մովսէս մարգարէն պիղծ ասաց զձի եւ զուղտ եւ զնապաստակ, եւ Մահմետ ձեր ասաց թէ սուրբ են. ապա հակառակ է Մովսէսի եւ ոչ *փեղամբար*։ Այլ որպէս ընդունիք զսուրբ գիրս յերկնից իջեալ, յորժամ հին օրինացն Մովսէսի հակառակէք։

Դարձեալ ասեմք. որպէս ոչինչ զանազանի ոչխարն եւ այծն, որ ուտելի է մեզ. նոյնպէս ձի

եւ ջրի եւ էջ ոչ իւիք զանազանին, 'ընդէ՞ր ոչ ունէք[1]։

'Դարձեալ. որպէս[2] համանման ձիոյն, էջն եւ ջրին հարամ է, նոյնպէս եւ ձին հարամ է։ 'Նա թէ հալալ է ձին, ընդէ՞ր ղուրբան եւ մատաղ ոչ առնէք զձին, որպէս զոչխար կամ զեզն[3]։

'Դարձեալ. զգինին պիղծ եւ հարամ ասէք, զի պատճառ է չարեաց. նոյնպէս եւ ձին պիղծ է եւ պատճառ բազում չարեաց. զի պատերազմունք եւ սպանումն եւ թալան եւ աւերք նովաւ գործի. վասն որոյ ոչ է պարտ ուտել։

Այսքան առ այս[4]։

---

1 Ա. կերէք զնա։

2 Ա. Ասա թէ։

3 Ա. Դարձեալ. թէ ձին հալալ է, ընդէ՞ր ղուրբան, որ է մատաղ, ոչ առնէք զձին, որպէս զուզան։

4 Ա. 'Դարձեալ զգինին պիղծ ասէք, զի պատճառ է չարեաց. նոյնպէս եւ ձին պիղծ է եւ պատճառ բազում չարեաց։ Զի հարամութիւն, թալան, աւերք, պատերազմ եւ սպանումն նովաւ գործի. եւ որպէս դուք ասէք. թէ առաջքն ձիոյն պիղծ է, զի երկիւղ բերէ, եւ վերջքն՝ հալալ, զի բարձեալ է զահն։

Եւ յայտ է, զի վասն հինգ պատճառի հարամ է ձին. նախ, զի մարգարէքն ամենայն եւ Աւետարանն անասունք առացին զձի. երկրորդ, զի ոչ մի ինչ ոչ ունի նշան որոյ. երրորդ, զի ձեռնք նորա էջն եւ կիսէջն անասունք են. չորրորդ, զի ղուրբան ոչ լինի. հինգերորդ, զի պատճառ է սպանութեանց եւ բազում չարեաց։

Եւ թէ ասեն. ընդէ՞ր դուք զձիոյ մազն առնէք մաղ, եւ զկաշին մաշկէք. ասեմք, թէ եւ դուք խոզի մազով զձիթապաղի մազն որրէք, եւ զձէթն ուտէք. դուք զխոյս եւ զխոզոյ կաշին ոչ մաշկէք. առա փեղն պիղծ եւ ոսկրն սուրբ.

ԺԱ.

*Մետասաներորդ մոլորութիւն ՚այլազգեաց*[1]:

Որ զգինին հարամ՚ ըմպեն։ Արդ՝ նախ զայս ասեմք. ամենայն մարգարէքն եւ Առաքեալքն զգինին հալալ եւ սուրբ գրեցին, եւ Մահմետն ձեր՝ ՚հարամ՚[2]. այս որեմն հակառակ է մարգարէիցն եւ ոչ է մարգարէ։

Պատասխանի. Մովսէս ասէ. Զամենայն[3] զոր արար Աստուած բարի ՚է[4]. զի Աստուած բարի է, եւ չար ոչ առնէ։ Արդ՝ եթէ գինին չար է, այլ ուրեմն չարի է ստեղծուած եւ ոչ Աստուծոյ. եւ լինին երկու աստուածք, մին բարոյ եւ մին չարի արարողք[5]։

Պատասխանի. ամենայն ՚իր[6] որ ծնողն սուրբ է, եւ ծնունդն սուրբ է. որպէս ոչխար եւ գառն։ Արդ՝ ծնող գինոյն խաղողն է, սուրբ է եւ ուտելի. եւ ծնունդն ՚գինին[7] սուրբ է եւ ըմպելի։

---

նոյնպէս զայլն, ընկերն, մուկն եւ այլք՝ պիղծք են եւ միսն [illegible], եւ զմորթն զգենումք։ Այս է պատճառն. զոր ինչ [illegible] զործէ, սուրբ է եւ պիտանի. նոյնպէս [illegible] եւ [illegible] որդին [illegible]։

*Ծանօթ.* — Վերջին հատուածներս մէջ ոչ միայն [illegible]ութիւն կայ, այլ եւ այնպիսի կրճատումներ, որ [illegible] տուած են անկապակցութեանց։

[1] Ա. Տաճկաց։

[2] Ա. ունի. ՚ոչ հրաման եւս։

[3] Ա. ունի. ՚ինչ։

[4] Ա. են։

[5] Ա. ունի. ՚Պատասխանի սահմանեն զգինին [illegible] արարչեալ. այլ ջուրն անարատ սուրբ է, նոյնպէս եւ [illegible] գինին սուրբ է,։

[6] Ա. ՚իրի։

[7] Ա. ՚գինոյն։

Դարձեալ. ՙքաղցուն[1] եւ գինին ՙխաղողոյ[2] է. ՙեթէ[3] քաղցուն սուրբ է, նոյնպէս եւ գինին ՙսուրբ[4]։

Եւ թէ ընդդէմ իւրեն. ոչ ամենայն ՙոր[5] ի միոյ յառաջ ՙգան[6] սուրբ են, որպէս ի մօրէ կաթն եւ մէզն, մինն՝ ՙսուրբ[7] եւ միւսն պիղծ. նոյնպէս ՙեւ[8] ի խաղողոյ քաղցուն սուրբ է եւ գինին ՙՀարամ[9]։

Ասեմք, թէ ոչ է նման օրինակդ՝ վասն երկուցս նախ, զի առ մայրն այլեւայլն էր սուրբ (եւ) պիղծ. իսկ աստ միեւնոյն քաղցուն, նոյն լինի եւ գինի։ Երկրորդ. զի անդ միշտ կաթն սուրբ է եւ մէզն պիղծ. իսկ աստ ոչ միշտ, այլ երբեմն։ Զի ահա ՙյերէկ բոլորն[10] քաղցու էր եւ սուրբ, եւ նոյնն այսօր գինի է եւ պիղծ, եւ վաղիւն քացախ ՙէ[11] եւ սուրբ. ապա ուրեմն ՙթէ քաղցուն եւ թէ քացախն[12] սուրբ է, նոյնպէս եւ գինին սուրբ է այսօր։

Եւ թէ ասեն. գոյ ինչ երէկ եւ վաղիւն սուրբ եւ այսօր պիղծ, որպէս միս աշխարհի ի պահքն ձեր։

1 Բ. ՙքաղցուն։
2 Ա. ՙի խաղողոյ։
3 Ա. ՙթէ։
4 Ա. ՙսուրբ է։
5 Պակաս է յԱ. Ն։
6 Ա. ՙգայցեն։
7 Բ. ՙսուրբ է։
8 Պակասէ յԱ. Ն։
9 Ա. ՙպիղծ։
10 Ա. ՙբոլորն երէկ։
11 Պակասէ յԱ. Ն։
12 Ա. ՙթէ քացախն եւ քաղցուն։

Ասեմք, թէ այդպէս է. ապա մեք ոչ ասեմք զմիան պիղծ, այլ այսօր մեզ է պիղծ։ Նոյնպէս դուք մի ասէք զգինին 'պարզաբար պիղծ'[1], այլ ասացէք, այսօր մեզ է պիղծ։ Ապա ուրեմն գինին ձեզ պիղծ է եւ մեզ սուրբ։

Եւ թէ ասեն[2]. բազում ինչ սուրբք որ ի 'փոխիլ'[3] որակացն պղծին, որպէս Հոռեայ միսն փոխէ զորակն. Նոյնպէս 'եւ'[4] քաղցուն փոխէ զորակն եւ լինի գինի պիղծ[5]։ Ասեմք, ըստ այսմ՝ ասա որակն է պիղծ եւ ոչ գինին. զի գինին գոյացութիւն է եւ որակն պատահումն։

Դարձեալ. ասեմք, թէ բնական 'փոփոխումն'[6] որակացն ոչ պղծէ զերն, այլ առաւել սրբէ որպէս 'արիւնն կենդանեաց'[7], որ պիղծ է, փոխի ի սպիտակ կաթն եւ 'սրբի'[8]։ Եւ ջուրն ի մէջ անկոյն փոխի յորակութիւն պաղոյն եւ սրբի։ Այսպէս բնական որակութեամբ փոխի 'քաղցուն'[9] եւ լինի գինի, եւ փոխի գինին եւ լինի քացախ, եւ ոչ պղծին 'ի փափոխելն'[10]. ապա յայտ է[11], գինին

1 Ա. 'պեղծ պարզաբար։
2 Ա. ունի. 'են։
3 Ա. 'փոփոխել։
4 Պակասէ յԱ-ն։
5 Ա. ունի. 'Ասեմք բստ այսմ', ապա որակն է պիղծ եւ ոչ գինին։
6 Ա. 'փոփոխումն։
7 Ա. 'արիւն կենդանոյն։
8 Ա. 'սրբէ։
9 Ա. 'քաղցուն։
10 Ա. 'ի փոփոխելն։
11 Ա. ունի. 'թէ։

սուրբ է ըստ որակացն եւ 'սուրբ ըստ էութեան[1]:

Եւ թէ զմեզ հարցանէ 'ազէտ[2] մարդ ի Տաճկաց կամ բանաւոր[3], գինին հալալ է թէ հարամ, զի՞նչ 'պատասխանեմք[4]: Ըստ նմին կարծ՝ թէ մեզ հալալ է եւ ձեզ հարամ:

Դարձեալ. ասա թէ սակաւ գինին 'եւ[5] չափաւորն հալալ է եւ անչափն հարամ է, որ արբեցութիւն է: Զի բազում չարիք ի նմանէ, այսինքն ի գինոյն եւ յարբեցութենէն յառաջ գան ի հոգի եւ ի մարմին մեր. զի նախ խափանէ զբանականն եւ վառէ զցանկականն եւ շարժէ զսրտմտականն, ուստի յառաջ գան շնութիւնք, սպանութիւնք եւ բազում չարագործութիւնք. վասն որոյ հարամ՝ է ըստ գործոյն, եւ չար գործն այն լինի յարբեցութենէն: Վասն որոյ արգելեալ է արբեցութիւն, զի արբեցողքն զարքայութիւն Աստուծոյ ոչ ժառանգեն՝ ասէ Գիրն մեր:

Դարձեալ. ասա թէ գինոյն բնութիւն հալալ է, այլ գործն հարամ է, որպէս սուրն. զի նիւթն երկաթ է եւ բարի, այլ գործն՝ չար եւ խոտելի, որ է սպանումն: Նոյնպէս եւ գինոյն գործն չար է եւ վատթար. զի թուլացնէ զմարմինն, ծռէ զլեզուն եւ զաչքն եւ զականջն, թիւրէ

1 Ա. 'սուրբ է ըստ էութեանն.
2 Ա. 'ազէտ. գրչի սխալ.
3 Ա. ունի 'թէ.
4 Ա. 'պատասխանեմ.
5 Ա. 'որ է.

զոտն եւ զձեռն ի գործոյն, եւ այլ բազում վնաս գործէ գինին։

Եւ այս եւս գիտելի է. զի սակաւ գինին, յորժամ չափաւոր ըմպեն, շահ է եւ օգտու-տակար, զարտամութիւնն բանին եւ զհիւանդութիւնն փարատէ եւ զուժն տատանելոյ. վասն որոյ երեք ազգ մարդկան վայելէ գինին. այսինքն՝ տրտմե-ցելոց եւ ծերոց եւ հիւանդաց, որպէս ասէ Սո-ղոմոն. տուք գինի տրտմեցելոց, այլ եւ ծերոց եւ հիւանդաց։ Սոցա վայելէ գինին։

Եւ թէ ոք ասիցէ. ապա պիղծ է չար գի-նին, պիղծ է եւ փոքրն, զի միապէս են գինի. որ-պէս պիղծ կերակուր ինչ՝ մանր միապէս պղծեն զմարդ, մին պատառն եւ մին լիարն։

Ասեմք. թէ կրկին կերպիւ պիղծ են. է որ պիղծ է ըստ նիւթոյն, եւ է որ պիղծ է ըստ գոր-ծոյն։ Այլ որ պիղծ է ըստ նիւթոյն, միապէս պղծէ զմարդ. որպէս մի ձու, եւ տասն ձու միա-պէս լուծանեն զպահքն մեր։ Այլ որ ըստ գոր-ծոյն է պիղծ, սակաւն ոչ պղծէ, այլ՝ առաւելն. որպէս փուշն, որ սակաւ խոցէ, ոչ սպանանէ. իսկ նետն, որ առաւել խոցէ, սպանանէ։ Նոյնպէս սակաւ գինին ոչ վնասէ, այլ առաւել անչափն վնասէ։

Այլ եւ մարգարէն Մովսէս, որ ընդունիք զնորա գիրս եւ Թաւրէթ կոչէք, հրամանաւն Աստուծոյ, յամէն օր ի Տաճարին երկու գառն խորովեալ, եւ չորրորդ մասն զորակի գինոյ, բա-ղարջ հացով եւ գինին անապակ։ Նոյնպէս եւ յետոյ Սողոմոն, որ զՏաճարն շինեաց այնպէս

ԺԲ.

*Երկոտասաներորդ 'մոլորութիւն այլազգեաց[1]:*

Զի միշտ ջրով ողողին եւ սրբութիւն մեղաց համարին։ Եւ որս ասեմք նախ՝ եթէ ջուրն սրբէ 'զաղտ[2] մարմնոյն, այլ ոչ սրբէ զաղտ հոգւոյն, որ է մեղք. զի 'մարմինն զանմարմինն.[3] ոչ կարէ սրբել։

Եւ թէ ասեն. որպէս 'մարմին պղծէ զանմարմին հոգին մեղօք, նոյնպէս եւ մարմինն բարի

---

գեղ արբեցութեան է եւ ագահութեան, եւ չմա եւս փոխ-ուս պատճառ քան զգինին. որ ամենայն մարգարէք զգինին հալալ գրեցին, եւ զգոսայ՝ հարամ.

Այլ եւ մարգարէն Մովսէս, որ ընդունիք զնորա գիրքն եւ Թաւրէթ կոչէք. հրամանաւն Աստուծոյ յամէն ամ ի տաճարն երկու զառն խորովէր եւ զչորրորդ մասն դորակի գինոյ. բաղարջ հացով եւ գինին անապակ. նոյնպէս եւ Դաւիթ եւ յետոյ Սողոմոն, որ զտաճարն շինեաց, այնպէս արար. եւ թէ հարամ է գինին, վասն էր ի տաճարն եւ զայն քահանայքն ըմպէին.

Եւ այս եւս գիտելի է, զի տակաւ գինին չափ է եւ օգուտ. նախ՝ զօրութիւն բանին. երկրորդ՝ զուարճութիւնն բուժէ, երրորդ՝ զցեղն եւ զգոյն տատանէ. վասն որոյ երեք ազգ մարդկան վայելէ գինին. այսինքն՝ տրտմեցելոց, այլ եւ ծերոց եւ հիւանդաց, որպէս ասէ Սողոմոն. Տո՛ւք գինի տրտմեցելոց, այլ եւ ծերոց եւ հիւանդաց։

Ա՛յսքան վասն գինոյն.

*Երկու օրինակներու մէջ ալ այս վերջին տողը լուսանցքներու վրայ աւելցուած է, եւ այդ պատճառաւ անոր տրուած է աւելորդ կրկնութեամբ «այլ եւ ծերոց եւ հիւանդաց» բառերուն:*

*Ուշագրաւ է այս լուսանցագրական նոյնութիւնը երկու օրինակներու մէջ:*

1 Ա. Մոլորութիւնն Տաճկաց.

2 Ա. 'զախտ, անշուշտ գրչի սխալ.

3 Ա. 'մարմինն զանմարմինն.

գործովք[1]. ապա ուրեմն կարէ ջուրն սրբել զմեղք հոգոյն. ասեմք, ՝թէ[2] մարմինս մեր միաւորեալ է ընդ անմարմին հոգոյն. վասն այն եթէ բարի գործէ ՝մարմին[3] եւ թէ չար՝ հատանէ ի հոգին։ Իսկ ջուրն արտաքոյ զմարմինն լուանայ եւ ոչ հատանէ ի հոգին, որ է անմարմին. ՝վասն որոյ[4] ոչ կարէ սրբել զմեղս հոգոյն[5]։

Եւ թէ ասեն. դուք ոչ մկրտիք. ասեմք, թէ մկրտութիւնն մեր ոչ է սոսկ ջուր ՝լուացումն մարմնոյ[6], այլ զօրացեալ է Հոգւովն Սրբով, ՝ըստ հրամանի Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի[7], թէ դուք մկրտեսջիք ի Հոգին Սուրբ եւ ի ջուր։ Արդ՝ ջուրն լուանայ զաղտ ՝մարմնոյ[8] եւ Հոգին Սուրբ սրբէ զմեղս հոգոյն ծածկապէս. ապա անուանի է ՝մկրտութիւն[9] մեր եւ լուացումն ձեր։

Դարձեալ. Քրիստոս մկրտեցաւ ի Յորդանան գետ եւ զօրացոյց զջուրն, բացաւ երկինք,

---

1 Ա. ՝մարմինն պղծէ զանմարմինն մեղօք, նոյնպէս մարմինն սրբէ զանազան բարի գործովք։

2 Ա. ՝եթէ։

3 Ա. ՝մարմինն։

4 Ա. ՝վասն այն։

5 Ա. ունի. — ՝Եւ թէ ասեն, թէպէտ զհոգւոյ մեղս ոչ սրբէ ջուրն, այլ զմարմինն կարէ սրբել։

Ասեմք. մեղքն թէ հոգւոյ է եւ թէ մարմնոյ ըստ ներգործութեանն ոչ մնայ ոչ ի հոգին եւ ոչ ի մարմինն, զի անցեալ է եւ գործեալ. իսկ ըստ ունակութեանն մնայ միայն ի հոգին, այլ ոչ ի մարմինն։

6 Ա. ՝լուացումն մարմնոյ։

7 Ա. ՝ըստ հրամանաւ Տեառն մերոյ Քրիստոսի։

8 Ա. ՝մարմնոյն։

9 Ա. ՝մկրտութիւնն։

հայր 'Աստուած[1] վկայեաց ի վերայ Քրիստոսի, զոր է Որդի իմ սիրելի. եւ 'Սուրբ Հոգին[2] աղաւնակերպ էջ ի վերայ նորա. յոր 'հաւատացեալք[3] մեք ի Սուրբ Երրորդութիւն 'եւ ի մի աստուածութիւնն[4] մկրտիմք ի ջուրն յայն եւ օրհնիմք ի մեղաց։ Այլ 'ոչ այսպէս է[5] լուացումն ձեր։

Դարձեալ. ի կողէն Քրիստոսի ել ջուր եւ արիւն ի փրկութիւն հաւատացելոց։ Եւ մեք հաւատամք խաչին Քրիստոսի, թաղման եւ յարութեան նորա եւ մկրտիմք ի ջուր կողին Քրիստոսի. ի խորհուրդ թաղման եւ յարութեան նորա։ Արդ ոչ է այսպէս[6] լուացումն ձեր։

Եւ թէ ասեն. նոյնպէս եւ ձերդ է մաքրական ջուր եւ այլ ոչինչ. ասեմք, թէ անման է մկրտութիւն մեր եւ լուացումն ձեր. 'թէպէտ[7] ջուրն միեւնոյն է, այլ 'կատարմունքն[8] այլեւայլ։ Զոր օրինակ միեւնոյն կին, ամ̃ն մարդոյ հալալ ամուսնութիւն է, որ օրհնութեամբ 'է պսակեալ[9], եւ ումանց՝ շնութիւն. 'ապա[10] նոյն կին եւ նոյն գործ, եւ 'կատարմունքն[8] այլեւայլ։ Այսպէս թէպէտ միեւնոյն է ջուրն, այլ ի 'մկրտու-

---

1 Պակասէ յԱ.Ն.
2 Ա. 'Հոգին Սուրբ։
3 Ա. 'հաւատացեալ։
4 Ա. Պակասէ յԱ.Ն.
5 Ա. 'ոչ է այսպէս։
6 Ա. ու Նի. 'սոսկ։
7 Ա. 'թէ։
8 Ա. 'կատարմունքս։
9 Ա. 'պսակեալ է։
10 Ա. 'ահա։

թիւն օրհնութիւն[1] է խառնեալ, եւ ի լուա-ցումն՝ ոչ։

Եւ որպէս քիրտն ի մարմնոյն է եւ ՝մէզ[2] ի մարմնոյն. այլ մինն առողջարար է եւ ՝միւսն[3] ոչ։ Եւ կարէ լինել ՝մին ջուրն քաղցր եւ միւսն դառն[4], Այսպէս ՝մի ջրոյն[5] զանազան է ՝մկրտութիւն[6] մեր եւ լուացումն ձեր։ Նախ. ՝զի մկրտութիւն[7] մեր խորհուրդ է. զի յորժամ յիշեմք զերրոր-դութիւնն Սուրբ, Հաստատէ բանն ի տարր ջրոյն եւ լինի խորհուրդ, եւ ձերդ ոչ։ Երկրորդ. ՝մկրտութիւն[7] մեր ծնունդ է Հոգով ի Հոգւոյն Սրբոյ. եւ դուք ոչ ծնանիք Հոգով. զի ոչ հա-ւատայք զՀոգին Սուրբ։ Երրորդ. մի անգամ է ծնունդ Հոգւոյ, որպէս եւ մարմնոյ, եւ ձերդ բա-զում անգամ։ Չորրորդ. ի ձեռն այլոյ մկրտիմք, եւ դուք զձեզ լուանայք։ Հինգերորդ մկրտու-թիւն մեր է ջուր կողին Քրիստոսի եւ ջուրն Յոր-դանանու։ Եւ յայտնէ զայս խաչն ՝յաւազանն եգեալ[8] եւ Սուրբ Մեռոնն ի ջուրն խառնեալ. եւ ձերդ ոչ նոյնպէս։

Եւ թէ ասեն. Մովսէս եւ այլ մարգարէքն

---

1 Ա. ՝մկրտութիւնն օրհնութիւնն։

2 Ա. ՝մեզն։

3 Ա. ՝մինն։

4 Ա. ՝եւ կարէ լինել մինն վարդէջուր եւ միւսն առոյ-թէպէս միատեսակ ջուր են, եւ կարէ լինել մին ջուրն քաղցր եւ մինն դառն։

5 Ա. ՝մին ջրով։

6 Ա. ՝մկրտութիւնն։

7 Ա. ՝մկրտութիւնն։

8 Ա. ՝եգեալ յաւազանն։

՚ոչ լուացին այսպէս[1] ջրով. առնեմք թէ Մովսէս օրինադրեաց զսրբութիւն ջրոյն յօրինակ ՚մկրտութեան[2], որպէս ստուերագիր: Եւ զՄովսէսին ոչ ունիք, եւ զնոր մկրտութիւնս ոչ ունիք. ապա ոչինչ է լուացումն ձեր[3]:

Զոր հարցանեմ. լուացումն ձեր ի սրբէ՞ զմեզս թէ ոչ սրբէ: Զի թէ սրբէ զամենայն մեղս, զայլ բարութիւնս վասն էր գործէք, որպէս ՚ի Հաճն[4] գնալն, եւ զարաթն եւ պահքն, եւ կամուրջն եւ այլն: Մի գործէք այլ ինչ բարի, զի ահա ջուրն սրբեաց զձեզ: Եւ թէ բարի գործքն սրբէ զմեզս, ահա ՚անօգուտ եւ աւելորդ է լուացումն ջրոյ[5]:

---

1 Ա. ՚ոչ այսպէս լուացին:

2 Ա. ՚մկրտութեանն:

3 Ա. ունի. ՚այլ ի գալ Ճշմարտութեանն եւ լուսոյ, անցեալ է աւրինակն եւ ստուերն:

Դարձեալ. այլ էր սրբութիւն նոցա եւ այլ՝ լուացումն ձեր. նախ, զի նոցա քահանայքն միայն սրբէին, եւ դուք ամենայն ժողովուրդք այր եւ կին. երկրորդ. յորժամ ի սրբութիւնն մտանէին, եւ դուք յորժամ... երրորդ. նոքա զձեռս եւ զոտս միայն, եւ դուք զայլ անդամսն. չորրորդ. եւ զմեզս խոստովանէին ընդ ջրոյն, եւ դուք ոչ. հինգերորդ. նոցա այն մարմնոյ էր սրբութիւն, եւ դուք հոգւոյ ասէք սրբութիւն. ապա ուրեմն ոչ է նման սրբութիւն նոցա եւ լուացումն ձեր:

Դարձեալ. թէ զնոցայն ունիք լուացումն, զհին աւրէնքն ունիք, եւ ջհուդ էք համար. ապա ո՞չ է օրէնք ձեր նոր, որպէս դուք ասէք:

Եւ թէ ասեն. ապա ընդ հնոյն եւ մարգարէիցն ունիք զօգուտն ի լուանալն. առնեմք թէ ոչինչ է օգուտ, զի հինն եանց եւ անպիտան է, որպէս այժմ ջհուդն լուացումն. եւ զնոր մկրտութիւնս ոչ ունիք. ապա ուրեմն ոչինչ է օգուտ լուացումն ձեր:

4 Ա. ՚Հէջն:

5 Ա. ՚անօգուտ է եւ աւելորդ լուացումն ձեր:

[*] Իսկ թէ ասեն. Նոյնպէս եւ զոսք յետ ՝մկրտութեան[1] բարիս գործէք ասեմք, թէ ՝մկրտութիւն[2] զամենայն մեղս սրբեաց, զսկզբնականս եւ զներգործականս, ՝եւ[3] զմեծամեծս եւ զփոքունս միանգամ եւ ոչ կրկին վասն զի մի է ծնունդ հոգեւոր, որպէս եւ մարմնաւոր. եւ մի անգամ մկրտեցաւ Քրիստոս եւ մի անգամ խաչեցաւ: Իսկ զոր յետ ՝մկրտութեան[4] մեղանչեմք բազում անգամ, զայն ՝զղջումն, եւ խոստովանութիւն, եւ ապաշխարանքն եւ բարեգործութիւն սրբէ. եւ պահքն եւ ողորմութիւն եւ աղօթքն քաւէ զմեղս եւ ջնջէ զանօրէնութիւնս, եւ ոչ թէ մկրտութիւն[5]:

[*Իսկ թէ ասեն. զփոքունս մեղաց ՝լուացումն[6] սրբէ, եւ ՝զմեծամեծս՝ բարեգործութիւն[7]. ասեմք. ջուրն զփոքր մեղս սրբէ. վասն էր զերանորդ ձեր լուանայք, որ զչնութիւն եւ զպոռնկութիւն գործեաց, որ է մեծ մեղք: Նոյնպէս եւ ձեռն ՝զյափշտակութիւն[8] եւ զսպանութիւն գործեաց. ապա ուրեմն յայտ է զի անօգուտ է լուացումն ձեր:

[*] Սորին առաջադրութեան երկու հատուածք չեն ին Ա. ի ձեռ.

1 Ա. ՝մկրտութեանն։

2 Ա. ՝մկրտութեանն։

3 Ա. ՝մկրտութիւնն։

4 Պակասէ յԱ.-ն։

5 Ա. ՝բարեգործութիւնն սրբէ. պահք եւ աղօթք, ողորմութիւն եւ այլն. եւ ոչ թէ մկրտութիւնն։

6 Ա. ՝ջուրն։

7 Ա. ՝եւ զմեծամեծ մեղքն բարեգործութիւնք։

8 Ա. ՝զափշտակութիւն։

Եւ դարձեալ. բարի 'գործքն որ զմեծամեծ մեղքն[1] սրբեն, նոքա կարող են եւ սրբել զփոքունս։ Որպէս կացին, որ հատանէ զարմատ 'ծառոյն[2], եւ չորանան մանր 'ճիւղքն[3]. այսպէս եւ այնպէս անօգուտ է լուացումն ձեռ*]։

Եւ թէ ասեն. այդ ոչինչ է 'օգուտ լուացումն[4]։ Ասեմք թէ 'ոչ ինչ, ոչ հնումն[5] եւ ոչ ըստ նորոյս, որպէս ցուցաք։ Այլ է սրբութիւն մարմնական, որպէս որ ի բաղանիս զաղտ մարմնոյն լուանայ։ Եւ հանապազ մեք զձեռս եւ զերեսս լուանամք, եւ հոգոյն ոչինչ է սրբութիւն, նոյնպէս եւ լուացումն ձեռ։ Այդ թէ ոչ անես զզգուտունս ի ջուրս[6] հանապազ լուացումն, եւ ոչինչ է յօգուտ նոցա։

Դարձեալ ասեմք. եթէ լուացումն ձեռ ոչ է մեղաց սրբութիւն. եւ յայտ է յորժամ ի հալալ կինն երթայք յետոյ 'լուացուք[7] որպէս ի հարամ կին։ Արդ, եթէ ջուրն սրբութիւն է, կամ ձեզ հալալ կին չկայ, ամենն շնութիւն է, վասն այն լուացուք. եւ կամ թէ հալալ օրինօք կին ունիք եւ լուացուք, ջուրն այն սրբութիւն 'է մարմնոյ[8], որպէս բա-

---

1 Ա. 'գործք որ զմեծամեծ մեղս։
2 Ա. 'ծառոյ։
3 Ա. 'ճիւղքն։
4 Ա. 'լուացումն օգուտ։
5 Ա. 'ինչ ոչ, ոչ ըստ հնոյն։
6 Ա. ունի. 'զի։
7 Ա. 'լուացիք։
8 Ա. 'մարմնոյ է։

մեզ ՝մկրտութեան սրբութիւն[1], կատարելոցս օրէնք։

Դարձեալ. Աբրահամու եւ զմարմնաւոր ՝թլփատութիւն[2], իսկ մեզ՝ զհոգեւորն։ Զի դուք զաւելորդ մարմն կարէք, որ ՝անօգուտ է[3] առանց հաւատոյ եւ բարի գործոյ։ Այլ մեք զաւելորդ մեղքն հատանեմք հաւատովք եւ բարի գործովք։ Այս ուրեմն ՝զհոգեւոր թլփատութիւն[4] մեք ունիմք եւ ոչ դուք։

Դարձեալ. ասեմք ՝թլփատութիւն[5] ոչ է արդարութիւն, այլ՝ նշան յատկութեան. զի որդիքն Աբրահամու որոշեսցին յայլազգեաց. որպէս որ զոչխար խոյ դրոշմէ, զի յատկասցի յայլոցն։ Եւ յայտնի վկայ. յորժամ՝ զքառասուն ամն ՝յանապատն[6] էին, ոչ ՝թլփատէին[7]. այլ յորժամ՝ յերկիրն պարգեւաց մտին, յայնժամ թլփատեցան, զի ՝որոշեսցին[8] յայլազգեացն*։

1 Ա. ՝զմկրտութիւնն՝ սրբութիւն։
2 Ա. ՝թլփատութիւնն։
3 Ա. է ՝անօգուտ։
4 Ա. ՝զհոգեւորն թլփատութիւնն։
5 Ա. ՝թլփատութիւնն։
6 Ա. ՝յանապատին։
7 Ա. ՝թլփատեցան։
8 Ա. ՝որոշին։

* Ա. ունի. "Դարձեալ. ութօրեայ թլփատութիւնն նշանակէր զութերորդ դարն, որ դատ մեղաւորացն հատանին եւ ի հուրն ընկենուն. եւ արդարքն ամբողջ մնան. եւ յայտ է յայնմանէ, զի զնշանն ի ձեռս, կամ յականջս կամ յքրքինսն, կամ յայլ ինչ մասն ոչ հրամայեաց դնել, այլ ի մասն այն, որ ունի զաւելորդ մարմին. ապա ուրեմն թլփատութիւնն նշան է եւ ոչ արդարութիւն։

Դարձեալ. նշան է բազմութեան զաւակաց, զի մի

Դարձեալ. Նշան էր ՙթլփատութիւն[1]՚ յայնմ ազգէ եւ մանէ ծնանիլ Քրիստոսի։ Ուստի[2] Աբրահամ յերանն երդմնեցուցանէր, ծածկապէս նշանակելով զՔրիստոս։ Արդ՝ մեք ոչ ծնանիմք ՙզՔրիստոս մարմնաւորապէս[3]՚, այլ հոգեւորապէս. վասն որոյ ոչ թլփատիմք մարմնաւորապէս, այլ ՙհոգեւորապէս[4]՚։

Դարձեալ. ՙՆշանակ էր թլփատութիւնն[5] ազգին Հրէից. զի բաժանելոց էին յուխտէ եւ ՙյօրինացն[6] Աստուծոյ, եւ կորնչել ի բոլոր անդամաց Քրիստոսի, եւ լինել խոտան ամենայն ազգի, որպէս այժմ են. զի յԱստուծոյ ՙաչաց[7] ելին, եւ ամենայն մարդկան ատելի եղեն։

Դարձեալ. մեք ոչ թլփատիմք. ՙվասն այն զի բաժանեցաք ի ՙՀեթանոսաց[8]։ Այլ դուք զի թլփատիք եւ ոչ մկրտիք, յայտ է զի Հրէիցն էք հաւատոյ, որ նալալթ են ամենայն ազգի։ Եւ ոչ ունիք զնոր օրէնս, զի ոչ մկրտիք, ՙհաւատոյ էք կռապաշտից[9]։

---

զրնացի ազգն եւ փիժեցի. ուստի յայտ է զի օրէնք բազում կանայս եւ հարճս հրամայեաց առնուլ, եւ ամուլն խոտան էր ի նոցա մէջն։ Իսկ մեզ կուսութիւն եւ պարկեշտութիւն պատուիրեաց հոգեւոր զաւակ եւ ոչ մարմնաւոր։

1 Ա. ՙթլփատութիւնն։
2 Ա. ունի. ՙեւ։
3 Ա. ՙմարմնապէս զՔրիստոս։
4 Ա. ՙհոգեպէս։
5 Ա. ՙթլփատութիւնն նշանակէր։
6 Ա. ՙյօրինաց։
7 Ա. ՙյաչաց։
8 Ա. ՙվասն զի բաժանեցաք ի Հրէիցն, եւ մկրտիմք, զի բաժանեցաք ի հեթանոսացն։
9 Ա. ունի. ՙԴարձեալ. ի մանչն ձեր, ի բարի սու-

‘Եւ թէ[1] ասեն Քրիստոս թլփատեցաւ, դուք քրիստոնեայքդ ‘կամն էք[2] ոչ թլփատիք. Ասեմք նախ. եթէ Քրիստոս թլփատութեամբն զՀին օրէնս կատարեաց. իսկ մեզ նոր ‘օրէնս[3] եդ զմկրտութիւնն՝ ասելով. մկրտեցարուք յանուն Հօր ‘եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ[4]*։

Դարձեալ. ‘թլփատեցաւ Քրիստոս[5], զի մի հակառակ երեւեսցի ‘Հին օրինացն[6], այլ՝ հնազանդ ու կատարող. որպէս ‘քառասնօրեայ[ն] ի տաճարն եկն եւ կատարեաց զօրէնսն[7]։

Դարձեալ. զի մի առաջօք երեւեսցի բանին ‘մարդեղութիւն[8], որպէս Աբրահամու երեւեցաւ. այլ կատարեաց ‘զթլփատութիւն[9], զի ստուգապէս մարդ եղեւ։

Դարձեալ. մինչ ի մկրտութիւնն եւ ի խաչն զոր ինչ արար ‘Քրիստոս[10], ոչ աւանդեաց մեզ, այլ յետ ընթրեացն սկիզբն եդ նոր ‘օրինաց[11]

---

[illegible]. պարզապէս է գրել. թէ միայն [illegible] մարդն արդարանալ ոչ կարէ. այլ ուրեմն [illegible] չէ արդարութիւն։

1 Ա. ‘Երկրորդ։
2 Ա. ‘ընդ էր։
3 Ա. օրէնք։
4 Ա. ‘եւ․․’ (= եւ այլն)։
* Սորին. տառադարձիչ հատուածը հա՛ս է Ա.-ի մէջ։
5 Պակասէ յԱ.-ն։
6 Ա. ‘Հինն օրինաց։
7 Ա. ‘ի տաճարն գնային եւ զզատիկն, եւ պահքն եւ այլն ամենայն։
8 Ա. ‘մարդեղութիւնն։
9 Ա. ‘զթլփատութիւնն։
10 Պակասէ յԱ.-ն։
11 Ա. ‘օրինացն։

եւ աւանդելոց մեզ՝ առնելով. Զայս արարէք առ իմոյ յիշատակի։

[* Դարձեալ. Թլփատեցաւ Քրիստոս մարմնով, զի զերծեալ ուխտն իւր ճշմարտեսցէ եւ կատարեսցէ։ Իսկ մեզ հրամայեաց հոգեւոր թլփատութիւն, այսինքն զմեղքն հատանել ի հոգւոյ եւ ի մարմնոյ*]։

Եւ թէ 'առեն[1]. ահա հարաւային ազգն 'Հապէշի[2] թլփատին բստ օրինացն եւ են Քրիստոնեայք. նոյնպէս եւ ձեզ պարտ 'է[3] առնել։ Ասեմք. թէ նորա ոչ վասն օրինացն թլփատին. այլ՝ վասն զի աշխարհն այն վատաբեր է, եւ հատեալ անդամն այն փտի եւ մահանայ մարդն[4]։

'Եւ թէ[5] առեն. որպէս 'մկրտութիւն[6] սրբէ սկզբնական մեղքն, նոյնպէս եւ թլփատութիւնն։ Ասեմք նախ թէ թլփատութիւնն ի հին օրէնս[7] էր ընդդէմ սկզբնական 'մեղաց[8], որպէս 'օրինակն[9] եւ նմանութիւն։ Իսկ 'մկրտութիւն[10] ի նորս է ընդդէմ սկզբնական մեղաց, որպէս իր եւ ճշմարտութիւն։

---

1 Ա. 'որ առէ։
2 Ա. 'Հապաշիքն։
3 Ա. 'էր։
4 Ա. ունի. 'Եւ դարձեալ. վասն բազմութեան ծննդոց որպէս ասացաք։
5 Ա. 'Երորդ։
6 Ա. 'մկրտութիւնն։
7 Ա. 'օրէնսն։
8 Ա. 'մեղացն։
9 Ա. 'օրինակ։
10 Ա. 'մկրտութիւնն։

Պարզեալ. որպէս ի գիշերի ՛ճրագն[1] լուսաւորէ, այլ ի ծագել ՛լուսոյն[2] խաւարի, նոյնպէս ՛Թլփատութիւն[3] ի Հինն կարէր. այլ յորժամ ծագեաց ՛մկրտութեան շնորհք[4], անկարացու ՛Թլփատութեան[5] օրէնք:

Պարզեալ. մկրտութիւնն ի Հինն անօգուտ էր. զի ՛գետ[6] ոչ էր մկրտեալ Քրիստոս: Իսկ Թլփատութիւնն ի Նորս անօգուտ է, զի բարձաւ Քրիստոսիւ. այլ իւրաքանչիւր յիւրում ժամանակարգութեան: Ուստի յայտ է թէպէտ մկրտէին ի Հինն, որպէս Մովսէսին եւ Յովհաննուն, ոչ կատարէր զխորհուրդ մկրտութեան: Այսպէս թէ որ Թլփատի ի Նորս, ոչ ունի զխորհուրդ Թլփատութեան եւ ոչ սրբի ՛սկզբնական մեղաց[7]:

Պարզեալ. ՛Թլփատութիւն[8] սրբէ միայն ի սկզբնական մեղաց, որպէս ասեն ոմանք: Այլ ՛մկրտութիւն[9] սրբէ[10] սկզբնականէն եւ ի ներգործականէն. որպէս յայտ է ի Նոր ՛Հաւատացելոցն[11], որք մկրտին եւ սրբին յամենայն մեղաց: Արդ ուրեմն ոչ է հաւասար մկրտութիւնն եւ Թլփատութիւնն:

1 Ա. ՛Ճրագ:
2 Ա. ՛արեւուն:
3 Ա. ՛Թլփատութիւնն:
4 Ա. ՛շնորհք մկրտութեանն:
5 Ա. ՛Թլփատութեանն:
6 Ա. ՛գետ եւս:
7 Ա. ՛ի սկզբնական մեղացն:
8 Ա. ՛Թլփատութիւնն
9 Ա. ՛մկրտութիւնն:
10 Ա. ունի. ՛ի:
11 Ա. ՛Հաւատացելոց:

Դարձեալ. թլփատութիւնն եւ ոչ[1] սկզբնականէն սրբէ, որպէս յայտ է ի մարգարէսն. թէպէտ թլփատեցան, իջին ի դժոխս վասն սկզբնական մեղացն։ Իսկ մկրտութիւնն սրբէ. որպէս այս է. որք մկրտին ոչ 'մնան[2] ի դժոխս։

Դարձեալ. 'մկրտութիւն[3] զդուռն երկնից բանայ, զոր ոչ կարէ թլփատութիւնն, բաց 'որում[4] Որ ոչ ծնցի ջրով եւ Հոգւով, ոչ մտանէ յարքայութիւնն, թէպէտ թլփատեալք էին։

Դարձեալ. մկրտութիւնն շնորհօք որդիս առնէ Աստուծոյ եւ ժառանգակից Քրիստոսի, 'զոր ոչ ունին թլփատեալքն[5]։

Դարձեալ. մկրտութիւնն ազատէ 'ի յաւիտենից պատժոցն[6], զոր ոչ առնէ թլփատութիւնն։

Դարձեալ. մկրտութեամբն արու եւ 'էգն[7] սրբին, այլ թլփատութեամբն՝ միայն արուն 'եւ[8] ոչ էգն։

Դարձեալ. թլփատութիւնն էր կնիք մարմնաւոր, ժամանակեա եւ անցաւոր. եւ յայտ է զի փոփոխեցաւ։ Իսկ մկրտութիւնն կնիք Հոգեւոր եւ մշտնջենաւոր, զի անփոփոխ է կնիք 'մկրտութեան ի Հոգին[9]։

---

1 Ա. ունի 'ի։
2 Ա. 'մնասցեն։
3 Ա. 'մկրտութիւնն։
4 Ա. 'այնմ'։
5 Ա. 'զոր ոչ թլփատեալք։
6 Ա. 'յաւիտենից պատժոցն։
7 Ա. 'էգ։
8 Ա. 'այլ'։
9 Ա. 'մկրտութեանն ի Հոգւոյն։

Այս համեմատութեամբ բնաւ հին թլփա-տութեանն էր. այլ 'ձերդ'[1] կրճատութիւն ոչ է 'թլփատութիւն'[2], զոր ետ Աստուած Աբրահամու։ Եւ յայտ է յերկուց նախ, զի ուխտն Աբրահամու ութօրեա թլփատէին. իսկ ձերդ ոչ այնպէս, այլ զծեր եւ զաղայ 'թլփատէք'[3]։ Երկրորդ Աբրահամու ուխտեաց զարու մանկունսն թլփատել, այլ Մահմէտն ձեր՝ զարու եւ զէգն. որ է հակառակութիւն ընդդէմ օրինացն Աստուծոյ։ Զոր ցուցանեմ ընդդէմ ձեր թէ դուք 'Տաճիկքդ'[4] ոչ ունիք թլփատութիւն։ 'Եթէ'[5] զարու եւ զէգն թլփատէք, այս ընդդէմ է ուխտին Աբրահամու եւ խայտառակութիւն օրինացն Աստուծոյ։ Իսկ թէ զարուն միայն, ահա զի եւ կանայք ձեր անթլփատք են։ Եւ դուք ընդ նոսա խառնակելով, լինիք եւ դուք ընդ նոսա անթլփատք[6]. զի որ միանայ ի կին պոռնիկ, մի մարմին է եւ պոռնիկ ընդ նմա։ Եւ աստի յայտ է զի ոչինչ կերպիւ ունիք 'զթլփատութիւն'[7] որպէս Հրէայք, եւ ոչ զնորա մկրտութիւն որպէս Քրիստոնեայք։ Ուրեմն[8] երեւիք ի դասս կռապաշտից եւ հեթանոսաց[9], որք ոչ ունին թլփատու-

1 Ա. 'ձեր տաճկացդ։
2 Ա. 'թլփատութիւնն։
3 Ա. 'առնննաթէք։
4 Ա. 'Տաճիկք։
5 Ա. 'Զի թէ։
6 Պակասէ յԱ.Ն։
7 Ա. զթլփատութիւնն։
8 Ա. ունի. 'ի հարկէ։
9 Ա. ունի. 'եւ կռապաշտից։

թիւն եւ ոչ մկրտութիւն. որպէս եւ դուք ոչ ունիք։

'Այսքան առ այս[1]։

ԺԴ.

*Չորեքտասաներորդ Մոլորութիւն է Այլազգեաց[2]։*

Զի պահք ոչ ունին, ոչ զհինն Հրէից եւ ոչ զնորա՝ Քրիստոնէից։

Զոր ասեացուք, նախ 'զգանազանութիւն[3] կերակրոց, թէ որ ի նոցանէ պաշտօն պահոց է եւ որ զատկի[4]։ 'Ասեմք թէ[5] ամենայն մարմին յերկուս բաժանի. 'ի շնչաւոր եւ յանշունչ[6]. այսինքն՝ կենդանի եւ անկենդան։ Արդ՝ որ ինչ կենդանի է, որպէս ոչխար, եւ կամ՝ ի կենդանեաց յառաջ եկեալ, որպէս կաթն 'եւ ձու, այն ուտելեաց եւ[5] զատկի է կերակուր։ Եւ որ անկենդան է եւ անշունչ, որպէս բոյսք եւ պտուղք, պահոց է կերակուր[7]։ Եւ դուք զընտրութիւնս զայս ոչ ունիք. ապա ուրեմն պահք ոչ ունիք։

Նախ. զի Մովսէս զքառասուն աւր եւ զքառասուն գիշեր պահեաց եւ 'ինչ ոչ[8] եկեր։

---

1 Պակասէ յԱ.Ն.
2 Ա. 'Մոլորութիւն Տաճկաց։
3 Ա. 'զանազանութիւն։
4 Ա. ունի. 'Եւ այս զմոլորութիւն նոցա։
5 Պակասէ յԱՆ։
6 Ա. 'ի շնչաւորն եւ յանշունչն։
7 Ա. ունի. 'Որպէս Մովսէս աւրէնս եդ՝ բաղարջ հաց ընդ եղեգի ուտել ի պաշտօն, եւ գառն զենուլ ի զատկին. եւ այս աւրէնք մեզ ի նորս աւանդեցաւ։
8 Ա. 'ոչինչ։

ի գիշերն ուտէք եւ ՝ցորեկն[1] ոչ. եւ յայտ է որպէս յայլ ամիսն ոչ պահէք, նոյնպէս եւ ամիսն այն ոչ է պահք[2]։

[ա] Դարձեալ. ոչ է երեսուն օր ՝պահք[3] ձեր, այլ մի օր, զի որ այսօր պահէք, ՝յերիկունն[4] լուծանէք եւ բարեկենդան առնէք, եւ դարձեալ ի միւս օրն պահէք։

[բ] Դարձեալ ընդ տիւ եւ ընդ գիշեր լինի օր մի, որպէս ՝Մովսէս ասէ[5]. եղեւ երեկոյ եւ եղեւ վաղորդայն օր մի. արդ՝ դուք զաւուրն պահէք եւ զգիշերն լուծանէք, յայտ է զի կէս օր է պահքն ձեր եւ ոչ բոլոր։

[գ] Դարձեալ, առ Աստուած յերկինս տիւ եւ գիշեր ոչ է. այլ միշտ տիւ։ Իսկ առ մեզ ընթացք արեգականս ՝կէսէ ի կէս[6] առնէ օր մի։ Նա արեգակն ոչ ժամանեալ ՝ի կէսն[7] իւր միապէս է լուծանելն, թէ ի հասարակ աւուր թէ ընդ երեկս։

Դարձեալ. ի ցերեկս պահէք եւ ի գիշերի լուծանէք, կարծէք ՝թէ[8] ի տիւն տեսանէ Աս-

---

1 Ա. ՝ցերեկն։
2 Ա. ունի, Նոյնպէս եւ ամիսն այն ոչ է պահք։
3 Ա. ՝պահքն։
4 Ա. ՝յերեկոյն։
[ա], [բ], [գ] հատուածներու կարգը այսպէս է Ա.ի մէջ։
5 Ա. ՝ասէ Մովսէս։
6 Ա. ՝կէս ի կէս։
7 Ա. ՝ի կէս։
8 Ա. ՝եթէ։

տուած եւ ի գիշերին ոչ. ապա թէ ոչ ընդէ՞ր զգիշերին ոչ պահէր[1]:

՝Այսքան առ այս[2]:

## ԺԵ.

Հնգետասաներորդ Մոլորութիւն ՝այլազգեաց[3]:

Որ զՀայղենս ոչ ուտեն:

Եւ նախ գիտելի է զի երեք իր ոչ պղծի. ՝Մէկ[4] լեզուն թէ ընդ այլազգիս խօսի. երկրորդ՝ ձեռքն, թէպէտ զանասուն կենդանիս ՝ընկենէ[5]. երրորդ, սուրն՝ զանազան իր հատանել՝ ոչ պղծի[6]:

1 Ա. ունի. Դարձեալ. պահք եղան վասն խառութեան մարմնոյ. զի պատուեսցի ի փափկութենէ, եւ ի գինութենէ. այլ ի պահքն մեր տաւել փափկանայք եւ գինոյք զանազան կերակրովք եւ յաճախ ուտելով:

Դարձեալ. պահքն աղաչաւորութիւն է գործելեալ մեղաց. այլ ի պահքն [մեր] գործէք զամենայն ջնաստութիւն եւ զանիրաւութիւն եւ զամենայն պղծութ(ց) գործս:

Դարձեալ. պահքն է պահպանութիւն խորհրդոց, [illegible] եւ զգայարանաց: Արդ՝ ի պահքն մեր նայնպէս ունիք [illegible] խորհուրդն ի միտս մեր ու [illegible] ի լեզուս եւ [illegible] Աստուածոյ [illegible] ի գործս իւր. [illegible] ի [illegible] եւ ի [illegible] [illegible] ի [illegible] (որինակն ունի՝ "ի [illegible]") եւ [illegible] ի [illegible] [illegible] ունիք [illegible] պահք:

2 Պակասէ յԱ.Ձ.

3 Ա. ՝Տաճկաց:

4 Ա. ՝Ձ:

5 Ա. ՝ընկենեն:

6 Ա. (առաջին լուսանցքի վրայ) ՝Որ ի գուրանն է. Մուհամմէդ գրեալ է վասն զենման կենդանեաց, եթէ [illegible], որ է զանակն քրիստոնէի:

[−] Եւ թէ ասեն. վասն զի դուք 'անթլփատ[1] էք, ասեմք. եթէ 'անթլփատի[2] զենումն պիղծ է, Հայրն Աբրահամ, դեռ եւս անթլփատ գոլով, Հրամայեաց Աստուած առնուլ ոչխար 'երեմեան[3] եւ արջառ եւ նոխազ, եւ տատրակ եւ աղաւնի, եւ պատարագեաց, եւ ընդ երեկս եկեալ 'զԱստուած[4], միթէ ոչ եղեւ ընդունելի[5]:

Եւ այլ 'յառաջ[6], Նոյ 'յորժամ[7] ել ի տապանէն եւ ի սուրբ կենդանեացն պատարագեաց եւ ընկալաւ Աստուած: Նոյնպէս եւ զԱբելի պատարագն 'ընկալաւ Աստուած Հրով[8]: Եւ արդ՝ զի՞նչ ասէք. պիղծ էր նոցա զենմունքն, 'զի եւ նոքա անթլփատք էին[9]:

Եւ թէ ասեն. յայնժամ դեռ եւս ոչ էր ուխտ թլփատութեան. ասեմք թէ յայնժամ ոչ էր ուխտ թլփատութեան, եւ այժմ բարձեալ է ուխտն այն, եւ մեծագոյն ուխտ տուեալ մեզ՝ Քրիստոս: Եւ որպէս նոցա զենմունքն սուրբ էր

[−] Սորին պարագրկեալ նշանակեալ համառօտանք Ա. ի հետ են. ուստի ընթերցան կարգով:

1 Ա. 'անթլփատք:

2 Ա. 'անթլփատին:

3 Ա. 'եռամեան:

4 Ա. 'Աստուած:

5 Ա. ունի. Այլ եւ բազումք այն յառաջագոյն նախահարքն անթլփատք էին, եւ զայն ամենայն զենմունք պատարագս մատուցին Աստուծոյ, միթէ ոչ եղեն ընդունելի:

6 Ա. 'յառաջին:

7 Պակասէ յԱ. ն:

8 Ա. 'Հրով ընկալաւ, եւ նոքա անթլփատք էին:

9 Ինչպէս որ կը տեսնուի, Ա.-ի մէջ տեղափոխուած է նախադասութիւնը:

որ անթլփատք էին. նոյնպէս և ՛մեր[1] սուրբ եղիցի։

՛Այլ և ի Տմշկ[2] մեծ քաղաքն ձեր ոչ են սուննիաստեղծ[ք] քանզի որ ՛զգենմունքն[3] քրիստոնեայքն ունէին, և ատենից մարդ ոչ իշխէ մի անատուն զենուլ. մինչ և զայս կարէք ուրանալ։ Այսպէս յայտ է թէ ՛Նորագիւտ[4] ինչ է ՛թաստակութիւն[5] ձեր և խարել զհայդենն[6]։

Եւ զարձեալ. թէ այսպէս ՛խառէք[7] զքրիստոնէից զենեալն. զցորեանն զհարդ ուտէք. ՛զի[8] քրիստոնեայք հնձեն և հանեն ի կենաց, ՛և[9] զխաղող և զամենայն միրգ։ Զի նոքա անկանեն կենդանիք են և արմատացեալ են յերկրի, և հաստատեն նոցա՝ զենումն է նոցա. որպէս ցամաքային կենդանիք արմատացեալ են ի շունչն. և ձկունք՝ ի ջուրն, նոյնպէս տունկք և ՛բոյսն[10]։

1 Ա. ՛մերս։

2 Ա. ունի. ՛Այլ և Մահմետն ձեր գրեաց և ուսուցեալ՝ թէ յոր վայր որ իցէ հայ մարդ, զամենայն զենմունսն նա ունէ, և նախաւ է. և թէ քարասնից մի հետի ի չորս կողմանց ոչ իցէ քրիստոնեայ, ապա ատենից զենցէ՝ Այսպէս եթէ զուր ուրանայք զայս և ծածկէք. այլ ի Դմշկ։

3 Ա. ՛զամենայն զենմունքն։

4 Ա. ՛Նոր գիւտ։

5 Ա. ՛Թատրապութիւն։

6 Ա. ունի. ՛Եւ զարձեալ. թէ այսպէս խարող էք զենմանց. զձուկն զոր քրիստոնեայք հանեն ի ջրոյ. ընդէ՞ր զուք ուտէք։ Զոր աշա խաչ կայ ի գլուխն. և ի ձեռն քրիստոնեայ մարդոյ մեռանի ի բազում անգամ։

7 Ա. ՛խառէք։

8 — ՛զոր։

9 Ա. ունի. ՛կամ զխաղողս կամ։

10 Ա. ՛բոյսք։

յերկրի։ Եւ որ բաժանէ զշունչն ի կենդանոյն եւ զձուկն ի ջրոյն, զենումն է նոցա. Նոյնպէս որ բաժանէ զգոյն յարմատոյն՝ զենումն է նոցա։

[-]Եւ թէ ասեն. ընդէր ապա դուք 'զառաճ-կազենն[1] ոչ ուտէք, ասեմք. եթէ ընտրութիւն զենմանց երեք է. այսինքն՝ ի զենեալն, ի 'զե-նողն[2], ի զենումն։ Զենեալն, զի իցէ սուրբ կեն-դանի. որպէս ասէր[3], աղաւնի. զենումն, զի իցէ յանուն Աստուծոյ, եւ մի յանուն կռոց զոհեցի։ Իսկ ի զենողն[2] երկու ինչ պիտոյ. նախ, զի իցէ արու կատարեալ, եւ ոչ էգ կամ չէզոք, կամ մանուկ անկատար. զի ներքինական 'զօրութիւն[4] պակասէ ի նոսա. երկրորդ, զի իցէ հաւատացեալ. վասն զի անհաւատն մեղօք սպանեալ է 'զոգի[5] իւր, եւ զենեալն ի նմանէ որպէս գազանաբեկ է. վասն որոյ չէ ուտելի։ Արդ առաճիկն յանուն Աս-տուծոյ զենու, բարի է, եթէ սուրբ կենդանի իցէ. այլ զի անհաւատ է եւ 'զհոգի[6] իւր սպա-նեալ է մեղօք, եւ սպանեալն արիւն ոչ կարէ հանել։

Եւ դարձեալ. առաճիկն ախտացեալ 'զսո-դոմայական պղծութիւն[7] եւ է ի կնոջ կարգի եւ չէզոքի. յաղագս այնորիկ զենեալն ի նմանէ ա-

---

1 Ա. 'զառաճկազենն։
2 Ա. 'զենողն.
3 Ա. ունի. 'ե.։
4 Ա. 'զօրութիւնն։
5 Ա. 'զհոգին։
6 Ա. 'զհոգին։
7 Ա. 'զսոդոմայականն։

այն ՝պարտ է[1] լինել, որ գերագոյն գտանի քան զինքն։ Վասն որոյ յուսան աղքատք ի Թագաւորս։ Իսկ ազգն Տաճկաց այնպէս յուսան ի Մահմէտ որպէս թէ զրուցք ՝արքայութեան[2] նորա է։ Եւ յայտ է զի բաղում անգամ զԱստուած յիշելով երկիր ոչ պագանեն. եւ յորժամ զՄահմէտ յիշեն, անկանին ի վերայ երեսաց իւրեանց։ ՝Երկրորդ[3]. զի համբաւեն նոր օրէնս ՝գրեալ[4] Մահմէտի. զոր եւ կարի սուտ այսու։ Զի Թլփատութիւն նոցա է յօրինացն Մովսէսի, եւ լուացումն եւ աղօթք նոցա։ Զի Իսրայէլացիքն յամենայն զինուց յԵրուսաղէմ ՝աղօթէին[5] եւ նոքա՝ ի հանճն Ալլ եւ մանրին եւ մի դէմ յԱստուածական, եւ այլն[6]։ Բայց այս միայն երեւի զանազանութիւն նոցա, զի նոքա զՄահմէտ մարգարէ կոչեն եւ Քրիստոս ոչ[7]։ Չորրորդ[8]. զի ՝զարքայութիւն[9] Աստուծոյ ուտելի եւ ըմպելի քարոզեն եւ ՝առնեն[10] առնուլ մի մի իւրաքանչիւր որ ՝քառասուն կամ եօթանասուն կին, որ եւ յայտնի[11] ասա

---

1 Ա. ՝պարտի։
2 Ա. ՝արքայութեանն։
3 Ա. ՝Խնկերորդ։
4 Ա. ՝գրել։
5 Պակասէ յԱ. Ն։
6 Ա. ունի. որպէս ցուցաւ ի վերայ։
7 Ա. ունի. ՝եւ նոքա ոչ. այս ուրեմն Հրէայք են նոքա։
8 Ա. ՝Երրորդ. ի վերայ այսր ամենայնի [illegible]թիւն ուրենոց նոցա։
9 Ա. ՝արքայութիւնն։
10 Ա. ՝հարկեն։
11 Ա. ՝եօթանասուն կին. որ եւ այս։

ցուցաւ ի վերայ։ Զի զայս ամենայն 'ազգ[1] խոստովանին թէ որք մեռանին, նորա յառնեն։ Արդ՝ բազումք ի յաշխարհի նորա են, որ առանց կին 'մեռան[2], նոցա ուստի յաւելցի։ Եւ զայս եւս խոստովանին, թէ ոչ անէ անդ մարդկային բնութիւն։ Այս ուրեմն սուտ է 'օրէնք նոցա, եւ սուտ է կին առնուլն անդ․ զի կինն վասն զաւակի լինի[3]։

Դարձեալ․ զԱստուած, ասեն, պաշտեմք, եւ զբանն Աստուծոյ ուրանան։ Յայտ թէ ուն խոստովանին եւ հոգւոյ բամբին 'ոչ[4] տան։ Հաստատուն ասեն գործոց, եւ զամենայն մեղք գործեն[5]։ Եւ այլ եւս․ զգինին հարամ ասեն․ եւ ամենեքեան արբենան․ եւ զառնան զմեղ զգայարանն 'սակրով[6] թէ ձեր քահանայքն ի ժամ 'մահուն[7] սալաւաթ բերեն, եւ յեկեղեցին տարեալ հրամայէ ի հաւատոցն․ թերեւս լուեալ իցեն[8] զհրամանն ի դիմաց մեռելոյն։

Այլ եւ ասեն թէ Յիսէն գայ 'ի ղիամամթի օրն[9] եւ հարսանիք առնէ․ թերեւս լուեալ[10] զհոգեւոր հարսն եւ փեսայ Աւե-

---

1 Ա․ 'ազգք։
2 Ա․ 'մեռանին։
3 Ա․ 'կին առնուլն․ զի կինն վասն զաւակի լինի․ ապա ուրեմն սուտ է օրէնքն նոցա։
4 Ա․ 'ոչինչ։
5 Ա․ ունի․ 'եւ միայն [illegible]։
6 Պակասէ յԱ․ն։
7 Ա․ 'մահու։
8 Ա․ ունի․ [illegible] եւ։
9 Ա․ 'ի ղիամամթին։
10 Ա․ ուն․

տարանքին, եւ մարմնաւոր կարծեն ՚անմատու-թեամբ[1]:

Որ եւ Հարցանեն թէ զի՞նչ է գրեալ ի գուռն ընծայութին, իբր թէ անուն Մահմէտին: ՚Վասն զի[2] նորա որ ՚զարքայութիւն[3] մարմնա-կան առեն, այսպէս մարմնական զուռն եւ զիր կարծեն, ոչ գիտելով թէ ՚արքայութիւն ան-ասութիւն[4] է Աստուծոյ, եւ զուռն Քրիստոս է, որպէս ինքն Հրամայեաց:

Հարց զնոսա թէ առաջին Հարքն, Աբրա-համ, Մովսէս ՚եւ[5] Դաւիթ, որպէս մտին յար-քայութիւն, որ ոչ գիտէին զանուն Մահմէտին:

Եւ թէ Քրիստոս Հրամայէ. որ եսն եմ, անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի յերկինս: Ահա զի եւ Քրիստոնեայք մտանեն ՚յարքայութիւն[6] եւ զա-նուն Մահմէտին չգիտեն[7]:

Այսքան առ այս:

---

1 Ա. ՚անմահութեամբ:

2 Պակասէ յԱ.ն:

3 Ա. ՚զարքայութիւնն:

4 Ա. ՚արքայութիւնն անասութիւնն:

5 Պակասէ յԱ.ն:

6 Ա. ՚յարքայութիւնն:

7 Ա. ՚ունին. ՚Եւ թէ Մահմէտին անունն՝ զայլն առա-նայն յերկինս տանի, ինքն Մահմէտ ընդէ՞ր յերկիր եւ ոչ յերկինս: Այսպէս եւ զայլ ամենայն չարիս եւ պղծագործու-թիւն նոցա, զոր բանիւ եւ զոր գործով առնեն, խնայեմ ի թխիթ գրել. զի մի առողականացն ունկն լսելիք ձեր: Այլ այս փոքր ի շատէ, զի ծանիցէք զմոլար աւրէնքն նոցա. եւ բան առ բան պատասխանիցէք եւ մի յաղթիցիք:

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

*Գր. Տաթեւացին, իմ ծանօթութեան սահմանին մէջ, միակ հայ մատենագիրն է նախնեաց մէջ, որ կանոնաւոր քննութեան մը ենթարկած է Իսլամը, քրիստոնէական դիտակէտէ, ցոյց տալու համար առաջինին մարդկային ծագումը եւ վեր հանելով վերջինին առաւելութիւնը իբրեւ աստուածային յայտնութիւն:*

*Տաթեւացիէն յառաջ սակայն կա՛ն խումբ մը հայ մատենագիրներ որ գրած են, առասպելական տեղեկութիւններով, Մահմէտի եւ Իսլամի ծագման մասին, ամէնքն ալ, ինչպէս կը թուի ինծի, միակ աղբիւրէ մը քաղելով իրենց այդ տեղեկութիւնները առաւել կամ նուազ ընդարձակութեամբ: Խորհեցայ որ շատ հետաքրքրական պիտի ըլլայ անոնց աղբիւրին հրատարակութիւնը իբրեւ Յաւելուած Տաթեւացիի այս գործին վերջը:*

*Առասպելախառն գրողներու խումբին մէջ ուշագրաւ է Մխիթար Անեցի, ԺԲ. դարուն վերջը:*

*Բ. Պատկանեան 1879ին հրատարակեց Մխ. Անեցիին պատմութեան Ա. Մասը կամ Սկիզբը*[1]*, որու վերջին գլուխներէն ԻԵ. եւ ԻԶ.ը կը վերաբերին Իսլամի ծագման, ԻԵ.ին վերնագիրն է՝*

— «Վասն առասպելաց անօրէն Մահմէտի եւ նորին ստութեան, զոր խայտառակէ նորին աշակերտն»:

---

[1] Մխիթարայ Անեցւոյ Պատմութիւն. *Սկիզբն, Գլուխ ԻԷ, եւ Յաւելուածք, Տփ. 1879. Ք. Պատկանեանց* (Աերէտի *վերջը*):

Ք․ Պատկանեան իբրեւ Յաւելուած գրած է Մխ․ Անեցիին վերջը հինգ Մատենագիրներու գրուածները միեւնոյն նիւթին վրայ․ այսինքն՝ Վարդանայ, Սամուէլի Անեցւոյ, Կիրակոսի, Կաղանկատուացւոյ, Թովմայի Արծրունւոյ ։

Այս հինգ մատենագիրները չեն բաւած թէ ո՛ր տեղէ քաղած են իրենց տեղեկութիւնները, որոնք, ինչպէս դիտել տուինք, առաւել կամ նուազ ընդարձակութեամբ օգտուած են միեւնոյն աղբիւրէ ։

Ասոնց մէջ մանաւորապէս Մխ․ Անեցին է որ գրաւեց ուշադրութիւնս, որովհետեւ անոր բուն օրինակը գտայ Ս․ Յակոբի Մատենադարանին Թիւ 1288 Ձեռագրին մէջ։

Այս Ձեռագիրը Հաւաքածոյ մըն է այլազան եւ զարմանազան նիւթերու, գրուած ՉԻԲ = 1273ին, «ի սուրբ եւ ի հռչակաւոր վանս Դեղկաս», Մխիթար գրիչի մը ձեռքով, ի վայելումն իւր անձին ։ Գրչութիւնը ուշագրաւ բոլորգիր մըն է անգման ։ Ձեռագիրս նորոգուած է ՌՀԴ = 1624ին, ի Թէքիրտաղ, Աստուածատուր Քահանայի եւ Սարգիս Արեգայի ձեռքով ։ Նորոգել տուողն է Գրիգոր Վարդապետ (Դարանաղցին անշուշտ) ։ Նորոգողներու Յիշատակարանին համեմատ գիրքս «կոչի Հարցմանց Վանական Վարդապետի, Վարդանայ, որ ծաղկաւէտ եւ լուսաւոր բանիւք լի է» ։

Ձեռագրիս մէջ Մահմէտի վրայ գրուած հատուածը կը բռնէ 231 բ—238 ա երեսները․ իսկ հատուածին սկիզբը, քանի լուսանցքի վրայ գրուած է ԺԸ․ հատուածաթիւը, հաւանաբար ցուցակագիր Սուքիասեանցի կողմէն ։ Հատուածին վերնագիրն է

ի Թաշունէն եղածու ։

*Ահաւասիկ Մխ. Անեցւոյն աղբիւրը, զոր ծածկած է ինքն եւ սուտ տեղ դրած է «վասն տառապելոյ» եւ այլն վերնագիրը։*

*Մեր Զեռագրին հատուածը կը սկսի սա՛ բառերով.* «ի ժամանակս Մահմեդի խաբեայ առ մեզ այր նշմարիտ, որ զրով երող մեզ զպատմութիւն ի սկզբանցն հաւատոյն Մահմեդի։ Բանզի այսպէս ասէ, *զհետ բառած աշխարհապատմութեանցն*, վասն անն որ զկնի շրջեալ էր Մահմեդի, զիւր աչաց տեսիլն ասէ ստուգութեամբ։ Զոր կամեցա գրել ձեզ. *զի ուշիք եւ մի՛ հաւատայցէք նոցա բանիցն» եւ այլն։*

*Հատուածիս վերնագիրն ու սկսուածը կը թելադրեն մեզ հարցնել թէ ո՞վ է* Փաշունի *կամ ի՞նչ է. ո՞վ է այն «այր ճշմարիտ»ը, որ «զկնի շրջեալ Մահմեդի» եւ «գրով» թողած է ինչ որ տեսած է իր աչքով. եւ վերջապէս ո՞վ է այն որ կ՚ըսէ «զոր կամեցա գրել ձեզ» եւ որո՞նց կ՚ուղղուի խօսքը։*

*Գոհացուցիչ պատասխաններ չենք գտներ այս հարցումներուն համար։*

*Հատուածիս մէջ հետաքրքրական տեղեկութիւն մըն ալ կը տրուի Մահմէտի վերջինեայ աշակերտին վրայ. — «Զայս ասեայն յայտնեաց մեզ ոմն յաշակերտացն Մահմեդի, որ ինքն իսկ ի բուռն սկզբանն ամենայնի լեալ էր, եւ դարձուցեալ ի դիւացն երդմանէ փախեաւ ի կղզին Կրետացւոց եւ անդ քրիստոնէացաւ եւ հաւատաց ի Քրիստոս»։ Ահա՛ յաւելուածական տեղեկութիւն մըն ալ Մահմեդի աշակերտին վրայ, որ փախեր է Կրետէ եւ հո՛ն քրիստոնեայ եղած է։*

*Այդ բոլոր հարցումներուն պատասխանը հաւանաբար պիտի գտնէինք* Փաշունի *մէջ, եթէ գիտնայինք թէ* ո՛վ է *ան կամ* ի՛նչ է.

այսինքն՝ Քաշունի յատուկ անո՞ւն մըն է, եթէ ոչ Քարշունիի մէկ փոփոխակը (variante), որ Հայերէնի մէջ կրճատուած է ր տառը եւ եղած է Քաշունի:

Քարշունի կը նշանակէ ասորերէն այբուբենով արաբերէն գրուած², Հայերէն տառերով Թիւրքերէն գրուածներու պէս:

Քաշունիի յիշեցնող յատուկ անուն մըն ալ կայ, Սմրգանդցի Էլ-Քաշի կամ Էլ-Քաշունի (մեռած 887/1482), որ գրած է Ղուրանի մեկնութիւն մը³, բայց անիկա ԺԵրդ դարու մարդ է եւ չի կրնար ոեւէ աղերս ունենալ մեր Քաշունիի հետ:

Եթէ յատուկ անուն մը չէ Քաշունի, այդ պարագային պէտք է ենթադրել որ Քարշունիի գրուածէ մը քաղուած ըլլայ մեր Թիւ 1288 Ձեռագրին հատուածը, եւ հետեւաբար կրնայ ըսուիլ թէ ասորի քրիստոնեայ մըն է հեղինակը այդ քաղուածին, որ Հայերէնի թարգմանուած է մեր Ձեռագրին գրչութեան թուականէն (1273) շատ յառաջ:

Մեր Ձեռագիրը կապուած է Յովհ. Վանական Վարդապետի եւ Վարդանի անուններուն հետ: Թողունք Վարդանը, որովհետեւ մէկէ աւելի են նոյնանուն ժամանակակից անձեր եւ շփոթուած իրարու հետ, ու առնենք Վանականի Թուականը, 1181—† 1251. արդ՝ կարելի՞ է ըսել թէ Վանական եղած ըլլայ այդ հատուածին թարգմանիչը կամ քաղողը: Դժուար է հաստատական պատասխան տալ այս հարցումին. որովհետեւ Թովմա Արծրունի (Թ. դար) արդէն ծանօթ է

² Ծանօթ է դեռ Քարշունի գրականութեան ծագումը (տես Encyclopédie de l'Islam, p. 821):

³ I. Goldziher, Le Dogme et la Loi de l'Islam, թրգմ. Felix Arin, Paris 1920. էջ 274. ծնթ. 75:

Մաշտոցի վերաբերեալ զրոյցներու ։ Կը հետեւի թէ Թ. Արծրունիէն այ յառաջ Մաշտոցի եւ Իսահակի վերաբերեալ նիւթեր գրուած էին հայ մատենագրութեան մէջ ։

Այս այժմ մեզի համար կարեւորը Մխ. Անեցիի հատուածներուն եւ «ի Քաշունէ քաղուածոյ»ին նոյնութիւնն է ։

Թէ՛ Վահանական եւ թէ Մխ. Անեցի նոյն գաղափար մատենագիրներ են, եւ յայտնի է որ այս վերջինը աչքի առջեւ ունեցած է Քաշունէ քաղուածոն եւ ընդօրինակած է զայն կրճատումներով եւ փոփոխութիւններով ։

Դիտել է զիտել նաեւ երկու օրինակներն այ խանգարուած են յեղուի կողմէն, անշուշտ անհմուտ ընդօրինակողներու գրչով. սակայն տեղ տեղ գիրքեր կը սրբագրեն անոնք ։

Երկու օրինակներուն դէմ առ դէմ հրատարակութեամբ երեւան կու գայ Մխ. Անեցիին աղբիւրը եւ միանգամայն կը տեսնուի թէ ինչպիսի կրճատումներ եւ փոփոխութիւններ բրած է Մխ. Անեցին զայն ընդօրինակելու ատեն ։

Հ. Ն. Ակինեան Մխ. Անեցիի գրածներուն վրայ խօսելով կ՚ըսէ. «որոնց («պատմագրոց») աղբիւրն թէպէտ եւ չի յիշատակեր, բայց հաւանօրէն քաղուած են Տարօնոյ պատմութենէն, դատելով ոճէն եւ այլ պարագաներէն» (Մատենագրական Հետազօտութիւնք, Ա., էջ 195—196. Ազգ. Մատենադարան ԿԳ.) ։

Քանի որ Քաշունեաց երեւան եկաւ Մխ. Անեցիին աղբիւրը, Տարօնն կը մնայ իր տեղը ։ Գալով յեղուին, հակառակ ակնյայտնի խանգարումներու, ինկած չէ ան եւ շատ բարձր է Տարօնի վերագրուած գործին ռամկախառն հայերէնէն ։

## Ի ԹՌՉՈՒՆԷՆ ԹՌԴՌԾՈՒ*

[Վասն Մահմեդի:]

*Ի ժամանակս Մահմեդի, հանեալ առ մեզ այր ճշմարիտ, որ գրով եխող մեզ զպատմութիւն ի սկզբանցն հաւատոյն Մահմեդի:*

*Քանզի այսպէս ասէ, զհետ բազում աշխարհապատմութեանցն, վասն առն որ զկնի շրջե[ա]լ էր Մահմեդի. զիւր աչաց տեսիլն ասէ տառապութեամբ: Զոր կամեցա[յ] գրել ձեզ, զի ուսջիք եւ մի՛ հաւատայցէք նոցայ բանիցն, եւ կամ զի զաստուած յիշեն միշտ՝ աստուածապաշտ կարծիցէք:*

*Իսկ ցեղն որ կոչի Կուրէշ[1], եւ լինի յԱբրահամէ մինչեւ ցՄահմէդ. զա՛ է թիւ որդոց: Է՛ հայր ամենեցուն Աբրահամ:*

*Արդ՝ ծնանի Մահմէդ ի քաղաքին որ կոչի Մադինայ. մերձ ի Մաքայ երկուց աւուրց գնացք: Եւ վախճանի ի նոյն քաղաքի:*

*Եւ ի զ(ն)այն Քրիստոսի Աստուծոյ մե—*

---

* *Երկու օրինակներուն տարբերութիւնները չենք ուզեր մի առ մի նշանակել՝ ծանօթութիւններով խճողելու համար յուսանցքները. որովհետեւ ուշադիր ընթերցումով կարելի է գիտել այդ տարբերութիւնները թէ՛ ոճի, թէ՛ ուղղագրութեան եւ թէ՛ համառօտութեան կողմէն:*

Ի Թաչունեէ Թաղածուի *մէջէն քանի մը օտար բառերու նշանակութիւնը եւ բացատրութիւնները միայն դիտել տանք. որովհետեւ շարք մը բառեր եւ բացատրութիւններ արդէն տրուած են Մխ. Անեցիի հրատարակչին, Ք. Պ.ի կողմէն:*

[1] Կուրէիշ *կամ* Կօրէիշ: *Իսմայէլի ցեղապետին*

## ՄԽԻԹԱՐ ԱՆԵՑԻ

(էջ 35—43։)

### ԻԵ. Վասն առասպելաց անաւրէն Մահմէդի եւ նորին սուտ-րեան զոր խայտառակէ նորին աշակերտն։

*Իբրեւ եհաս մեզ պատմել զանաւրէնն Մահմետայ զխցուք զկնի զմոլորութեան նորա զյաճախութիւնն, զի խայտառ առնիցես եւ փախիցես ի նորին աղանդէ, ո՛վ դու քրիստոսասէր անձն։ Զոր մինչեւ ցայսաւր դեռ եւս անգիտութեամբ երթեալ ի Հէձն եւ ի Մաքայ, մատուցանեն նուէրս դիւաց, եւ կատարեն անմտաբար զխորհուրդ առաջին կռամոլ դիւապաշտութեանն, ոչ գիտելով զինչ գործեն։ Զոր առաւել կարես գիտել զգործս նոցա, զոր նոքայն անգիտաբար համարին աստուածպաշտութիւն զդիւապաշտութիւնն։*

---

*մէջ կայ* Առնան *անուն մէկը, որ ապրած է Քրիստոսէ գրեթէ* 30 *տարի յառաջ։ Իսկ Քրիստոսի* 200 *թուականին* Առնանի *սերունդին մէջ* Ֆինր *անուն մէկը կոչուած է* էլ-Կորէիշ, *որ նախահայրը եղած է Կորէիշեան ցեղին, որ տիրապետողը եղաւ Մէքքէի մէջ։ Յայտնի չէ* Կորէիշ *բառին իմաստը։ Վեց տեսակ ստուգաբանութիւն առաջարկուած է, որոնցմէ մէկին համեմատ* Կորէիշ *պիտի ըլլայ նուազականը* Կարշ *բառին, որ կը նշանակէ տեսակ մը շատ որկրամոլ ձուկ որ կուլ կու տայ ուրիշ ձուկերը (տես Քազիմիրսքի. Կուրան, էջ* I—V)։

րայ՝ թագաւոր քրիստոնէութեան հաստատեցան, որք ունէին պնդութեամբ զհաւատն մինչեւ ցայսօր ժամանակի[2], եւ որք ո՛չ հաստատեցան քրիստոնէութեան, զպաշտամունս իւրեանց ցխորքն անապատանին եւսուն, մինչեւ ի ժամանակս Հերակլի թագաւորին Յունաց, եւ վերջին Սասանեանց որ Ազկերտն կոչեցաւ, թագաւոր Պարսից։

Արդ՝ եթէ կամեցիս գիտել զթիւ ժամանակաց, որ լինի յԱդամա մինչեւ ցխաչելութիւնն Քրիստոսի ՐՃՂԸ (= 5198) ամ. իսկ անտի մինչեւ ցքրիստոնէանալն Կոստանդիանոսի ՄՂԱ (= 291) ամ. եւ ի քսան ամէն Կոստանդիանոսի մինչեւ ի ԺԵ (= 15) ամն Հերակլի, յորում եղեւ դարձ սուրբ խաչին յԵրուսաղէմ, ՄԶ (= 206) ամ։ Ի նորին Հերակլի ժամանակի, ասեն, եւ ի Սասանեան Պարսից արքայ[յ]ին, զյայտնութիւն սուտ մարգարէին Մահմէդի։ Եւ էր յայնժամ Հա[յոց] թուականն ԿԵ (65 + 551 = 616)։ Եւ այլք ի Հերակլի թագաւորին աւուրքն ասեն զՄահմէդ։

Եւ եղեւ ի ժամանակին յայնմիկ այր մի, անուն Մահմէդ, յազգէն որ կոչի Կուրէշ, յորդայն Կեդարու, երկրորդ որդայն Իսմայէլի, որոյ եկեալ ի սուրբ լեառն Սինէական, աշակերտեցաւ մ[ի]անակեցի, որում անուն Սարգիս, արիանոս, որ գիտէր լեզու տաճկերէն. որոյ ասեալ զնոյն, կամելով ճշմարտութեամբ ի վերայ ամենայնի հաստացանել, սկիզբն արարեալ ի լինելութենէ արարածոց, ըստ եղեալ ընթերցելոյ նմա զԳիրս Ծննդոց, եւ զայլ ամենայն հին գրեանս

[2] Արաբիոյ մէջ ծագկեալ Քրիստոնէութիւն մը կար իսլամէն յառաջ (տես F. Nauի բրած ուսումնասիրութիւնը այս մասին L’expansion nestorienne

Եւ եղեւ, ասէ, ի ժամանակին յայնմիկ այր մի, անուն Մահմէտ, յազգէն որ կոչի Կուրէշ, յորդւոց Կեդարայ, յերկրորդատան ցեղից Իսմայէլի։ Որոյ եկեալ ի սուրբ լեառն Սինէական, աշակերտեցաւ միայնակեցի ումեմն, որ գիտէր լեզու Իսմայէլացի եւ պարսիկ, անուն Բխիրայ. որոյ ասեալ զնա՝ կամելով հնարաւորութեամբ ամենայնի ի վերայ հաստատանել, սկիզբն արարեալ ի լինելութենէ արարածոց, ոչ եղեալ ընթեռնոյր նմա զԳիրս Ծննդոց եւ զայլսն ամենայն կարգաւ,

---

en Asie խորագրին ներքեւ Annales du Musée Guimet, Tome 40, p. 205—237: — Solomon Reinach, Orpheus, 1914. էջ 235 ։։.

եւ զնոր Կտակարանս եւ զգիրսն զոր Յի-սուսի մանկութեանն կոչեն։

Եւ մինչդեռ ականջալուր միայն էին նմա գիրք աստուածաշունչք եւ ոչ հասու լեալ աւետարանէն, հաւանեալ նմա պատճառ՝ գնալ ի Ներքսաղոյն անապատն, եւ այնու-հետեւ ոչ եւս դառնալ առ վարդապետն իւր։ Եւ ոչ միայն նորա ախորժին զՔրիստոնէու-թիւն, այլ խորհուրդք նորա յուզէին գիտել թէ զի՞նչ է Հրէութիւն։ Եւ պատահեալ նմա հրէի ումեմն վաճառականի, աղերսեաց ի նմանէ զկարգ եւ զհաւատս նոցին, անդա-նեաց եւ զայն եւս։ Եւ սկսաւ մտացածին յինքենէ առնել հաւատ նոր, ճշմարտութեան հակառակ եւ ստութիւն․ եւ խառնեալ զամե-նայն պաշտամունս նմանն նոցին, եւ զիւրն միայն աւրինադրէր։ Երթեալ ի գեղն Մա-քա, որ անդր է քան զԵթրեփ Մադինայ, որ է նոցա քաղաք, քարոզեաց բազ կամաց եւ բազ ախորժակաց, ասելով զտուն աւ-մարանին, այսինքն պաշտաման աւձից․ տուն Աստուծոյ եւ տուն Աբրահամու, եւ անուա-նեալ Ալ Քաապա։ Եւ ասաց թէ Իսմայէլ ա-րար զին սա է տուն նորա։ Եւ կարաւտա-ցեալ տեսանել զնա Աբրահամու, ասէ ցՍա-րայ․ «Արձակեա՛ զիս․ զի երթեալ տեսից զորդին իմ»։ Իսկ Սառայի երկուցեալ, թէ դուցէ մերձեսցի առ աղախինն, զերդումն Աստուծոյ դնէ ի վերայ նորա թէ «մի՛ իջցես ի դրանէդ ի գետին, այլ ի վերայ կալով քո տեսցես զորդին քո եւ դարձցես այսրէն»։ Եւ եկեալ նորա ո՛չ պատահէր Իսմայէլի, քանզի յորս անցեալ էր։ Եւ հարցանէ ցկինն թէ «ո՞ւր է երթեալ այրն քո»։ Եւ նորա թշնամանեալ անդրանեաց զնա, ասէ․ «զա-ռանցեալ խանդարեալ ալեւոր, յի՞նչ պէտս

նորա թէ մի՛ իջցես ի դրախտէն ի գետին, այլ ի վերա[յ] կայով քո տեսցես զորդին քո, և դարձցի՛ս այսրէն․ և նա եկեալ ո՛չ պատահեաց Իսմայէլի, քանզի յորս գնացեալ էր․ և հարցանէ զկինն թէ ո՛ւր գնացեալ է այր քո, և նորա թշնամանե[ա]լ զնա, ասէ․ Զառանցեալ և խանդարե[ա]լ ալևոր, յի՞նչ պէտս յուզես զայր իմ․ և նա ասէ․ Ասասջիր ցայր քո, ո՛չ բարիոք են դրունք տան քո․ ի բաց փոխեա զդայ, ա՛յլ աննեյով դուրս:

Եւ եկեալ Իսմայէլ յորսոյն, ո՛չ ասաց ցնա կին իւր, անծանօթ արարեալ զպատուէրն Աբրահամու: Այլ Իսմայէլ զհատն տեսեալ զհատքն, հարցանէր զկինն թէ ե՞կ ոք այսր․ և նա ասէ, Այո (sic!) ալևոր մի․ Հարցանէր Իսմայէլ թէ զի՞նչ խօսեցաւ, և ի պատմել կնոջն զխօսս Իսմայէլ թէ զկնոջէն ասացեալ է, արձակէ զնա և առնէ իւր ա՛յլ կին․ Սոյնպէս պատահեաց և երկրորդ կնոջն և երրորդ կնոջն, մինչև ցևթներորդ կինն․ զի նոյն աստ զԱբրահամ, Հայր բարի, է՞ջ ի դրախտէն, զի ածից զզլուխ քո, և նա ո՛չ հաւանեցաւ՝ մինչև թախանձեաց զնա կինն: Այսպէս իջեալ Աբրահամ ո՛չ ի գետին վասն երդմանն Սառայի, այլ եղ զմի ոտն ի վերայ միմին և զմիւսն ի հեծանելոյն, ի դրախտէն ոչ իջեալ․ և միմին անդի առեալ մի ոտին զհետն ցուցանէ:

Զայս այսպէս տեսանելեաց Մահմէդ, և զկարգ երկրպագութեան ապաւինցն յամէն կողմանց յայն տունն առաց լինել․ իսկ ի ներքս ի տանն չուրջ զայով զորմաքն երկրպագել ի մէջն, որ մինչ ևս ծակ աւձիցն:

Դարձեալ՝ զարտաքին մինաճն (միմնաճն?), որ զանահեան Աբրահամու ասաց, չուրջ

խնդրեա զայրն իմ»։ Եւ նա ասէ. «տեսցես զայր քո, ոչ բարւոք են զրուցք տան քո. ի բաց փոխեա՛ զդա, ա՛յլ անձեյալ զրուցն»։

Եւ եկեալ Իսմայէլ յորսայն ոչ տաց նմա կինն իւր, անփոյթ արարեալ զպատուէրն Աբրահամու։ Այլ Իսմայէլ առեալ զհաւորն, հարցանէր զկինն թէ «Ե՞կ ոք այսր»։ Եւ նա ասէ. «Ալեւոր մի»։ Հարցանէ Իսմայէլ, թէ «զի՞նչ խաւսեցաւ»։ Եւ պատմեալ կնոջն։ Գիտաց Իսմայէլ եթէ զկնոջէն առացեալ է, արձակէ զնա եւ այլ առնու կին։ Այնպէս պատահեալ երկիրորդ կնոջն եւ երրորդ, մինչեւ ցեւթներորդն։ Եւ նա ասէ զԱբրահամ. «Բարի եկիր, հայր. է՞ջ ի գրաստէզ. զի աւծից զգլուխ քո»։ Եւ նա ասէ. «ոչ հաւանիմ»։ Եւ իբրեւ թախանձէր զնա կինն, իջեալ Աբրահամու, ոչ ի գետինն՝ վասն երդմանն Սառայի, այլ մի ոտն ի վերայ վիմին եւ մի ոտն հեծնելոյն։ Եւ վէմն տեղի առեալ ոտին, ցուցանէր զտեղին։

Զայս այսպէս ուսայց յառասպելաց։ Եւ յամենայն կողմանց զերկրպագութիւն քարին այնմիկ եւ տանն հրամայեաց մատուցանել։ Եւ ի ներքս ի տանն, կալով շուրջ զքարիւն, երկիրպագել հրամայէր, որ միւս վէմն է եւ ծակ ոտիցն։

Դարձեալ զարտաքին վիմոյն ուր տանցան Աբրահամու, հրամայեաց շուրջ գալ,

գայով՝ միասանի վազելով առեն. լբայք, լբայք, որպէս թէ պատասխանի տնելով թէ ի՞նչ առէք, կամ յայ. յայ, կամ Աւասիկ եմ:

Դարձեալ՝ ի ձորն անգեայ, որում Վողնայ համամն[1] կոչեն, առնեն ի նմայ ապարանս անտառոյ, եւ հեծեալ ի գրաստ փախչին անյետադառնալի, առնի մինչեւ ցբլուրն մասն ի Մարայ: Եւ ի փախչելն թէ բաձկան կամ այլ ինչ ասմեք անկանիցի, ո՛չ դառնան առնուլ. եւ եթէ գրաստ արուք գլորի եւ զմարդն ջարդէ, ընկերքն ոչ դառնան յարուցանել զնա. եւ յետ այնր հեռի յասա ընթանան ի մէջ երկուց վիմաց մեծաց, զոր անուանեն սափայ, եւ եմրայ, եւ ընթանալ վիմէ ի վէմ եւթն անգամ անհանգիստ, ո՛րչափ ուժն բաւիցէ: Յետ այնորիկ ընթանան յայլ տեղի, զոր Մահսալհատայ[5] անուանեն. եւթն անգամ ընթանան եւ քարինս ձգեն, եւ ո՛չ յայտ է թէ ո՛ւմ ձգեն քարինս. նոյնպէս եւ զայլսն ո՛չ գիտեն զոր ինչ առնեն. այլ միայն առեն թէ Մահմէդ այսպէս արար, եւ մեզ պատուիրեաց առնել թէ այդպէս արարէք. զի եւ Աբրահամ զայնպէս արար.

Անողորմութեամբ է առագուածն Մահմէդի. երկրորդ բանիւ զատաջինն յուծանելով: Եւ ո՛չ ապաւանանեն զանեզե[ա]լն զայն զե–

[1] Վողնայ համամ տեղի է, եւ բոլորովին պարատուած է Մի. Անեցիի որինակին մէջ Վողոյն այ համար ձեւով: Ուղիղն է Վադի էլ Հէննամ կամ Վադին Հէննամ (وادی جهنم) Մէքքէի եւ Մէտինէի միջեւ Ջոր մը:

[5] Թէ՛ Մահսալհատայ եւ թէ՛ Մի. Անեցիի որինակին Մահս ալհատ աղաւաղուած են, պէտք է ըլլայ Մահամ ալհատ ([illegible]) Տեղի քարի կամ Տեղի քարանդութեան:

մխտանի փաղփաղելով ասել «լրայք, լրայք», որպէս թէ պատասխանի ումեք ասելով՝ «յայ, յայ. ուաա, ուաա»:

Դարձեալ ի ձորն անցեալ, որում Վարդն այ Համարն կոչեն, ասեն ի նմա սպանումն անասնոց: Եւ հեծեալ ի գրաստ փախչին անդառնալի մինչեւ ցբլուրն, մերձ ի Մաքա: Եւ ի փախչելն, եթէ բաճկոն ուրուք անկանիցի եւ զհեծեալն իւր ջարդէ, ոչ դառնան յարուցանել: Եւ յետ այնորիկ ընթանալով ի մէջ երկուց վիմաց հետի, զոր անուանեն Սափա եւ Եմրան, ընթանան վիմէ ի վէմ է անգամ անհանգիստ, որչափ եւ ամն բանական լինի: Եւ յետ այնր ընթանան յայլ տեղի, զոր Մաքա այ Հաս անուանեն. է անգամ ընթանան եւ զքարինս ձգեն, եւ ոչ յայտ է, թէ ո՞ւմ զքարինս ձգեն: Այլ միայն ասեն, եթէ Մահմէտ այսպէս արար: Եւ հրամայեալ ասելով, թէ Աբրահամ դոյնպէս արար:

Անզգուշութեամբ է ասացեալն ի նմանէ. զի ասաց՝ ոչ էջ ի գրաստէն, եւ յետոյ ասեաց, թէ ընթանայր եւ քարինս ձգէր: Եւ

Քարաձգութիւնը վերջնամնացութիւնն է Քարապաշտութեան վաղնջական պաշտամունքին: Կարկառները (քարակոյտ), թուրք. Թէքէլիւք, ըլլան բնական, ըլլան արհեստական, առարկայ էին պաշտամունքի: Քարաձգութիւնը (քար նետելը) ունէր չար հեռացնելու դիտումով եղած կրօնական արարողութիւն մըն է, որ մնացած է Մէքքէի ուխտաւորներուն կրօնական պարտականութեանց մէջ:

ոտնս եւ ստորոտս եւ գագաթս․ վասն որոյ եւ ուղղն բնակեա[լ]ք ի տանն՝ խառն ընդ մարդկան չրջին, եւ ո՛չ մնասեն ամեք մեղանչելով, որոս զնոսայ մուսլիմանս անտառանեն յիւրեանց անուն․ այսի[ն]քն խաւստացեալս, եւ պատե[ա]լ ծանկեն գտոսնն եւթն հանդերձիւ, եւ ի համբոյր երթան հանդերձին եւ ի վերայ աչացն դնեն։

Արդ՝ ո՛չ երեւի ձեզ մոլորութիւն չարփազփութիւն մոլորութեան նոցայ․ քանզի բազումք ոչ զիտացեալ զայս ամենայն, անտանեն զաղգս նոցայ ամենայն պաշտամանց պարսայ[եալ?], եւ փոյթ յաղութս, եւ խաւսել համարսայ Աստուծով, որ կարծեն զնոսայ հաւատալ ինչ ունել․ վասն որոյ կարեւոր համարեցաք յայտնել զծածկեալս նոցա խաբէութիւն։

Տան զոր կոչեն Արբայամոս, ո՛չ երբեք երթեալ է անդ Աբրայամու եւ ո՛չ Իսմաէլի, որպէս աստուածա[յ]ինքն պատմեն վկա[յ]ութիւնք․ այլ է նա կռոց եւ ածից պաշտաման, զոր անհմարան զոլ ի միջոցի տանն, ուր անուցանէ զաւձն մինչեւ ցայսաւր ժամանակի, որպէս վերադոյն ասացաք։

Իսկ զկուռսն բարձեալ տապատակին Եղիպտացոցն, որք ի ժամանակին Տրայիանոսի, քանզի պղնձիք էին, ընդ այլոյն ուր զիքն էին, կանգնեցին յԱղեքսանդրիայ։ Իսկ Տաճկացն զանեալ զկուռսն Դամասկոսի, զԹ[ի]մանայ յանապատի ուրեմն, զոր ի գալ Քրիստոնէութեանն՝ երկուցեալ քրմաց նորայ թէ զուցէ ի ձեռս քրիստոնէից անկեալ փշրեսցի, առեալ փախստական զնոցին յանապատ անդր․ զոր [ի] վերջո[յ] զտեալ կոտապաշտացն Տաճկաց, տարեալ ի Մաքայ հանդերձ քրմովն․ որ ի տանն յայն անդի էր

ոչ ապականեն ի տեղւոջն յայն գետոյն եւ տղղուն եւ գազանս, վասն ահագին որք բնակեալ ի տանն, խառն ընդ մարդկանն շրջին եւ ոչ մեռանեն ամենք, զորս մուայլս անուանեն, այսինքն հաւատացեալս: Եւ պատեալ ծածկեն զտունն է հանդերձիւ, եւ համբոյր երթեալ հանդերձին, ի վերայ աչաց դնեն:

Արդ՝ ոչ երեւի ի ձեզ մոլար խաբէութիւն չաղփաղփութեան նոցա: Քանզի բազումք ոչ գիտացեալ զայս ամենայն անտանեն զայդս մարդկանն յամենայն պաշտամունս ապարաց եւ փոյթ յադաւթս եւ խաւել հանապազ Աստուծոյ եւ կարծեն հաւատացեալս: Վասն որոյ կարեւոր համարեցայ յայտնել զծածկեալս խաբէութեան նոցա:

Տունն զոր կոչեն Աբրահամու, ոչ երբէք երթեալ անդ Աբրահամ եւ ոչ Իսմայէլ, որպէս եւ աստուածայինքն վկայեն պատմութիւնք: Այլ է նա տուն կռոց եւ ահագին պաշտաման. զի առհմարան գոլ ի միջոցի տանն ուր անուանեն զաւձան մինչեւ ցայսօր ժամանակի, որպէս եւ ասացաք:

Իսկ զկուռն բարձեալ տապանակին Եգիպտացւոց որք ի ժամանակին Տիւոփանոսի: Քանզի անդրիք աղնձիք էին ընդ այլ զխոն, զոր կանգնեցին յԱղեքսանդրիայ: Յայնժամ տաճկացն գտեալ զայլ կուռս, այսինքն զկուռս Դիմակոսի Թիմանոյ յանապատի արեւմ. զոր ի զալ քրիստոնէութեանս երկուցեալ քրմաց նորա, թէ զուցէ ի ձեռն քրիստոնէից անկեալ փշրեսցի, տարեալ փախստական զնոսին յանապատ անդ: Զայն գտեալ կռապաշտացն Տաճկաց, տարեալ ի Մաքա հանդերձ քրմովն նորին,

տուաչի կուոցն, կամեցան կանգնել։ Իսկ սաձաղաշա քրմացն ոչ հաւանեալ զկուռս ատարայ քրմացն յիւրեանց տանն կանգնեցուցանել, հաւանեցուցին զամբոխն զառն աձիցն բռնակալն համարել, որպէս թէ ո՛չ ախորժեն ուձքն զաւառք քուրմսն յիւրեանց ընակարանի. եւ այսպէս պատճառե[ա]լ՝ արտաքոյ զրանն կացուցին, ի վերայ վիմին, ի մի ոտին կարով, իբր թէ այնպէս է պատկերն Թամանայ, իբրեւ Զփիեայ պատկերն թէ նա ինքն իցէ Փեսաոա Թամանայ [6], ի Դամակացոցն անուանե[ա]լ, ոչ գիտեմ։ Եւ նոցա երկաթով բրե[ա]լ՝ հեռ արարին, եւ կապարով պնդեալ՝ ի մի ոտինն վերայ կացուցին զնայ ի վերա[յ] վիմին, զոր ի ժամանակս Մեծին Թէոդոսի ո՛չ Աղուչանայ եղեւ պաշտանէ[ի]ց նորայ. քանզի արտաքո[յ] շինուածին էր, զողացեալ եղեւ ի վաճառականաց [Ե]թեոպացոց յաղագս ոսկոյն. վասն որոյ պատերազմ եղեւ ի մէջ երկոցունց նոցայ, որպէս պատմին յԵգիպտոս աւանդութեամբ մինչեւ ցայսօր։ Այս է ոտնահետն ի վերայ վիմին, զոր ասայ Մահմէդ Աբրայամու յինել. որով միտանի շուրջ զալով Տաճկաց զմիստանոյն Թամանայ բերեն [զ]ձեւ, եւ զիւր նորայ երկիր պագանեն եւ ձայն տան, եւ ո՛չ գիտեն թէ ընդէ՞ր Աբրայամ վաղէր, եւ կամ հի՞մ մի ոտին յինէր անդ եւ ո՛չ երկուցն ի վերա[յ] վիմին։ Նոյն եւ զայն ո՛չ իմանան թէ ո՞ւմ զանատուճան կատարեն ի

[6] Ռեմմոն, Ասորիքի աստուածներէն մէկը Դամասկոսի մէջ (Դ. Թագ. Ե.), բաբելա-ասորական ոգումով. արամերէն Ramânn, որ կը նշանակէ ոռնում գոչում, որոտում, եւ նոյնացուած է Ասորիքի Հադադ կամ Ադադ աստուածոյն հետ։ Բաբելա-ասորական անունն է Rammân, որ երբայեցերէնի մէջ

ձորն եւ դէչ արկանեն, եւ կամ յումէ՞ փախչին։ Այլ մեք քննե[ա]լ հասու եղաք, թէ Մահմէդ մեկուսացեալ ի քաղաքամարդութենէ ի ձորն, արար զայս ամենայն դիւաց, (գ)որ դիմեալ դեւքն ի կերպարանս մարդկան անափլ ակամբ երեւեցան, յորոց զարհուրեալ Մահմէդ փախեաւ։ Զնոյն եւ աւանդեաց նոցայ՝ ա՛յն է որ կատարեն անտառն եւ փախչին։

Իսկ որ ի մէջ վիմացն ընթանան, վէմքն այն նախկի՛ն նոցայ պաշտաւն լեալ էին քան զկուռսն առաջինսն, որպէս զա՛յն վէմն որ ի Մեքքա[յ] ասեն․ եւ դեւքն յերկուց վիմաց զՄահմէդ ի պաշտաւն իւրեանց ստիպէին․ վասն որոյ այսր անդր ընթանայր մոլեալ, եւ զնոյն եւ աւրինադրե[ա]ց։

Դարձեալ․ փութով ի պաշտաւն տանն չուն ինչ կատարի դՀեա եկեալ, մատն յատնուլ դնայ, եւ Մահմէդի քար ձգեալ գերծաւ․ (գ)որ եւ յառն անդր եւ խափանիչ նորա պաշտամանն լինել, եւ ի ձեռն քարաձգութեան նորայ ի բաց կալ ի նմանէ։ Զնոյն եւ աւանդեաց՝ զԱբրայամ պատճառելով, որ անդէն իսկ յիւրեանց աստուածոց քակե[ա]լ յուծին զնայ։ Հինգ անգամ ասէ զԱբրայամ անդր գնացեալ․ զվեցն ո՛չ իջեալ ի դրանէն եւ զեւթներորդն՝ ի վերա[յ] վիմին կալով․ այսպէս զամենայն եւս արար Աբրայամ։

Նոյն եւ որ զեռունս եւ զաղաւնս եւ զգազանն ո՛չ սպանանեն, յայտնի է նա պատճառ․ [այսինքն] յաղագս աւձիցն պաշտաման, զոր յառաջին պաշտէին։

Զայս ամենայն յայտնեաց մեզ ոմն յաշակերտացն Մահմէդի, որ ինքն իսկ իւրովի ակնատեսս ամենայնի լեալ էր․ եւ զարհուրեալ ի դիւացն երեւմանէ փախե[ա]ւ ի

մայ մարդկութիւնն ի ձորն, արար զօհ ամենայն դիւացն : Յոր դիմեալ դեւքն ի կերպարանս մարդկան տեսլական երեւեցան · յորոց զարհուրեալ Մահմէտ փախեաւ, զնոյն եւ աւանդեաց :

Իսկ որ մէջ միմեանց ընթանան, մէմք նախկին նոցա պաշտաւնք լեալ էին բան դիւաւն առաջինս, որպէս զոյն մէմ որ ի Սերէս ի տանն է : Եւ դեւքն յերկուց միմեանց զՄահմետի պաշտաւնն ինքեանց առիթեն : Վասն որոյ այսր անդր ընթանայք ամբոխով մոլեգնեալ, զնոյն եւ աւրինադրեաց ·

Դարձեալ՝ փութով ի պաշտաւն տանն ելեալ, եւ չուն ինչ կատարի զհեա եկեալ մուտ յանդուլ · իսկ Մահմետի քար ձգեալ զերծանի · զոր վարկեալ յաւտարդ եւ խափանիչ նորա պաշտամանն լինել, զնոյն եւ աւանդեաց : Իսկ որ զԱրրահամ, ասեն, է անդամ երթեալ անդ, յայժ ասեն : Եւ որ զաղուես եւ զգեստուես եւ զգազանս ոչ պատնանեն, պատուի եւ պաշտաւն աւձիցն տանեն : Որպէս եւ մողպեալքն ի թղթին Յազկերտի ի Հայս, զայն աւրինադրեցին, թէ աւձք եւ մողէզք եւ այլ ճճիք մի՛ սպանցին · վասն զի ստացուածք էին եւ պաշտամունք առ նոսա :

Զայս ամենայն երանելի այրն, որ յայժ տեղեակ էր եւ եկն կրէակս կզգի, հաւաստագ՝ յայտնեաց եւ ծանոյց :

իգ. Արդ՝ պատմեսցուք վասն մահուանն նորա, արդարև արժանի ծաղու:

Քանզի իբրև մեռաւ Մահմէտ, պատեալ եղին զնա ի պարտիզի իւրում, ոչ թաղեալ. վասն զի խոստացաւ յերիր աւուր յառնել նման Քրիստոսի: Եւ ի քուն լինել պահապանացն, մտեալ շանց կերան զերեսս մեռելոյն: Եւ յայնմ հետէ աւրինադրեցաւ աշակերտաց նորա՝ ի նոյն ամսոջ սատակել զշունս. որ մինչեւ ցայսաւր կալեալ զայն աւրէնութիւն, սատակեն զշունս ի նոյն ամսեան:

Այլ առաւել է թէ զկրանէից եւ զկարգաց եւ զդատաստանաց նորին ասացից, յիմարութեամբ: Եւ եդ ի բերան աշակերտացն կարծել թէ որպէս վասն Քրիստոսի գուշակեցին մարգարէքն, այնպէս եւ զՄահմետայ գուշակեցին, նշանակելով զկոչումն մարգարէութեանն, Յիսուս իշով եւ սա ուղտով, զԵսայեայ տեսիլն առեալ իւրեանց վկայութիւն. «Հեծեալ մի, ասէ, տեսի իշոյ եւ հեծեալ մի ուղտոյ»:

Զայս առէր ի քաղաքին իւրում Մադինա, մինչդեռ նստէր ի բազմամբոխ հրապարակին: Եւ մինչդեռ խաւսէրն, անձրեւայթ եղեւ յաչաց տեսութենէ ժամս հարուստ: Եւ կայաւ ափշութիւն մեծ զամենեսին: Եւ ապա մինչդեռ խաւսէրն, եկաց ի մէջ նոցա, եւ ետ ողջոյն եւ ասէ. «Խաղաղութիւն ընդ ձեզ եւ ողորմութիւն եւ շնորհ»: Ապա դարձու-

ողորմութիւն Աստուծոյ եւ շնոր[հ]քն. այս զարմացեալ զարհուրեցան եւ ասեն. Ուստի դաս կամ զի՞նչ աղջիկդ այդ, եւ յո՞ր աստուածոց բերեր զայդպիսի բան ողորմութեան եւ շնորհաց։ Եւ պատասխանի եւ ասէ. Ահա մինչդեռ խաւսէի ես ընդ ձեզ, յափշտակեցայ ի հրեշտակէ Աստուծոյ, եւ գտայ ի Մաքա, ի տուն հաւր մերում Աբրահամու Իմաէլի։ զոր եւ շինեալ է զնա ինքեանց տուն Աստուծոյ եւ մեզ ժառանգութիւն, որպէս երբեմն զԵրուսաղէմ Հրէիցն շինեալ մարգարէիցն առ ի բնակութիւն Որդւոյն Իսրայէլի։ Եւ զայն զի լուեալ էր զապաշտակին (զյափշտակին) մարգարէին Ամբակումայ յԵրուսաղէմէ ի Բաբելոն, առ Դանիէլ, այսպէս համարեցաւ զինքն նոյնպէս ասել։ Բայց ո՛չ էր նորայ գնացեալ երբեք ի Մաքայ եւ ո՛չ ումեք գիտացեալ թէ էր նորա տեսեալ զնայ։ Եւ պատմեաց նոցա զաւրինակ տեղեացն, զմայրից եւ զշինուածոց եւ զամենայն նշանս տաճարացն եւ նոցա լոյս, որպէս թէ սնեալ իցէ ի նմայ ի մանկութենէ իւրմէ, եւ տեսեալ զամենայն հանգամանս ի վայրկե[ա]ն ժամու. ո՛չ գիտեմ թէ գիտութեամբ արուեստին հասեալ անդր առ ժամայն եւ եթէ ի քնութենէ զայս համբարեալ ի միտս իւր. վասն որոյ զարմացեալ ամենեցուն, առաւել զնայ մարգարէ լինել, որ եւ առժամայն լուեալ զայն ի նոցանէ, համարձակեցաւ քարոզել եւ ասել այսպէս. մկա[յ]եցէք թէ «Չիք այլ Աստուած, բայց մին Աստուածն ինքն միայն, եւ ո՛չ այլ նորայ ընկեր, եւ Մահմեդ՝ ծառայ նորա, եւ առաքեալ եւ մարգարէ»։ Եւ այսու այսպէս իմաստասիրեաց բառ իւրում խորհրդեանն. զի մի Աստուածն ասել բառ Հրէականին. եւ

բեալ հիացան եւ ասեն. «Ուստի՞ գաս, կամ զի՞նչ է ողջոյնդ այդ, կամ յորոց աստուածոց բերեր զայսպիսի բան ողորմութեան եւ շնորհաց» : Եւ պատասխանի. «Ահա մինչ-դեռ խաւսէի ընդ ձեզ, յափշտակեցայ ի հրեշտակէ եւ գտայ ի Մաքայ ի տան հարց մերոց Աբրահամու եւ Իսմայէլի, զոր շինեալ էին տուն Աստուծոյ եւ մեզ ի ժառանգութիւն, որպէս երբեմն զԵրուսաղէմ Հրէիցն շինեալ եւ մարգարէիցն առ ի բնակութիւն որդւոցն Իսրայէլի : Զի լուեալ զյափշտակելին Ամբակումայ յԵրուսաղէմէ ի Բաբելոն առ Դանիէլ, այսպէս զինքն համարեալ ասէր առ նոսա : Որ ոչ երբեք ճշմարտութեամբ էին բանքն :

Ծածկէր առաջի նոցա, թէ էր նորայ անեալ զՄաքայ, եւ պատմէր առաջի նոցա զաւրինակ տեղւոյն, զվայրացն եւ զշինուածոյն, եւ զամենայն նշանս սահմանացն եւ նոցա դիւրութեամբ, որպէս եւ տեղեկացեալն էր ի մանկութենէ :

Վասն որոյ զարմացեալք ամենեքեան ասէին զնա մարգարէ գոլ :

Եւ իբրեւ լուաւ զայս ի բերանոյ նոցին, համարձակեցաւ քարոզել եւ ասել. «Վկայեցէք թէ չիք Աստուած, բայց միայն ինքն, եւ ոչ գոյ նորա ընկեր, եւ Մահմէտ ծառայ նորա եւ առաքեալ» :

Զայս այսպէս խմաստասիրեալ, զմի աստուածն ասելով բառ հրէականին :

որպէս ասէն թէ Ես եմ Աստուած եւ ո՛չ գոյ այլ Աստուած բայց յինէն. եւ ասելովն թէ չիք որ նորա ընկեր, այսու բաժանեաց զՈրդի եւ զՀոգի ի Հօրէ, եւ այսպէս ուսոյց նոցա թէ զոր հարքն մեր պաշտեցին եւ մարգարէքն, զնոյն Աստուած քարոզեմ ձեզ, եւ հաւանեցուցանէ զմոլորութիւն։ Եւ դարձեալ որոշէ զնոսա ի հրէական կարծեացն, որ մարդ միայն եւ Որդի Յովսեփայ ասացին զՔրիստոս եւ յինքեանց խաչեալ։ Սոյ կոչէ զՅիսուս Բան Աստուծոյ, եւ զՀոգին՝ առաքեալ յԱստուծոյ ի Մարիամ, եւ առեալ ի նմանէ մարմին մարդկային, եւ զնէ վկայութիւն բանին Աստուծոյ եւ ասէ. թէ այսպէս տայց Աստուած, թէ առաքեցաք մեք ի նա զՀոգին մեր, որ եղեւ ի կերպարանս մարդոյ։ Եւ ասաց թէ Հրեայքն զնա ո՛չ խաչեցին, այլ նմանեցոյց նոցա զինքն. իբր թէ զայլ ոք նմանեցոյց իւրն, եւ զնա՛ խաչեցին, զոր Սիմոն Կիւրենացին ասեն. եւ զայս վասն այն, զի ո՛չ համարեցաւ զնա կարող գոլ խաչել զԲանն Աստուծոյ, եւ նորա խաչիլ ի նոցանէ, եւ նմա ընդ մահուամբ անկանել. այլ կենդանի եւ գալոց է յաշխարհս յետին ժամանակին, ի դատել զազգս ամենայն։

Եւ զայլ զՔրիստոնէայս, եւ ընդունի զԱւետարանն եւ զՄարգարէքն, որպէս եւ նախնիքն գրե[ա]լ եմք։ Եւ նզովէ զՀրէայսն եւ այսպէս ասէ. Նզովեաց Աստուած զՀր[է]այսն, զի ուրացան զՔրիստոս եւ ապստամբեցան ի նմանէ, եւ սպանին զմարգարէսն եւ զառաքեալսն զամենեսին։ Արդ՝ առնէ աւրինադրութիւն եւ յԱւետարանէս, բայց որոշէ յերկոցունցն զոր ինչ եւ կարէ հնարիւք, զի յիւրմէ համատարածէ աւրէնս. յիւր անուն եւ ո՛չ յայլ աւրինացն աւրինադրէ զիւր մոլորութիւն։

Իսկ աւելորդն թէ չիք նորա ընկեր, այսու բաժանէր զՈրդի եւ զՀոգի ի Հօրէ։ Եւ այսպէս ուսուցանէ նոցա, թէ զոր հարքն մեր պաշտեցին եւ մարգարէքն, զայն աստուած քարոզեմ ձեզ։ Եւ այսու հաւանեցուցանէ զժողովուրդն։ Եւ դարձեալ որոշէ զնոսա ի հրէականացն, որ մարդ միայն եւ որդի Յովսեփու ասացին զՔրիստոս եւ յինքենց խաչեալ։ Այլ եւ սա կոչէ զՔրիստոս Բան Աստուծոյ եւ հոգի առաքեալ ի Մարիամ յԱստուծոյ, եւ առեալ ի նմանէ մարմին մարդկային։ Եւ դնէ վկայութիւն բանիւ Աստուծոյ եւ ասէ թէ «Այսպէս ասաց Աստուած, թէ առաքեցայց ի նա զհոգին մեր, որ եղեւ ի կերպարանս մարդոյ»։ Եւ ասէ, թէ հրեայք զնա ոչ խաչեցին, այլ նմանեցոյց նոցա։

Եւ ոչ համարեցաւ նոցա կարող գոլ խաչել զԲան Աստուած եւ խաչիլ ի նոցանէ։ Եւ ոչ ընդ մահուամբ անկեալ, այլ կայ կենդանի, եւ գալոց է յաշխարհ յետին ժամանակս։

Եւ գովէ զքրիստոնեայս եւ ընդունի զԱւետարանն եւ զմարգարէս։

Եւ նզովէ զհրեայսն թէ ուրացան զՔրիստոս եւ ապստամբեցան ի նմանէ եւ սպանին զմարգարէսն։

Արդ՝ Մահմէտ առնէ զաւրինադրութիւն իւր յաւրինացն հին եւ յաւետարանէն․ բայց որոշէ մատուցական կամաւք զոր ինչ ախորժէ, իւր յիւրմէ եղեալ եւ ոչ առեալ յումեքէ, զոր եւ աւրինադրէ ժողովրդեան իւրոյ։

Բայց նախ ասասցուք ձեզ զնշանացն. այժմ ասեմ ձեզ զարձեալ հետ բանկնանցդ եւ այլեւս։ Ի ժամանակին կոչեաց զծառս անտառից յանուանէ, եւ նորա մեկնեալ ի միջոյ՝ զոր ձեմելով եւ զոր առաջի նորայ, եւ զարձեալ հրամայէ երթալ ի տեղի իւր եւ զնաց։ Նոյնպէս եւ շարժեալ զլերինս կարծեցուցանէր մարդկան, եւ ի վեր ունելով զձեռս իւր, ի հինգ մատանցն բխեցուցանէր աղբերս ջուրց։ Նայ եւ այսպէս ասեն թէ զեղ մահու զործեցին նմայ ի յուլ մի խորովե[ա]լ, զոր եղեալ ի սեղանն առաջի նորայ, կամեցաւ ուտել, եւ խաւսեցեալ ալոյն ի խելքին բաղմաց՝ ասէ. մի՛ ճաշակեսցես յինէն, զի զեղ մահու զործե[ա]լ է յիս վասն քո։

Արդ՝ այսպէս ասեն նշան լեալ ի նմանէ, որ ոչ հաստատե[ա]լ կայ իբր մի ի նշանացն յայտնի լեալ զկնի զործելեացն, այլ աշաց երեւոյթ ամժամայն լեալ թուիցի։ Եւ հանդիպեալ ի կարասանի հաս ասեն ի վերա[յ] բանտաւորաց, կամելով առնուլ զնոսայ յափշտակութեամբ։ Իսկ նոցա ժողովեալ ի ցամաքա[յ]ին զաշտի, շուրջ զինքեամբ ծովացուցեալ արգելան ատաղձիքն յեզր ծովուն, մնալով զերիս աւուրս ուսոյն. եւ ապա աւուրն զինքեանս որ ո՛չ զոյր խոնաւութիւն։ Զայս զհաւրեղբայրն նորայ ասեն արարեալ, եւ զնա ի նմանէ ուսեալ ասեն զայսպիսի ինչ։ Եւ արդեն իսկ ոմանք ասեն թէ բաղում ո՛չ հաստատչին թէ կախարդութեամբ է եւ առ աչաւք եւ ո՛չ ատուգութեամբ։ Զայս յիւրոց հաստատեցելոցն է առաջեալ մեզ։

Այլ եւ զայս այսպէս ասեն, թէ զլուխն ի շորս մատունս բաժանեալ ցուցանէր մարդ-

Եւ առնէր առաջի ժողովրդեանն առաջուք նշանս, որպէս եւ առաջինկայ Հանդերձեալ Նեռինն, զոր զգուշացուցանէ Տէրն մեր Քրիստոս։ Սա Կարապետ Նեռինն հորդէ ճանապարհ նմին. զի ի ժամանակի անդ կոչէ դժոխս յանդնդոց յանդունդէ։ Եւ նորա մեկնեալ ի միջոյ, գայ ձեմելով, կայ առաջի։ Եւ դարձեալ հրամայէ երթալ ի տեղի իւր։ Եւ շարժել լերանց կարծեցուցանէր մարդկան։ Եւ ի վեր ունելով զձեռս, ի հինգ մատանց ազբերս բղխեցուցանէր առ աչաւք։ Եւ դեղ մահու, ասեն, գործեալ ամա։ Յորովեալ այլ մի եւ եղեալ առաջի նորա, կամեցաւ ուտել։ Եւ խաւսեցեալ ընդ ի յաւելիս բազմաց, թէ «Մի՛ ճաշակեր յինէն, զի դեղ մահու գործեալ է յիս վասն քո»։

Եւ հանդերձեալ ի կարաւտանի, առաջակաց ի վերայ անկեալ կամելով յափշտակել զնա... եւ զնոսա։

Իսկ նոցա ժողովեալ ի մի վայր, ընտրեալ էին ի ցամաքայքին դաշտի եւ շուրջ զինքեամբ բոլորեցեալ. արդելեալ առաջակքն յերդր ծովու, ձեւով զերբեա ամուրս, զնացին ունայն։ Եւ նորա սկսանէին զինքեանս ի ցամաքի, ուր ոչ գոյր խնամութիւն։ Զայս զհաւրեղայր նորա ասեն արարեալ, եւ աս ի նմանէ ուսեալ, նոյնպէս արար։

Այլ բազումք իսկ յիւրոց անտի ոչ հաւատան առասպելյայաւղ բանջագանաց նորա։

Եւ ասեն դարձեալ, եթէ զլուսինն ի չորս բաժանեալ ցուցանէր մարդկան, որպէս ի

կան, չորս հաստոցս որք՛ չ ի միմեանց, եւ դարձեալ ի մին ժողովեալ կարակնէր զբոլորն:

Այլ բան որ եւ զքարինան ասացաք ձգելոյն պատճառն, զոր ինքեանք ո՛չ գիտեն, բայց ի տախտակ(ա)յն մերում, որք կարծէին գիտել, զայս ասեն. թէ յորժամ եհան Աստուած զԱդամ ի դրախտէն, յայնմ աշխարհին բնակեցոյց զնա. եւ նորա տեսեալ զՍատանայ յայնմ տեղ[ւ]ոջ, որ զքարս մեք ձգեմք, եւ ծանեաւ թէ սա է որ խաբեաց զմեզ եւ եհան ի կենաց դրախտէն, եւ առեալ քարինս արկ ի վերա նորայ, եւ նա փախեա[ւ] ի նմանէ. արդ մեք այսպէս առնեմք:

Նա եւ զայլսն ասացից. յորժամ վկա[յ]եցին թէ չի՛ք այլ Աստուած, բայց մին, եւ Մահմէդ պատգամաւոր Աստուծոյ, ապա խնդրեցին ինքեանց աւրէնս դնել. զոր խաւսեցաւ նոցա առ վայրին հարցանել զԱստուած թէ զի՞նչ հրամա[յ]եսցէ, եւ ինքն հրաման տա[յ] երինջ մի ածել առաջին, ածին յայն տեղի, որ ժողովուրդն լինէր: Եւ գրէ զոր ինչ կամեցաւ եւ կապէ յեղջեւր երնջոյն, եւ արգելու զորթ նորայ ի տան, եւ զերինջն տա[յ] ցմտերիմ սպասաւորս իւր ի գիշերի, զանխուլ ի մարդկանէ, եւ առաքէ հեռագոյն ի սահմանացն, եւ պատուէր տա[յ] ծառայիցն՝ ի ծագել արեւուն արձակել զերինջն, եւ ինքեանց՝ ընդ այլ ճանապարհ դառնայ: Եւ ինքն ի գալ առաւաւտուն, ժողովէ զամբոխն յայն տեղի, որ բաժանեաց ի միմեանց զմայրն եւ զծնունդ նորայ: Եւ ի խաւսել նոցա եկն եհաս [երինջն] զայրացեալ, ափշեալ, բառաչելով որպէս թէ բանաթեամբ վարեալ յումեքէ, պատմեաց զամ-

մխեանց, եւ դարձեալ ի մի հաւաքեալ կարակնաձեւ:

Իսկ վասն դպարբինն ձգելոյ, զոր յառաջն ասացաք, յաղեն այսպէս, թէ յորժամ եհան զԱդամ ի դրախտէն Աստուած, յայսմ աշխարհի բնակեցոյց զնա: Եւ նորա տեսեալ զՍատանայ յայսմ տեղւոյ, ուր դպարբինն ձգեմք, ծանեաւ, թէ սա էր որ զմեզ եհան ի կենացն, առեալ քարինս արկ ի վերայ նորա. վասն որոյ եւ մեք այսպէս առնեմք:

Իսկ յորժամ պատմեաց նոցա զոր ինչ պատմեաց, եւ զինքն պատգամաւոր քարոզեաց, յայնժամ նոքա խնդրեցին իւրեանց առէնս զնել: Եւ նա խոստացաւ նոցա՝ ա վաղին հարցանել զԱստուած, թէ զի՞նչ հրամայեսցէ: Եւ արձակէ յիւրմէ:

Եւ ինքն եւ առեալ երինջ մի առաջնածին յայն ժողովեալ, եւ զորթն արգելու ի տան: Եւ զոր ինչ կամ էր ինքեան, դրեալ կայր յեղջիւր երինջուն, եւ հանեալ յանապատ:

Իսկ ի ժամու ժողովմանն, հրամայէ արձակել զերինջն: Եւ ինքն հանդերձ ժողովրդովն պատեն առաջեալ մինչ դալառանն, իբրեւ ի վերուստ այցելութեան ինչ:

Եւ յերեւման երինջուն զաղաղակ բարձեալ, զոհութիւն առաքէր ի վեր:

*բոխն եւ եհաս առ Մահմէդ, որ եւ հրամանաց ունել, եւ ինքն յարուցեալ արձակեաց զԹուլսթն յեղջիւրացն, եւ համբուրեալ եդ ի վերայ աչաց իւրոց, եւ ասաց զայն յԱստուծոյ առաքիլ: Որ եւ արդ ի Կուրանին զաստուածաբանս Թլսթին* սուրաթ ալ Բակարայ *գրեն եւ անուանեն. այսինքն* Կովուն ճառ *կամ* Արէնէֆ: *Այս բանից եւ ընթեռնու ի յանելիս ժողովրդեանն, եւ նոցայ այսպէս կարծեցեալ թէ նոյն ինքն կովն հանդերձ Թլսթովն յերկնից է [առ]աքեալ:*

*Եւ հրամա[յ]է զաղաւթիցն կարգ եւթն անգամ յաւուրն կատարել, յուացմամբ ձեռացն եւ ոտիցն եւ երեսացն, զառաւաւտուն եւ զերեկորին, եւ փոխանակ հրէական փողոյն եւ քնարիցն ի ժամ աղաւթաւորութեան, եւ մերոյս ժամահարութեան, հրամա[յ]է բարձր* Մինրայ[7] *շինել ի մէջ քաղաքին: Եւ ընտրեաց զոմն բարձրաձայն եւ* Մոզին[8] *անուանեաց, այսինքն* հաւատազիր, *եւ հրա-*

[7] Մինրայ, *ուղղ.* մինարէ, *արաբ. Մէնարէթ* (منارة), *նուր =* نور *արմատէն, եւ կը նշանակէ աշտարակ լուսոյ, Փարոս: Մզկիթներուն կից շինուած աշտարակներ այլազան ձեւերով եւ բարձրութեամբ, որոնց վրայէն թէ՛ աղօթքի հրաւէր կը կարդացուի եւ թէ՛ տօնական օրեր կանթեղի լոյսեր կը ցոլան:*

[8] Մոզին, *հաւանաբար* Մողին (*ձեռագիրներու մէջ* զ *եւ* ղ *գիրերու շփոթումէն յառաջ եկած*). *ուղիղը* Մուէզզին = կոչող, *այսինքն՝ այն որ* Էզան (اذان) *կոչ կ'ընէ աղօթքի: Մեր օրինակին մէջ* հաւատազիր *թարգմանուած է* Մուէզզինը, *որովհետեւ Իսլամ դաւանանքի յայտարարութեամբ կը սկսի աղօթքի կոչը կամ հրաւէրը, հետեւեալ բանաձեւով.*

1. Այլահու Աքպար. Աքպար Ալլահ = *Ալլահ ամենամեծ, Ամենամեծ Ալլահ:*

Եւ հանեալ զգիրն ածիւ եւ չքով ընթեռնոյր, իբր յերկնից եկեալ ուրինին։

Զայս ամենայն յայտնեալ մեզ աշակերտ նորին եւ խոստովանեալ զպատրանս աղանդաւոր առասպելոյն, եկեալ մկրտեցաւ ի Կրէտէս կղզոջ յազդմանէ նախախնամող կամացն Աստուծոյ։ Եւ մեք զատուցաք եւ զզագիր պատրանս նորա գրեցաք առ ի ծանուցումն եւ ի զգուշութիւն երկեղածաց Քրիստոսի. զի փախուցեալ ստեղծուք զատելին Աստուծոյ։

2. Աշտու էն լա Իլահ Իլլալլահ — խոստովանեմ (վկայեմ) թէ միայն մէկ Ալլահ կայ։
3. Աշտու էն Մուհամմէտ Րէսուլ Ալլահ — խոստովանեմ թէ Մուհամմէդ առաքեալն է Ալլահին։
4. Հա՛յյու ալասալա — փութացէ՛ք Աղօթքի։
5. Հա՛յյու ալաֆէլահ — փութացէ՛ք խաղաղութեան (երանութեան)։
6. Աքպար Ալլահ Աքպար (տե՛ս 1)։
7. Լա Իլահ Իլլալլահ (տե՛ս 2)։

մա[յ]եաց անդ եկանել, բայց այնմ եթէ այս-
պէս հրամա[յ]եաց Աստուած մարգարէից.
Ե՛լ ի բարձունս աւետարանիչ Սիոնի,
բարձրացո՛յ զաւրութեամբ զբարբառ քո
Աւետարանիչդ Երուսաղեմի: Եւ հրամա[յ]է
երեք անգամ մեծաձայն գոչել:

— «Ո՛վ պատուական ընթերցողք յոր-
ժամ ընթեռնույք զպատմութիւն սուտ մար-
գարէին Մահմէդի, զնայ անիծէք եւ զԱս-
տուած մեծաձայն փառաւորեցէք. Եւ զան-
պիտան գրիչս Մխիթար յիշման արժանի
արարէք եւ զծնաւղսն իմ. եւ յիշողք յիշեալ
լիջիք յաւուրն աներեկի. ամ[էն]»:

# ԲԱՑԱՏՐԱՆՔ ԵՒ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

ԱԲԴԼԱՅ, 120․ *տողին՝* Աբդուլլահ (عبد الله)․ *Ծառայ Ալլահի (Աստուծոյ)․ անունն է Մահմէտի հօր․ մայրն էր Էմինէ։ Կ'ըսուի թէ Մահմէտ ծնու իր հօր մեռնելէն ետքը․ մայրն ալ կանուխ մեռաւ, եւ ինքն մեծցաւ նախ իր հաւուն մեծ հօր Աբտ էլ-Մութալիպի եւ յետոյ իր աղքատ հօրեղբօր Աբու Թալիպի քով։*

ԱԼԻ, 115 (علی)․ *լման անունը Ալի իպնի Աբու Թալիպ, չորրորդ* Խալիֆա *(յաջորդ)․ ծն․* 600*ին, մեռաւ* 661*ին։ Միւս առաջին երեք* Խալիֆաներն *են՝ Աբու Պէքր, Օմար եւ Օթման։*

ԱԼԼԱՀ ԱՔԲԱՐ, 60 (الله اکبر)․ *Ամենամեծ Ալլահ (Աստուած)։*

ԱՉԱՅ ՎԱՆԴ (*ուրիշ օրինակներ ունին* Ալուանդ, Յալուանդ.) 141․ *Եթէ սխալ չէ արտագրութիւնը։ Թերեւս պիտի ըլլար* Նալչապանդ, *կօշիկներու եւ հագաթափներու կրունկներուն տակ զամուած մահկանէ երկաթը, որ է* նալչա․ *իսկ* վանդ = պանդ *(կապել, հաստատել)։*

ԱՅ. ԼԸ. ԸՖ. 61․ *արաբերէն այբուբենին երեք տառերը (ا ، ل ، ق) Հայր. Որդի. Հոգի կամ Երրորդութեան նշանակելու համար։ Ղուրանի գլուխներէն ոմանց սկիզբը գրուած են գիրեր, որոնց նշանակութիւնը չէ ստուգուած։*

ԱՅՒԱՅ. ՇՐԱՅՒԱՅ. ԱՆՒՈՆՒԱՅ. 140․ *Համանա—*

դիտի բնակին հանդերձեալ կեանքի մէջ։ Իսլամ պար-րիկներ այս անունը տուած են Դրախտին։ Պէհիշտ կամ Պէհէշտ (بهشت) պարսկերէն արտասանութեամբ։

ԻՍԼԱՀԻ, տե՛ս ՎԱԼԱՀԻ։

ԲԽԻՐԱ, ԲԽՀԻՐԱ. 120· ուղիղը Պահիրա, անունն է քրիստոնեայ մենակեացի մը։ Կ'ըսուի թէ երբ Մահ-մէտ 12 տարեկան էր կարաւանի մը մէջ Սուրիա եկաւ իր հօրեղբօր Ապու-Թալիպի հետ։ Երբ կարաւանը մօ-տեցաւ Բոսրա (Էսկի Շամ), այդ կողմեր քարայրի մը մէջ բնակող մենակեաց մը տեսաւ որ ճամբորդնե-րէն մէկը ամպով շրջապատուած է. եւ յետոյ, տեսաւ որ երբ այն ճամբորդը ծառի մը տակ նստաւ, ծա-ռին ճիւղերը ամէնքն մեծցան՝ նստողին վրայ հովանի ըլլալու համար։ Պահիրա իր քով ճաշի հրաւիրեց բոլոր ճամբորդները, որոնք եկան Մահմէտը թողլով կարաւանի մօտ որպէս զի հսկէ անոր վրայ։ Պահիրա տեսնելով որ հրաւիրեալներուն մէջ չէ այդ խորհրդա-ւոր դէմքը, ըսաւ որ ան ալ գայ։ Կու գայ Մահմէտ եւ Պահիրա կարգ մը հարցումներ կ'ուղղէ անոր Արաբներու պաշտած աստուածներու մասին. Մահմէտ կը զզուանքով պատասխանէ, եւ դիտելով աչքերէն կը յայտարարէ թէ ինքն է խոստացուած մարգարէն։ Մենակեացը կը յանձնարարէ Ապու-Թալիպին որ հոգ տանի պատանիին։ Կ'ըսուի թէ այս դէպքին Ապու-դէրը ալ ներկայ էր, որ սկսաւ պատրաստուիլ պայ-քարելու անոր դէպքերու ալ։ Իսկ մենակեացին անունը Սարգիս է բառ ոմանց կամ Պետրոս՝ բառ այլոց։ Ուրիշ գրողի մը համեմատ, այս դէպքէն 12 տարի յետոյ, Մահմէտ Սուրիա կու գայ Խատիճէի գործին մէջ եղած ատեն, իրեն ծառայ Մէսարայի հետ եւ Բոսրայի մէջ կը հանդիպի Նեստոր անուն մենա-կեացի մը, որ տարբեր նշաններով ճանչցած ըլլալ ըլ-լալ մարգարէն, եւ այլն։ — Հնագոյն հեղի-նակներ չունին մենակեացին անունը, իսկ վերջին ժամանակներու քրիստոնեայ եւ Իսլամ պատմութեան համեմատ Սարգիս է անունը մենակեացին, որուն

տրուած է ՊԱՀԻՐԱ մակդիրը, որ արամերէնի մէջ կը նշանակէ Ընտրեալ։

Աւանդ գրոյցներ են որոնց պատմական արժէքը կարելի չէ ճշդել։ Բայց ուշադրաւ է որ քրիստոնեական մատենագրութեան մէջ կանուխէն կը յիշուի Պահիրա Սարգիս անուան տակ և կը համաձայնի իսլամ աւանդութիւններու։ — Յայտնութիւնն Պահիրայի մէջ, գործ Ժ-Ա—ԺԲ. դարու, որ պահուած է արաբերէն և ասորի լեզուներով, առաւելապէս կերպով զարգացած է իսլամ աւանդութիւնը։ Երեք մասերէ կը բաղկանայ այս գործը. ա. իսլամ հարստութիւններու մասին պատմածներ, որոնց հանդիպած է Սարգիս-Պահիրա Սինա լերան վրայ։ բ. իր խօսակցութիւնը պատանի Մահմէտի հետ Եաթրիպի անապատին մէջ։ գ. Սարգսի կանխատեսութիւնները, որ մասամբ կրկնութիւնն է Ա-ի առաջին մասին։ Այս երկրորդ մասին մէջ կը պատմուի թէ Սարգիս ինչպէս հաստատեց Մահմէտին իր մարգարէութիւնը, օրէնքները ու այն մասերը Ղուրանին որ կը վերագրուին վերջինին Մի Աստուածը Արաբներուն ճանչցնելու ծրագրով։ Այս գրուածին յայտնի նպատակն է Մահմէտը ներկայացնել իբրև ուսեալ մարգարէ, որ իր կարծեցեալ յայտնութիւնները առած է հերետիկոս մենակեացէ մը (տե՛ս Bahira բառը Encyc. de l'Islam. էջ 589)։ — Fr. Nau ունի ուսումնասիրութիւն մը։ L'Expansion nestorienne en Asie խորագրով Annales du Musée Guimet-ի Tome 40-ի մէջ (էջ 205—237) Քրիստոնեայ Արաբներու և Մահմէտի և Սարգիս Պահիրայի մասին։ Պահիրան կը թարգմանէ փորձեալ, և շատ հետաքրքրական են իր տուած տեղեկութիւնները Սարգիսի ինքնութեան նկատմամբ։

ՊԻՍՄԻԼԱ. ՊԻՍՄԻԼԼԱՅ. 178. ուղիղը Բի-Իսմի-Ալլահ (بسم الله = յանուն Ալլահի). արդէն առաջին մասն է ծանօթ բանաձեւին, Պէսմէլէին, որուն լման է. «Բի իսմ Իլլահ էլ Ռահման էլ Ռահիմ», Յանուն Ալլահի Ողորմածի և Գթածի։

ԻՎԱՀԸՆԱՉ տե՛ս ԹԱՐԱՆԱՍ։

ԻՍՄԱՅԷԼ. 120, 147 (إسماعيل)․ Որդի Աբրահամու, անոր Ագար կնոջմէն (տե՛ս Ծննդ. ԺԶ)․ առասպարանորէն կը նշանակէ լուիցէ Տէր։

ԽՏՐ եւ ԵՂԻԱՍ. 107 (خضر و الياس)․ Ենովք եւ Եղիա։ Բուն խօսքն է Եղիա մարգարէ, Էլ-Խատիր կամ Էլ-Խըտըր, որ Թիւրք եւ պարսիկ լեզուներու մէջ կը հնչուի ԽԸԶԸՐ։ Էլ-Խտր նկարագրուած է Կուրանի ԺԸ. Սուրարին մէջ։ Բարք գրեց մը անի ան. Իսլամի մէջ կը պատկերացնէ Ելիասը կամ Իլիասը (Եղիա մարգարէն)։ Շփոթուած է նաեւ Ս. Գէորգի հետ։ Խտր եւ Իլիաս բարդութեամբ կազմած են Խտրիլլէզը, որ անանկան օր մըն է, Ապրիլ 23. եւ այդ օրը Ս. Գէորգ է Յունաց համար, իսկ Խտրիլլէզ Իսլամներու համար։ Խտրին կամ Խըտըրին նկարագիրն է անմեռութիւնը, նաւաստներու պաշտպան սուրբն է ծովու վրայ։ Ժամկութեան մէջ պահուած է Խըտըրի նկարագրին մեծ գիծը. զոր օրինակ, «Խըտըրի պէս օգնութեան հասաւ» կ'ըսէ ռամիկը՝ երբ անել նեղութեան մէջ գտնուի ան եւ իրեն անակնկալ օգնութիւն մը հասնի մէկու մը կողմէն։ Այս առումով Խըտըր կը յիշեցնէ նաեւ արագահաս Ս. Սարգիսը։ Անշուշտ այս է պատճառը որ շփոթուած է Ս. Գէորգի հետ եւս։ — Տաթեւացին իր Հարցմանց Գիրքին մէջ ալ կը խօսի Եղիայի եւ Ենովքի վրայ (էջ ՉԹ = 709)։ — Մանրամասնութեանց համար տե՛ս al-Khadir բառը Encyc. de l'Islam, էջ 912—916։ — Իսկ Խտր-գիրք, զոր կը յիշէ Տաթեւացին (էջ 115) արդեօք Գիրք-Ենովքա՞յ է։

ԿՈՒՆՏ. 49, 50. Հայերէն բառ է Կունդ եւ կը նշանակէ ճաղատ, «քաչալ» = Կունդ մականունն է Արամազդին, որ Մահմէտին ալ տրուած է Հայոց մէջ։ Կունտ կը նշանակէ նաեւ սկուտղ, շնիկ։ Կունտ օղլան քաջատարութիւնը կար Թիւրքախօս Հայոց մէջ, անկարեկլու համար Մահմէտի. այդ քաջատարութիւնը ուրիշ ասուններ ալ ունէր։ Նոյնպէս «քաչալ» բառով

կ'անհարկուէր մահմէտականներուն։ Կանգ մակդիրը, զոր Մ. Խորենացին կու տայ Արամազդին, Թ. Ասդուրրէկեան կը ճգնի փոխել Կանգի, որ կը նշանակէ եղեր հաստ, մեծ, ծայր, կատար, գլուխ, եւ հետեւաբար Կանգով համանման է եղեր Հզօր կամ ՄԵԾՆ Արամազդ, եւ ոչ թէ ճաղատ կամ ԿՈՒՆԴ Արամազդ (Ազգ. Մատեն. ԺԺԵ. էջ 53—62)։ Բայց զուր ջանք եւ անհարկ փաստակ. որովհետեւ Հ. Գելցեր ցոյց տուած է որ Հայք այլեւայլ Արամազդներ փոխ առած են Յոյներէն, «յորոց մի է եւ Կունդ անուն Արամազդ»։ Ζεὺς φαλακρός.- այսինքն՝ ճաղատ (= Կունդ), Արամազդ (տե՛ս Հանդ. Հայ Դից., Թարգ. Հ. Յով. Թորոսեան, տպ. Վիեննայի, 1897, էջ 132—133)։

ՀԱԼԱԼ, 152—180 (حلال), Արդար, չարգիլուած, որուն հակառակն է Հարամ, ընդհանրապէս երկուքը միասին կը գործածուին։

ՀԱՃ կամ ՀԷՋ, 163, 166, 184, ուղիղը՝ ՀԱՃՃ (حج), ուխտաւորութիւն Մէքքէ կամ Երուսաղէմ։ Էլ-Հաճճ (= ուխտաւոր), որու թիւրքերէն ձեւն է Հաճի, որ Երուսաղէմի քրիստոնեայ ուխտաւորներուն ալ կը տրուի մղտսի կամ մահտեսիի նման, որք նոյնպէս հայացած ձեւերն են մագտէսի (مقدسی) բառին, որ կը նշանակէ զատուէն (Երուսաղէմէն) եկող ուխտաւոր։

ՀԱՅԵԱԹ, 61 (حیات). կեանք, կենդանութիւն։

ՀԱՐԱՄ(ութիւն), 51, 151—185 (حرام). Անարդար, արգիլուած (Tabou)։

ՀՈՒՐԻ(ք), 128 (حورية). Յաւերժահարս, — հարսունք։

ՂԸԴՈՒՍԱ տե՛ս ՈՒՇ։

ՂԻԱՄԱԹԻ ՂԱՏԸ ՑԻՍԷ, 108, 185 (قیامة قاضی عیسی). Կիամաթ կամ Գիամէթ՝ Յարութիւն (մեռելոց), Ղատի՝ Դատաւոր. Յիսէ, ուղիղը՝ Իսա (= Յիսուս). Դատաւոր Յարութեան կամ վերջին դատաստանի։

ՄԱՀԻՐ. 184 (مهر)· օժիտ, տուայր: Մահր կամ Միհր, էրկան կողմէ տրուած օժիտը իբրև գին արա-տատի արևան, որ անդառնալի է: Արձակման ատեն ուրիշ օժիտներ կրնան վերադարձուիլ, բայց Մահրը (գին արևան) չի վերադարձուիր:

ՄԱՃԻԹ. ՄԱՍՃԻԹ (= Մզկիթ). 131· ուղիղը՝ Մէսճիտ (مسجد)· Սէճտէ = երկրպագութեան ընելու տեղ Աղօթավայր: Մահմետականութեան այս ա-նունը կը կրէ Մէքքէի աղօթավայրը հակառակ մեծ ձևի մը ըլլալուն:

ՄԱՆՇՈՒՐ. 122 (منشور) կամ Մէնշուր = հրա-տարակեալ: Վեհապետական հրովարտակ կամ ար-տօնագիր, որ, բստ աւանդութեան, Մահմէտի կամ իրեն յաջորդներու կողմէն տրուած են Հայոց, ինչպէս և ուրիշ քրիստոնեայ ազգերու, անոնց ազգային-եկեղեցական առանձնաշնորհումները հաստատելու և պաշտպանելու համար: Մանշուրին Մեծը (ընդար-ձակ) կայ և Փոքրը (համառօտ) կայ:

ՄԷՀՐԻԳ. ՄՀՐԷԳ. ՄՐՀԷԳ. 141. 142· ուղիղը՝ Միհրապ (محراب)· մահկաձև յատակագծով գետ-նէրու խորշ մզկիթներու մէջ հարաւային որմին մէջ-տեղը, հարաւային ուղղութիւնը ցոյց տալու համար աղօթաւորներուն:

ՄՈՒՍՈՒԼՄԱՆ. 182 (مسلمان)· Մուսուլման, Մու-սուլման, Միսուլուրման ձևերն ալ կան ժողովուրդի բերնին մէջ. ուղիղ ձևը Մուսլիմո՛ւն (مسلمون): Տա-ճկային թարգմանած է «Արդիկի հաւատ»· բայց բա-ռական թարգմանութեամբ կը նշանակէ Իսլամ հա-ւատքը ունեցող (Մուսլիմ)· այսինքն՝ Մահմետական:

Մուրտառ. 150. 151. 153 (مردار)· ռամկօրէն գործածուի ձևն «Մուրտառ», բառական առումով՝ սա-տակ, սատկած, մեռած, իսկ լայն իմաստով, պիղծ, պղծեալ:

ՄՍԱՖ. 112. 119. 168 (مصحف)· Հատոր, գիրք· գիր-քն՝ = Փուրքան:

լիֆաթ րէսուլ իլլահ (= Յաջորդ Ալլահի Մարգարէին)։ Տե՛ս նաեւ Ամիր էլ–Մումինին։

ՃՀՈՒՏ. 147. 150. 163 (جهود)։ Յուդայեցի կամ Յուդական (= Հրեայ)։

ՃՕՀԱՐ. 61. ուղիղը ճէվհէր (جوهر), ինչպէս նաեւ Կէվհէր (گوهر), արաբերէն՝ Գոհար. բայց հոս աստուածաբանական առումով՝ Գոյացութիւն։

ՌԱՊԱՆԱՍ. ՄԱԼԻՔԸՆԱՍ. ԻԼԱՀԸՆԱՍ. 61. ուղիղը՝ Ռապ էննաս (رب الناس). Մալք էննաս (مالك الناس). Ալլահ էննաս (آلله الناس), արաբերէն՝ Տէր մարդկան, Ունող մարդկան, Աստուած մարդկան։ — Նաս (ناس) Մարդիկ. Արարածք ամենայն։

ՌԱՀԻՄ. ՌԱՀՄԱՆ. տե՛ս ԲԻՍՄԻԼԱՀ։

ՌԱՄԱԶԱՆ. ՌԱՄԱՏ. 175 (رمضان)։ կը հնչուի նաեւ Ռամազան։ Արաբական տարւոյն 9րդ ամիսը, որ նուիրական է Իսլամի համար իբրեւ ամիս պահոց։

ՌՈՀ. ՌՕՀ. 60. ուղիղը՝ Ռուհ (روح)։ Հոգի։ — ՌՕՀԱ ՂԸԳՈՒՍԱ, ուղիղը՝ Ռուհ էլ Ղուտուս կամ Գուտս (روح القدس)։ Հոգին Սուրբ։

ՌՈՀԱԼԼԱՀ. 49. ուղիղը՝ Ռուհուլլահ (روح الله)։ Հոգի Աստուծոյ։

ՌՈՀԻՆԵԱՔ. 60. ուղիղը՝ Ռուհիփաք (روح پاك)։

ՍԱԼԱՄ. 141. ուղիղը՝ Սէլամ (سلام) Ողջոյն. Բարեւ։

ՍԱԼԱՒԱԹ. 112, 185 կամ Սալավաթ (صلوات) յոգնակին է Սալաթ (صلاة) բառին եւ կը նշանակէ Աղօթք. նաեւ Դաւանութիւն Իսլամ հաւատոյ. այսինքն Դաւանիլ թէ միայն մէկ Աստուած կայ եւ Մահմէտ անոր առաքեալն է. լա իլլահ իլլալահ Մուհամմէտ րէսուլ ուլլահ (لا اله الا الله محمد رسول الله)։

ՍՈՒՆՆԻ. 180. ուղիղը՝ Սիւննի (سنى), ուղղափառ, Իսլամի ուղղափառ օրէնքին պատկանող։ Տե՛ս Հետեւեալ բառն ալ։

յամ իմաստով կը գործածուի։ Միխայէլ Ասորիի Հայերէնին մէջ կը կարդանք. — «Եւ յայնժամ ժամանակի յորժամ զօրացան Թուրքն, հնազանդեցան նոցա Արաբացիքն, որ Տաճիկք կոչէին վասն իշխանին իւրեանց փառաւորի եւ իմաստնոյ, որոյ անուն էր Տայու։ Եւ խառնակեցան Թուրք եւ Տաճիկք եւ եղեն ազգ մի» (Միխ. Ասորի. էջ 400)։ Թէոդիկ իր 1923-ի Տարեցոյցին մէջ (էջ 354—356) փորձ մը ըրած ամփոփելու Տաճիկ բառի մասին յայտնուած կարծիքները։ Փորձ մը միայն եւ ո՛չ թէ լման գործ մը։

ՏԱՊԻԱԹ. 61, 158 (طبيعة)։ Թապիաթ, բնութիւն։

ՏՄՇԽ. 180. ուղիղը՝ Տմըշղ (دمشق), Դամասկոս, Շամ։

ՓԵՂԱՄՊԱՐ. 49, 51 չչ. ուղիղը՝ Փէյղամպէր (پیغمبر), պատգամաբեր, Մարգարէ։

ՓՈՇՄԱՆ. ՓՈՇԻՄԱՆ. 111 (پشیمان)։ Զղջում, իսկ Փօշմանիլ. Զղջալ։

ՓՈՒՐՂԱՆ. ՖՈՒՐՂԱՆ. 100. 109—110, 112 (الفرقان)։ Ղուրանին ինչ ինչ Սուրաները այդ վերնագիրը ունին։ Ղուրան կամ էլ-Ղուրան այլեւայլ անուններ ունի. էլ-Քիթապ (Գիրք), Քիթապուլլահ (գիրք Աստուծոյ), Քէլիմաթուլլահ (խօսք Աստուծոյ), էլ-Թէնզիլ (գիրք ի վերուստ իջեալ), էլ-Տիքր (Յանդիմանանք, admonition), էլ-Ֆուրգան (ընտրութիւն, distinction, օրինաւորի եւ ապօրէնի, Բարիի եւ Չարի միջեւ), էլ-Մուսաֆ (Հատոր, որանչելի Codex)։ էլ-Ֆուրգան Ղուրանի մէջ գործածուած է Հնգամատեանի տեղ։ Ըստ Մաչիմիրիսիի էլ-Ֆուրգան կը նշանակէ ստուածային յայտնութեան գիրքը որ կ'որոշէ օրինաւորն ու ապօրէնը։ Կրնայ ըսուիլ թէ աստուածային գիրքերուն այն մասերը որ կը խօ-սին ազատութեանց, սնունդներու եւ այլն, մասին, կը կոչուին էլ-Ֆուրգան, իսկ վարդապետական մասը՝ էլ-Հուտա (ուղղութեան, direction)։

տալ իսկ աստուածային Գիրք, եթէ Թաղրիրոյ լեզուն (իսկ Հայկզն. Բառգրք. Թաղրիրալեզուն) արբեսցին յարենէ անմեղաց: Քանզի ափիւրն զօրանալոյ այդին Թաղրիրն եղեւ, որ էր իշխան ամկաւ Իսմայէլական-նաց չրջարմակայ (էջ 102): Իսկ Սամուէլ Անեցին կ'ըսէ. «Աստանօր նստի գլուխ այդին Իսմայէլի նախ Թաղրիր(ան) անուն, զոր եւ գիրն աստուածային պատմէ, թէ Թաղրիրայութեան ժողովուրդն յաղեցուս-ցէն զաւուրս իւրեանց յարենէ» (տե՛ս Թաղրիր բառը Հայկզն. Բառգրք.): — Աստուածային Գիրքը, որուն կ'ակնարկեն Տաթեւացին եւ վերոյիշեալք, Երեմիայի Մարգարէութիւնն է, որու ԽԶ. 10-ին մէջին նախա-դասութիւնը. — «Եւ կերիցէ սուր եւ յաղեսցի եւ արբեսցի յարենէ նորա» — ընդարձակ կերպով յարմարցուած է Թաղրթի եւ անոր ցեղին: Թաղրրրի եւ Թաղրրականի վերաբերութեամբ հետաքրքրական է յիշել նաեւ «Գիրք Հերձուածոց»ի ՃՄԳ հատուածը, ուր կ'ըսուի — «Թադերթական, որ է արիւնար-բուաց», եթէ երբեք ուղիղ գրուած է Թաղերրական բառը: Այդ հատուածին մէջ Թաղերրական կը ներ-կայացուի իբրեւ աղանդաւոր եւ կը նոյնացուի Գալի-կեանց (Գալիլիկեանց?) աղանդին հետ, որոնցմէ կին մը, Մարէ անուն, կախարդ եւ կուռք «Հեղուլ ա-րիւն մարդոյ բարի սովէր, եւ որ ուտէ եւ ըմպէ զա-րիւն մարդոյ՝ այն արդարութիւն» եւ այլն (տե՛ս Գիրք Հերձուածոց. Հրտ. Մխարեան., Տպգր. Վա-ղարշապատ, 1892. էջ 20):

Ի՞նչ կապ ունի արիւնարբուներու աղանդը Թա-ղրրթի կամ Թաղրրթականաց հետ: Կրնա՞յ ենթա-դրուիլ թէ Թաղրրթական (= Թաղրթայեցու, Թա-ղրրթայութիւն) կերարկուած ըլլայ պարզապէս այդ ա-ղանդին արիւնարբու նկարագիրը արտայայտելու հա-մար, քանի որ Թալիաի (= Թաղրթի) պատմութեան մէջ Թաղրրթականը համազօր եղած է արիւնար-բուին, եւ հերձուածներու ցանկը կազմող կամ ընդ-օրինակող հայր, փոխանակ արիւնարբուին գրած է

Բաղերբական։ Վերջապէս անդրադարձն հետադարձու-թեան կարօտ բանասիրական խնդիր մը։

ՔԱՐԱՄԱԹ. 116. ուղիղը՝ Քէրամէթ (كرامة). Սքանչելիք, Հրաշք։

ՔԱՐԱՄԱԹ-ՔԵԱՐ. 103. ուղիղը՝ Քէրամէթքեար (كرامتكار). Սքանչելագործ, Հրաշագործ։

ՖԱՍԱՏ-ութիւն. 177. ուղիղը՝ Ֆէսատ (فساد). Ապականութիւն։

ՖԱՐՍԱՆԳ. 180 (فرسنك) կամ Փարսախ. պարսից չափ հեռաւորութեան. հաւանաբար 3·88 մղոն։

ՕԹՄԱՆ, ՕՄԱՐ. 122. Մահմէտի առաջին չորս յաջորդներն (խալիֆ) են. Ապուպէքր, զոր անցանք. Օմար (عمر) 634—644. Օթման կամ Օսման (عثمان) 644—656. սպաննուեցաւ Ապուպէքրի որդի Մահմէտի ձեռքով. Ալի (علي) 656—661. այս ալ սպաննուեցաւ։

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ


Յառաջաբան .............................. 1—13
Հարցմանց Գիրքին Տպագրութիւնը ...... 14—19
Աստապատցիի Կիւկատար Տպագրութեան ցիրուցան Տետրակները ............ 19—25
ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ. — Չեռագիրք Երուսաղէմի Ս. Յակոբայ Մատենադարանին.. 25—50
[Ընդդէմ կորուսեալ Ազգին Տաճկաց, որք կարապետ են Նեռին, եւ նոր Հեթանոսաց, Հերձուածողն Արիոսի եւ Կերինթոսի] .............................. 50—52
Ա. [Առաջին մոլորութիւն Այլազգեաց] .. 52—62
Բ. Երկրորդ " " 62—82
[Այս գլուխը Մ. Չեռագրի համեմատ] 83—88
Գ. Երրորդ մոլորութիւն Այլազգեաց .... 88—99
Դ. Չորրորդ " " .... 99—109
Ե. Հինգերորդ " " .... 109—114
Զ. Վեցերորդ " " .... 115—123
Է. Եւթներորդ " " .... 123—132
Ը. Ութերորդ " " .... 132—138
Թ. Իններորդ " " .... 138—147
Ժ. Տասներորդ " " .... 148—152
ԺԱ. Մետասաներորդ մոլորութիւն Այլազգեաց .............................. 153—158
ԺԲ. Երկոտասաներորդ մոլորութիւն Այլազգեաց .............................. 159—166
ԺԳ. Երեքտասաներորդ մոլորութիւն Այլազգեաց .............................. 166—174

ԺԴ. Չորեքտասաներորդ ժողովութիւն Այ-
լազգեաց ... 174—177
ԺԵ. Հնգետասաներորդ ժողովութիւն Այ-
լազգեաց ... 177—182
ԺԶ. Վեշտասաներորդ ժողովութիւն Այլազ-
գեաց ... 182—186
Ի Քաշունեէ Քաղածու եւ Մխ. Անեցի ... 187—222
Բառացանկ եւ ծանօթութիւնք ... 223—238
Ցանկ նիւթոց ... 239—240

